Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

### ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



### ՀՈԳԵՎՈՐ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԿԱՊԵՐ



### ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ




**Խմբագրության հասցեն՝**

*375023, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11






# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն որոշում ընդունեց «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղի գիտահետազոտական գործունեության վերակառուցման մասին»:**

*Որոշման մեջ նշվում է, որ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի կուսպատմության ինստիտուտը՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղը որոշակի աշխատանք է կատարել մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատությունների հրատարակման, ականավոր հեղափոխականների, Հայաստանի կոմունիստական կուսակցության գործիչների ստեղծագործությունների լույսընծայման, գիտական հետազոտությունների մի շարք ուղղությունների ոլորտում: Ավարտվել է Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակությունը, իրականացվում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Երկերի ժողովածուի թարգմանությունը: Ինստիտուտը մասնակցել է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կարևոր կոլեկտիվ աշխատությունների պատրաստմանը: ՄԼԻ Ադրբեջանի և Վրաստանի մասնաճյուղերի հետ միասին ինստիտուտը պատրաստել է մի շարք հրատապ ռեգիոնալ մենագրություններ, ինստիտուտում հետազոտություններ են տարվում Հայրենական մեծ պատերազմի պատմության, ինտերնացիոնալ դաստիարակության, գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերի շուրջ և այլն: Նրա աշխատողները մասնակցում են ՍՄԿԿ XXVII համագումարի, կուսակցության Կենտկոմի պլենումների նյութերի պարզաբանման և պրոպագանդման աշխատանքին:*

*Դրա հետ մեկտեղ, ինստիտուտը դեռևս չի գտնվում սովետական հասարակագետներին կուսակցության առաջադրած խնդիրների մակարդակի վրա: Վերակառուցման հիմնական պահանջները՝ անցյալի և ներկայի իրական պրոցեսների օբյեկտիվ խոր վերլուծությունը, կյանքի, կուսակցական աշխատանքի անմիջական պրակտիկայի հետ կապի ամրապնդումը դեռևս պատշաճ արտացոլում չեն գտել ինստիտուտի պրոբլեմատիկայի ու թեմատիկայի մեջ, չեն մարմնավորվել նրա գիտական գործունեության արդյունքներում: Անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվել պլանավորման բարելավման, գիտահետազոտական*

աշխատանքի ինտենսիվացման, կատարվող ուսումնասիրությունների գիտական ու տեսական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Չեն հաղթահարվել մանրաթեմայնությունն ու բազմաթեմայնությունը։

Չի ապահովվել պլանով նախատեսված ժամկետներում կարևորագույն հետազոտությունների, ամենից առաջ «Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծերի» իրականացումը, որի ուղղությամբ աշխատանքը անթույլատրելիորեն դանդաղ է տարվում նաև այժմ։ Ինստիտուտի հրապարակումներում ակնհայտորեն անբավարար է գիտահետազոտական աշխատանքների տեսակարար կշիռը, իսկ սկզբնաղբյուրների հրատարակման նախապատրաստմամբ չափից ավելի հրապուրվելը գիտական կոլեկտիվի ուժերը և ուշադրությունը շեղում է հրատապ գիտական պրոբլեմների ուսումնասիրությունից։ Պատշաճ ուշադրություն չի նվիրվում պատմակուսակցական պրոբլեմների՝ մեթոդաբանության, ՍՄԿԿ պատմության, պատմագրության և աղբյուրագիտության, ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության, կուսակցության ազգային քաղաքականության տեսության և պրակտիկայի, Հայաստանի կոմկուսի հեղափոխական գործունեության, անցման շրջանի ուսումնասիրման և այլ պրոբլեմների մշակմանը։ Ամբողջությամբ վերցրած, խորությամբ չեն հետազոտվում դեռևս չլուծված հարցերը, չեն վերանայվում ոչ ճիշտ դրույթները, հետևությունները ու հնացած կոնցեպցիաները։

Անբավարար է աշխատում կուսակցական շինարարության սեկտորը, որը թույլ է կապված տեղական կուսակցական մարմինների ու սկզբնական կուսկազմակերպությունների հետ, բավարար չափով չի ընդհանրացնում և վերլուծում կուսակցական աշխատանքի փորձը, չի օգտագործում սոցիոլոգիական հետազոտությունների արդյունքները։ Սեկտորը չի ապահովել պլանների կատարումը, չի պատրաստել ու հրապարակել կուսակցական շինարարության հարցերի վերաբերյալ որևէ մենագրություն։ .

Ինստիտուտի հրապարակումներում գրեթե չեն արտացոլվել գիտական կոմունիզմի ու սոցիալիզմի հրատապ հարցերը։

Ինստիտուտի գործունեության մեջ լուրջ բացթողումներն ամենից առաջ պայմանավորված են կադրերի հետ տարվող աշխատանքի անբավարար վիճակով։ Վերջին տարիներին ակնհայտորեն անբավարար է դեպի ինստիտուտ երիտասարդ ընդունակ գիտաշխատողների ներհոսը։ Դրա հետևանքով շարունակվում էր կադրերի ծերացումը. ներկայումս ինստիտուտում գիտության դոկտորների միջին տարիքը 65 է, թեկնածուներինը՝ 47։ Առանձին գիտաշխատողների որակավորման մակարդակը չի համապատասխանում արդի պահանջներին, իսկ նրանց մասնագիտացումը հաճախ չի համընկնում գիտական գործունեության գլխավոր ուղղություններին։ Ինստիտուտում գրեթե չկան ՍՄԿԿ պատմության և կուսակցական շինարարության խոշոր մասնագետներ։

Ինստիտուտի ղեկավարությունը և կուսբյուրոն ժամանակին միջոցներ չեն ձեռնարկել կոնֆլիկտային հարցերի լուծման և կոլեկտիվում իրադրության առողջացման համար։ Գործերի նման իրավիճակը շատ բանով բացատրվում է ինստիտուտի կուսբյուրոյի աշխատանքում եղած լուրջ թերություններով ու վրիպումներով, այն թույլ է իրականացնում կադրերի հետ տարվող աշխատանքը, պահանջվող ազդեցություն չի գործում ինստիտուտի գործունեության վերակառուցման, նախաձեռնության զարգացման, կոմունիստների պատասխանատվության բարձրացման վրա։

Ինստիտուտում չեն անցկացվում գիտական բանավեճեր, հրատապ ու վիճելի պրոբլեմների քննարկումներ, մի բան, որ ստեղծագործական իրադրության հաստատման անհրաժեշտ պայմանն է։ Պատշաճ ուշադրություն չի դարձվում գիտական քննադատության ծավալմանը։

Հանրապետական կոորդինացման խորհրդի սեկցիաներն ու խմբերը անբավարար են միավորում հրատապ պրոբլեմների մշակման ասպարեզում հանրապետության գիտնականների ջանքերը, որպես կանոն, դրանք աշխատանքի պլաններ չունեն և իրենց գործունեության մասին հաշվետվություն չեն տալիս։ Խմբերի ու սեկցիաների մեծ մասը փաստորեն անգործության է մատնված։

Թույլ է գործում ինստիտուտի գիտական խորհուրդը, որի տեսադաշտից դուրս են մնացել հանրապետությունում պատմակուսակցական գիտության զարգացման շատ հարցեր։

Ինստիտուտում թույլ են տրվել հաստիքային կարգապահության խախտումներ։

Բարելավման կարիք ունի նյութատեխնիկական բազան, անհրաժեշտ է արագացնել ինստիտուտի նոր շենքի շինարարությունը։

Մատնանշելով ինստիտուտի (դիրեկտոր՝ ընկ. Հ. Ռ. Սիմոնյան, կուսբյուրոյի քարտուղար՝ ընկ. Բ. Ա. Դարբինյան) աշխատանքում առկա լուրջ թերությունները ու բացթողումները, որոշմամբ ինստիտուտի ղեկավարությանը հանձնարարվում է մշակել և իրագործել գործնական միջոցառումներ դրանց վերացման, ՍՄԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումների պահանջների լույսով ինստիտուտի գիտական գործունեության արմատական վերակառուցման ապահովման ուղղությամբ։

Պահանջել ընկ. Հ. Ռ. Սիմոնյանից և ինստիտուտի կուսբյուրոյից՝ բարձրացնել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը վերակառուցմանը, բարձրացնել հանձնարարված գործի հանդեպ յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունը։

Անհրաժեշտ է հետազոտական պրակտիկայում արագացնել երկրում տեղի ունեցող խոր հեղափոխական վերափոխումների իմաստավորման ու մարմնավորման պրոցեսը, ձգտել այն բանին, որ բոլոր աշխատությունները ստեղծվեն խորապես կուսակցական ու գիտական դիրքերից, ճշմարտության դասերի հաշվառմամբ։ Պահանջվում է մշակել նոր մոտեցում՝ հիմնված վավերագրական աղբյուրների խոր, մանրազնին ուսումնասիրության, անցյալի գնահատման նկատմամբ հիրավի կուսակցական մոտեցման վրա։ Հետազոտությունները պետք է դառնան նյութականացված վկայություններն այն բանի, որ պատմակուսակցական գիտությունը դուրս է եկել վերակառուցման պահանջներին համապատասխանող նոր բնագիծ։

Ինստիտուտը պետք է դառնա հանրապետությունում պատմակուսակցական գիտության իսկական կենտրոն, որը գաղափարախոսական ու մեթոդաբանական ազդեցություն է գործում բոլոր հասարակական գիտությունների վերակառուցման և հետագա զարգացման վրա, հասարակական զարգացման պրոցեսների օբյեկտիվ վերլուծության վրա։

Ինստիտուտի դիրեկցիային հանձնարարված է՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հետ համաձայնեցնելով, 1988 թ. առաջին եռամսյակում վերանայել ընթացիկ ու հեռանկարային գիտահետազոտական պլանները։ Վերացնել մանրաթեմայնությունն ու բազմաթեմայնությունը, կոլեկտիվի ջանքերը կենտրոնացնել առաջատար ուղղությունների վրա՝ կուսակցության գործունեության արդի փորձի ուսումնասիրություն, Հայաստանի կոմկուսի պատմության հրատապ պրոբլեմների մշակում, մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունների թարգմանություն, կուսակցության փաստաթղթերի և այլ աղբյուրների հրապարակում։

Ընդլայնել և խորացնել սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի վերաբերյալ հետազոտությունները։ Առանձնահատուկ ուշադրություն դարձնել բարդ, սակավ ուսումնասիրված և վիճելի պրոբլեմների վերլուծությանը, ինչպես նաև ոչ ճիշտ դրույթների ու հետևությունների վերանայմանը։ Այդ հարցերի շուրջ կանոնավորապես անցկացնել գիտական բանավեճեր ու քննարկումներ։ Ապահովել կուսակցական շինարարության հրատապ հարցերի մշակումը, սերտ կապեր հաստատել կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների հետ, գիտահետազոտական աշխատանքի մեջ ներգրավել պրակտիկ կուսաշխատողների, լայնորեն անցկացնել սոցիոլոգիական հետազոտություններ։

Վերակառուցել ինստիտուտի դիրեկցիայի, գիտական և կոորդինացման խորհուրդների աշխատանքը, ուժեղացնել նրանց դերը անցկացվող հետազոտությունների գաղափարատեսական մակարդակի բարձրացման, դրանց կազմակերպումը բարելավելու գործում, ուժեղացնել պահանջկոտությունը գիտական մշակումների որակի ու գործնական կարևորության նկատմամբ, ապահովել խիստ վերահսկողությունը պլանների կատարման հանդեպ։

Բարձրացնել ինստիտուտի՝ որպես կոորդինացման կենտրոնի դերը, որն ընդունակ է հասարակական գիտությունների զարգացման ընդհանուր հունում որոշելու հանրապետությունում պատմակուսակցական գիտության առաջատար ուղղությունները, ամրապնդել ինստիտուտի կոորդինացիոն կապերը մյուս գիտահետազոտական հաստատությունների և բուհերի հետ, ապահովել սիստեմատիկ գիտամեթոդական օգնությունը ՍՄԿԿ պատմության ամբիոններին։

Ընդլայնել Հայկական ՍՍՀ ԳԱ հասարակագիտական ինստիտուտների և բուհերի ամբիոնների հետ ինստիտուտի փոխգործողությունը կոմպլեքսային գիտական պրոբլեմների, մասնավորապես, կուսակցության ազգային քաղաքականության ու ազգային հարաբերությունների, Հայաստանում ազգայինազատագրական և հեղափոխական շարժումների պրոբլեմների լուծման գործում։

Բարձրացնել կուսարխիվի դերը գիտական հետազոտությունների ակտիվացման գործում, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել նրա նյութական բազան ամրապնդելու համար։

Ղեկավարվելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի զեկուցման մեջ շարադրված դրույթներով ու հետևություններով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պատմության ինստիտուտը որակապես նոր մակարդակով պետք է նախապատրաստի «Հայաստանի կոմկուսի պատմության ուրվագծերի» եռահատոր հրատարակությունը, ապա և՝ Հայաստանի կոմկուսի պատմության համառոտ ուրվագիծը։

Հանձնարարել ինստիտուտին (ընկ. Հ. Ռ. Սիմոնյան) և Հրատպետկոմին (ընկ. Գ. Մ. Մուղնեցյան)՝ մինչև 1990 թվականը ապահովել «Հայաստանի կոմկուսի պատմության ուրվագծերի» առաջին հատորի, ինչպես նաև «Հայաստանի կոմկուսը համագումարների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում» եռահատոր ժողովածուի հրատարակությունը։ Բարձրացնել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների հայերեն թարգմանության որակն ու գիտական մակարդակը, նրանց երկերի ժողովածուի խմբագրմանը ներգրավել առաջատար մասնագետներին։ Հայկական ՍՍՀ ԳԱ համապատասխան ինստիտուտների և Երևանի պետհամալսարանի հետ համատեղ՝ պարբերաբար կազմակերպել առանձին աշխատությունների թարգմանության որակի քննարկումներ։

Ինստիտուտի ղեկավարությանը և կուսակցական կազմակերպությանը՝ բարելավել գիտական կադրերի որակական կազմը, համալրելով այն երիտասարդ ընդունակ աշխատողներով։ Անցկացնել գիտաշխատողների ատեստացիա, կիրառել նրանց մրցութային ընտրություն։ Պլանաչափ աշխատանք տանել գիտաշխատողների պատրաստման և որակավորման բարձրացման նպատակով. ավելի մեծ ուշադրություն նվիրել նրանց գաղափարատեսական աճին, նրան համար կազմակերպել մեթոդական սեմինարներ, գիտական բանավեճեր և այլն։ Կադրերի պատրաստման համար օգտագործել նպատակային ասպիրանտուրան ու ստաժավորումը։

Ինստիտուտում համատեղության ու պայմանագրային հիմունքներով աշխատելու համար ներգրավել բարձրորակ մասնագետների։

Անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել ինստիտուտում հրապարակայնության և դեմոկրատիայի իրագործության, կուսակցական-ընկերական հարաբերությունների ու փոխադարձ խստապահանջության, գործարար ստեղծագործական մթնոլորտի ստեղծման, աշխատանքային ու կատարողական կարգապահության ամրապնդման համար։

Խնդրել ՍՄԿԿ Կենտկոմին առնթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին՝ 1988—1989 թթ. ստացիոնար ասպիրանտուրայում երկու նպատակային տեղ հատկացնել ՍՄԿԿ պատմության մասնագետներ պատրաստելու համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործերի կառավարչությանը՝ տասներկուերորդ հնգամյակում ապահովել ինստիտուտի նոր շենքի շինարարությունը, կահավորել այն ժամանակակից սարքավորմամբ և կատարել կուսարխիվի շենքի անհրաժեշտ վերակառուցում։

Ինստիտուտի ղեկավարությանը հանձնարարված է 1989 թ. փետրվարին իրազեկ դարձնել կատարված աշխատանքի մասին։

ները ոչ մի իմաստ չէին գտնում տնտեսական գիտելիքներ ձեռք բերելու մեջ, գուցե, միայն իրենց հետաքրքրությունը բավարարելու համար: Ասենք, այդ գիտելիքներն էլ ինչներին էին պետք անցյալում: Ամբիոններից շարունակ կրկնվում էին «տիրոջ զգացում», քաղաքական և աշխատանքային ակտիվություն կախարդական խոսքերը, իսկ կյանքում ամեն մեկը՝ բանվորից մինչև դիրեկտոր, մնում էր վերադաս պետերի կարգադրությունների կատարող: Ընդ որում, այդ կարգադրություններն էլ ելնում էին ոչ թե տնտեսական զարգացման օրենքներից, այլ հաճախ՝ հակառակ դրանց, կարծես թե օբյեկտիվ օրենքները կարելի էր ենթարկել առանձին անհատի կամքին: Թե ինչի հանգեցրեց այդ բռնությունը, մենք ակնհայտորեն տեսնում ենք մեր էկոնոմիկայի այսօրվա անմխիթար վիճակի մեջ: Այստեղից էլ ձևամոլությունը, անտարբերությունը տնտեսագիտական ուսուցման նկատմամբ, անհավատությունն ու հուլությունը, որոնք ինչ գնով ուզում է լինի հարկավոր էր հաղթահարել: Սակայն արդեն ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման անցնելու նախապատրաստումը շեշտակիորեն բարձրացրեց բանվորների հետաքրքրությունը տնտեսական գիտելիքների նկատմամբ. հնարավորություն ստեղծվեց ավելի ակտիվորեն իրացնելու իրենց ընդունակությունները, ազդելու կոլեկտիվի գործերի վրա, որոշակի դարձավ աշխատողի աշխատանքի քանակի ու որակի և դրա վարձատրության միջև եղած ակնհայտ կապը:

Պարտուսը լավ, մոբիլիզացնող բառ է: Բայց, լսելով «կլոր սեղանի» մասնակիցների անկեղծ խոսքերը, կցանկանայինք օգտագործել «անգրագիտության վերացում» բառերը, նկատի ունենալով տնտեսագիտական անգրագիտության վերացումը: Այո, ցավոք, կրթության, այդ թվում և բարձրագույն կրթության համակարգը, այսօր անհրաժեշտ տնտեսական գիտելիքներ չի տալիս: Մեզանից շատերը չգիտեն քաղաքատնտեսության տարրական օրենքները, կոնկրետ էկոնոմիկան, չեն կարող բացատրել տարրական տերմինները:

**Ս. ՄԿՐՏՉՅԱՆ**— Մեզ մոտ «Հայքիմմեքենա» միավորումում անցկացվել են զրույցներ, կարգավորվել է տնտեսագիտական ուսուցման դպրոցի աշխատանքը: Մենք ձգտում էինք հասնել այն բանին, որ ամեն մեկին հասկանալի դառնա, թե ինչպես են ձեռք բերվում միջոցները և ինչի վրա են դրանք ծախսվելու:

Այն օրերին մենք հասկացել էինք, որ ազատված կուսակցական աշխատողը, կուսակցական ակտիվիստը ինքը պետք է տիրապետի էկոնոմիկայի օրենքների անհրաժեշտ գիտելիքներին, մանրազնին ուսումնասիրի պրակտիկան, կարողանա տնտեսական պրոբլեմների հետևում տեսնել դրանց քաղաքական նշանակությունը, քաղաքական ներգործությունը կոլեկտիվի գործերի վրա: Առանց դրա մենք չենք կարող կատարել կոմունիստների կողմից մեզ վրա դրված պարտականությունները: Իհարկե, մենք ոչ մի դեպքում չպետք է փոխարինենք տնտեսական ղեկավարին, բայց գիտելիքներն անհրաժեշտ են, քանի որ այսօր քաղաքական, դաստիարակչական և արտադրական խնդիրները միաձուլվել են մեկ հունի, մեկ միասնական պրոցեսի մեջ:

Անցյալ տարվա պլանները մենք թերակատարել ենք մի քանի տոկոսով, բայց այդ պայմաններում անգամ շահույթի պլանը գերակատարել ենք 20 տոկոսով: Այսօր մեզ մոտ նյութական խրախուսման ֆոնդերը կազմում են մոտ մեկ միլիոն ռուբլի, սոցիալական զարգացման ֆոնդը՝ 0,8 միլիոն և արտադրության զարգացման ֆոնդը՝ 4 միլիոն ռուբլի: Բայց փողն ինքնին ոչինչ չի նշանակում՝ այն պետք է աշխատի կոլեկտիվի համար, վերակառուցման համար, այլ ոչ թե անշարժ պառկած մնա, առանց որևէ օգուտ բերելու: Բնակելի շենք կառուցելու համար դիմել ենք շինարարության մինիստրություն, քաղսովետ, և ստացանք մերժում: Ի միջի այլոց, բանվորները լավ գիտեն մեզ մոտ տիրող վիճակը, մինչև վերջին ռուբլին հաշվել են և գիտեն, թե ինչ կարելի է անել եղած գումարով: Եվ այսօր իրավունք ունեն հարցնելու. էլ ինչու՞ էիք գլուխ տանում, խաբում մարդկանց: Էլ ինչու՞ էր այդ ամբողջ աղմուկը, եթե կոլեկտիվը չի կարող իր հայեցողությամբ տնօրինել իր իսկ վաստակած փողը: Դա կարող է աշխատավորների աչքում արժեզրկել տնտհաշվարկի բուն գաղափարը, արգելակել նրանց արտադրական ակտիվությունը: Այժմ մենք ճանապարհի դեռ սկզբին ենք, ուստի առանձնապես կարևոր է մարդկանց ցույց տալ կոնկրետ օրինակներ, շահագրգռել նրանց տեղի ունեցող փոփոխությունների մեջ:

Քննարկման գրեթե բոլոր մասնակիցները հաստատեցին մի միտք. կոլեկտիվների իրադրությունից, կոնկրետ խնդիրներից կտրված տնտեսագիտական ուսուցումը, եթե այն ամրապնդված չէ իրական գործով, նորից կվերածվի նախկին տարիների համար սովորական ձևամոլության:

Պատասխանելով տեղից տրված հարցին, Ս. Մկրտչյանը պատմեց, որ կուսակցական կազմակերպությունը ավելի ակտիվորեն է խորամուխ լինում կոլեկտիվի աշխատանքի մեջ, ուժեղացրել է պահանջկոտությունը ղեկավարներից: Այսպես, կուսակցական կոմիտեում լսվել է գլխավոր դիրեկտորի հաշվետվությունը: Վերջերս սկզբնական կուսկազմակերպության բյուրոն նկատողություն արեց դիրեկտորի տեղակալին, շատ ղեկավարներ նախազգուշացվել են: Դա սթափեցրեց բոլոր նրանց, ովքեր հակված էին մտածելու, թե վերակառուցումը, տնտեսական ռեֆորմը հերթական սովորական միջոցառում է, որը չի պահանջում ինքնահատուցում, ակտիվ և իմաստավորված ջանքեր:

**Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ**— Անցյալ տարի «Մասիսի» մի շարք ֆաբրիկաներ չկատարեցին պայմանագրային պարտավորությունները: Ինչպես պարզվեց, դրանց ղեկավարները պարզապես չէին կարողացել ժամանակին վերակողմնորոշվել, պակասում էին գիտելիքները, նրանք չէին պատկերացնում, թե ինչ է պահանջվում իրենցից: Հաշվի առնելով այդ, կուսկոմիտեն մշակեց համապատասխան պլաններ, և դեկտեմբերից սկսվեց գլխավոր մասնագետների և արտադրությունների ղեկավարների ուսուցումը: Իհարկե, պարտադիր ուսուցման մեջ ներգրավված է նաև կոլեկտիվը: Ուսուցումը այս տարի կազմակերպված է բրիգադների հիման վրա, առանց հաշվի առնելու կրթության մակարդակը. դա հեշտացնում է գործը:

Եվ, իրոք, հավանաբար, դա ճիշտ է: Առավել ևս, որ դիպլոմավոր մասնագետների և միջնակարգ կրթություն ունեցող աշխատողների տնտեսագիտական գիտելիքների մակարդակը քիչ բանով է տարբերվում: Առայժմ այդպիսի շերտավորումը կկրեր խիստ ձևական բնույթ:

Միջամտելով խոսակցությանը, Է. Սաֆարյանը ընդգծեց այն միտքը, որը հնչել էր ելույթների մեծ մասում. անհրաժեշտ է կարճ ժամկետներում կարգավորել իրենց իսկ՝ պրոպագանդիստների, արտադրության ղեկավարների տնտեսագիտական ուսուցումը, այլապես ի՞նչ իմաստ ունի նրանց պարապմունքները բանվորների հետ:

Իրոք, անցած տասնամյակները ցույց տվեցին կատարողական կարգապահության բուն էությունը: Գլխավորն է՝ կատարել հանձնարարված աշխատանքը, իսկ թե ինչպիսին է դրա բովանդակությունը, այնքան էլ կարևոր չէ: Այսօր նման մոտեցումը անհանդուրժելի է:

Շատ բաներ, որոնք նախկինում քիչ էին հետաքրքրում բանվորների մեծ մասին, այսօր դառնում են կրքոտ, շահագրգիռ քննարկման առարկա, այդ թվում տնտեսագիտական ուսուցման պարապմունքների ժամանակ,— շարունակում է Է. Սաֆարյանը:— Իհարկե, նախկինում ևս առաջադրվում էին հարցեր, ասենք, քաղաքային տրանսպորտի աշխատանքի հարցը: Այսօր աշխատավորները տրանսպորտի աշխատանքում եղած թերությունները ավելի ու ավելի հաճախ են կապում արտադրական կարգապահության հետ, բնակարանով ապահովելու գործում եղած թերությունները՝ կոլեկտիվում տիրող ընդհանուր բարոյական մթնոլորտի հետ: Դա շատ կարևոր է, կարողանալ երևույթները տեսնել նրանց փոխադարձ կապերի ողջ բարդության մեջ: Դա ընդլայնում է մտածողության դիապազոնը, սրում է անձնական պատասխանատվության զգացումը այսօր ամբողջ հասարակությանը համակած շարժման հաջողության համար:

Այսօր անչափ մեծ է բանվորների հետաքրքրությունը էկոնոմիկայի հարցերի նկատմամբ. նրանք նույնիսկ պատրաստ են ճաշի ընդմիջման ժամանակ լսել պրոպագանդիստին,— ասում է Դ. Վանյանը:— Հիշում եմ, մի քանի տարի առաջ բանվորներից մեկը հայտարարել էր. «Ես աշխատում եմ սոցիալիստական ձեռնարկությունում և պետք է ստանամ իմ աշխատավարձը: Թե որտեղից է այն գոյանում և ինչից գումարվում, ինձ չի հետաքրքրում»: Հայտարարությունը տիպական է լճացման ժամանակաշրջանի համար, երբ աշխատավարձը եկամտի երաշխավորված աղբյուրն էր, իսկ համահարթումը հավասարեցնում էր աշխատողներին ներկայացվող պահանջները, բարենպաստ հող ստեղծում միջակության ծաղկման համար, ծնել էր խնամառուական տրամադրություններ: Այսօր ևս անտարբեր մարդիկ շատ կան, բայց, հավատացած եմ, որ այդպիսի խոսքեր չես լսի: Ընդհակառակն, բառացիորեն հարցախեղդ են անում, ուզում են ամեն ինչ իմանալ, ամեն բանում կողմնորոշվել: Մինչդեռ պակասում են դասագրքերը, ծրագրերը: Հապաղել չի կարելի, գիտելիքներով չամրապնդված աշխատանքը կկաղի: Ներկա պայմաններում պետք է աշխատել գիտակցորեն, իմաստավորված, հստակորեն իր առջև տեսնելով ոչ միայն մոտակա, այլև հեռավոր նպատակները: Ի դեպ, եթե մենք ղեկավարվենք վերևից եկող ցուցումներով, բանվորների ծանոթացումը տնտեսական նոր համակարգին մեր կոլեկտիվում կձգձգվի չորս տարի: Իսկ սովորեցնել պետք է այսօր, և սովորեցնել բոլորին: Ահա թե ինչու անհրաժեշտ է

անհապաղ կարգավորել գրականության լույսընծայման գործը:

«Նաիրիտ» միավորման գործերի վիճակի մասին ասվածին ավելացրեց Ժ. Հովհաննիսյանը.

— Փոփոխությունները կոլեկտիվում շատ են: Յուրաքանչյուր արտադրությունից կրճատվել է 40—50 մարդ, իսկ մնացածների աշխատավարձը բարձրացել է: Հունվարի մեկից սկսել է գործել աշխատավորական կոլեկտիվի խորհուրդը, որն ընտրվել է դեմոկրատական իրադրության մեջ: Մեզանում աշխատողների 87 տոկոսը ներգրավված է բրիգադների մեջ, 62 տոկոսը աշխատում է տնտհաշվարկով: Այնպես որ, մինչև այս տարվա սկիզբը որոշակի փորձ արդեն եղել է: Այստեղ ճիշտ դիտողություն արվեց այն մասին, որ շատ արհկոմիտեներ տնտեսագիտական ուսուցումը առայժմ իրենց հարազատ գործը չեն համարում: Կարծում եմ, ինքը՝ կյանքը կփոխի, և արդեն փոխում է նման մոտեցումը:

Այսօր չափից ավելի սերտորեն են միահյուսվում կոլեկտիվի և անհատի շահերը, սոցիալական և արտադրական հարցերը: Տնտեսագիտական գիտելիքների մակարդակը անմիջականորեն ազդում է արտադրական հաջողությունների վրա: Այդպիսի պայմաններում աճել է պրոպագանդիստական խոսքի գինը: Արհմիութենական կազմակերպությունը իրավունք չունի արհամարհել մասսաների վրա ներգործելու այդ հուժկու լծակը:

Է. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Պետընդունումը ի հայտ բերեց մի շարք պրոբլեմներ, որոնցից անցյալում մենք խույս էինք տալիս: Գլխավոր դասը ես, թերևս, կձևակերպեի այսպես. խնայողությունը որակի հաշվին ուղղակի վատնողություն է: Գործարար համագործակցությունը պետընդունման հետ, մեր նպատակների միասնության ըմբռնումը մեզ հնարավորություն տվեցին հաջողությամբ ավարտել անցած տարին, չնայած սկզբում եղած դժվարություններին: Եվ ահա գլխավոր արդյունքը. եթե 1986 թվականին մենք «Հայէլեկտրապարատ» ա/մ գլխամասային գործարանի գծով վճարել էինք 17 հազար ռուբլի տուգանք, ապա 1987 թվականին՝ միայն 58 ռուբլի: Նոր պայմաններում տուգանքները իսկական պատիժ են դառնում ձեռնարկության համար, ահա թե ինչու մեզ համար թանկ է այդ փորձը: Իսկ ինչքան-ինչքան ճշմարտություններ ենք մենք բացահայտելու մեզ համար: Ինչպես արտահայտվել է ակադեմիկոս Աղանբեկյանը, «մենք սովորել ենք լողալ ափով», իսկ հիմա մեզ նետել են ջուրը: Հարկավոր է հենարան, և այդ հենարանը կոլեկտիվը պետք է ձեռք բերի տնտեսական կայուն գիտելիքների մեջ:

Եթե դատենք հին, սովորական չափանիշներով, նոր պայմաններում աշխատելու մենք վատ չէինք նախապատրաստվել թե՛ կազմակերպորեն, թե՛ քաղաքականապես: Ժամանակին մենք սեմինարներ անցկացրինք բոլոր մակարդակների աշխատողների համար: Բայց կյանքը, ինչպես միշտ, դուրս եկավ պատրաստի սխեմաներից ու դեղատոմսերից ավելի բարդ: Դատում եմ անցյալ տարվա փորձից. ամեն օր ծագում են նոր հարցեր, նոր պրոբլեմներ: Հարկ է լինում վերակառուցվել ընթացքից, նոր ելք որոնել իրավիճակից:

Է. Գրիգորյանը շոշափեց մի կարևոր թեմա: Մենք հաճախ, տեղին կամ անտեղի, խոսում ենք գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի մասին, առանց ճշտելու, թե մենք ինչ իմաստ ենք դնում այդ բառի մեջ: Իրոք, ինչ է նշանակում ստեղծագործական սկզբունք արդյունաբերության մեջ կատարվող աշխատանքի նկատմամբ: Հին պայմաններում այդ բառերը հաճախ կրում էին ձևական բնույթ, իսկ իրականում աշխատանքի հրամանատարական ոճը բացառում էր ինքնուրույնության, աշխատանքային ինքնագործունեության բուն հնարավորությունը, այստեղից էլ, ի դեպ, ռացիոնալիզատորների, գյուտարարների առաջարկած բազմաթիվ նորամուծությունների տխուր ճակատագիրը: Եթե առանձին նորարարներ հնարավորություն էլ էին ստանում լիարժեք կերպով իրացնելու իրենց մտահղացումները, ապա, որպես կանոն, բյուրոկրատական խոչընդոտների դեմ մղած տևական և հյուծիչ պայքարից հետո: Այսօր մասսաների կենդանի ստեղծագործությունը արտադրության զարգացման համար հանապազօրյա հաց է: Եվ այդ ստեղծագործությունը պետք է հասկանալ լայնորեն. տեսնել նպատակները, շարունակ լինել դրանց հասնելու ամենակարճ ճանապարհների որոնումների մեջ, ցուցաբերել մտքի ճկունություն, մանևրելու ունակություն:

Ի. ԱԴԱՄՅԱՆ— Բրդեղենի կոմբինատը տարիներ շարունակ եղել է վնասով աշխատող ձեռնարկություն: Միլիոնավոր ռուբլիների պարտք, վիթխարի քանակությամբ գերնորմատիվային մնացորդներ: Նոր պայմաններում աշխատանքի մեկ տարի՝ և փոփոխություններն արդեն շոշափելի են: Մարել ենք 4 միլիոնի պարտքը, վերացրել ենք մնացորդների կեսը, ապահովել ենք մեկուկես միլիոն ռուբլու շահույթ: Այդ ամենը, փաստորեն, երկրորդ կիսամյակում, երբ կարողացել էինք անհրաժեշտ թափ առնել: Մանավանդ որ, գործեցին նոր համակարգի բոլոր տարրերը, որին մենք լրիվ անցանք այս տարի: Այնպես որ, հարկ չկա մարդկանց շրջանում ագիտացիա մղել տնտեսական ռեֆորմի օգտին, հարկավոր է օգնել նրանց՝ ըմբռնելու տնտհաշվարկի պայմաններում առանձնապես կարևոր հարցերը: Մարդիկ պետք է սովորեն հաշվել՝ հումքը, նյութերը, աշխատանքային ռեսուրսները, աշխատավարձը: Եվ պետք չէ սպասել՝ մինչև լույս կտեսնեն դասագրքեր. պրակտիկան կա, պարբերական մամուլում ևս բավականաչափ տեղեկություններ են հրապարակվում: Խոսքը, իհարկե, այսօրվա մասին է: Այսօրվա խնդիրները լուծելու համար դա առայժմ բավական է: Բայց, իհարկե, պետք է մտածել նաև ապագայի մասին, երբ տարրական խնդիրներից մենք կանցնենք ավելի բարդ խնդիրների: Այն ժամանակ կպահանջվեն նաև ավելի հիմնովին տեսական գիտելիքներ և պրակտիկ փորձի ավելի խոր իմաստավորում:

Մի խոսքով, փոփոխություններ կան, բայց դրանք առանձնապես չեն ազդել կյանքի վրա, բանվորների, նրանց ընտանիքների վրա, աշխատավարձը շատ քիչ է բարձրացել: Այդ ամենը կլինի, երբ կատարյալ ուժով կգործի նոր մեխանիզմը:

Այսօր արդեն հաճախ ինձ հարց են տալիս. «Իսկ կարո՞ղ է այնպես պատահել, որ մենք մնանք առանց աշխատավարձի»: Հարկ է լինում բացատրել, որ մենք կստանանք այն, ինչի արժանացել ենք: Ոչ ավելի, ոչ պակաս:

Արտադրության աշխատողների գիտելիքների պակասը ինչ-որ կերպ լրացնելու համար մենք պատրաստել և բազմացրել ենք հատուկ հուշատետրեր, որոնցում յուրաքանչյուրը կարող է գտնել առավել հրատապ հարցերի պատասխանները: Ինչպես արդեն նշեցի, դրական տեղաշարժեր կան: Բայց թերությունները ևս ավելի վառ ի հայտ եկան. մեզ սպասում են դժվարին գործեր: Առայժմ մարդիկ ստանում են դեռևս ոչ լրիվ վաստակած փողը: Շատ շուտով կանցկացնենք հաստիքների կրճատում 300 մարդու ևս, լրիվ կանցնենք աշխատանքի վարձատրության նոր համակարգին: Մեծ ռեզերվներ են թաքնված մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա կատարվող ծախսերի իջեցման մեջ: Դեռ անհանգստացնում է որակի պրոբլեմը. պահանջվում է բարելավել տեսականիի քաղաքականությունը:

Այդպիսի պայմաններում, ընդգծեց Ի. Ադամյանը, հատկապես կարևոր է հասնել կատարյալ փոխըմբռնման և արտադրական մեխանիզմի բոլոր օղակների հստակ փոխգործողության:

Կոմբինատի գործերի մասին ասվածին որոշ բան ավելացրեց Ռ. Խաչատրյանը: Նա, մասնավորապես, խոսեց հաստիքների կրճատման տակ ընկած աշխատողների նկատմամբ հասարակության բարոյական պատասխանատվության մասին: Նրանց աշխատանքի տեղավորումը սոցիալական և քաղաքական մեծ նշանակություն ունեցող հարց է: Անդրադառնալով ուսուցման մակարդակի հարցին, նա կոչ արեց ավելի համարձակորեն վերացնել ստերեոտիպերը, հրաժարվել շաբլոնից, վերցնել կամ ստեղծել դրանց անցկացման նոր ձևեր: Ըստ երևույթին, ուշադրության արժանի է նրա առաջարկությունը՝ պարապմունքներն անցկացնել գործարար խաղի, արտադրական իրավիճակի ձևով, որը ապահովում է տեսական գիտելիքների առավել սերտ կապը պրակտիկ գործունեության հետ:

Այսօր յուրաքանչյուր կոլեկտիվ ինքն է պատասխանատու իր բարեհաջողության համար, իր թռիչքի կամ անկման համար: Ճիշտ վերլուծությամբ հաստատել այդ ճշմարտությունը, հիմնավորել հաշվարկներով, հավանորեն, դա է տնտեսագիտական ուսուցման առաջին խնդիրը ներկա պայմաններում:

Տնտհաշվարկի անցնելու կապակցությամբ գործերը բարելավվել են նաև Ալ. Մյասնիկյանի անվան կահույքի ա/մ-ում: Պատմելով այդ մասին, Գ. Մնացականյանը ընդգծեց մի բնորոշ դիտում.

— Բանվորներն սկսել են միմյանց դիտողություններ անել վատ աշխատանքի համար: Նախկինում այդպիսի բան չկար: Նշանակում է, բարձրանում են արդեն գիտակցականությունը, պատասխանատվությունը:

Հնացած հայացքների հոգեբանական հեղաբեկման պրոցեսն սկսվել է, և շատ կարևոր է իրավիճակը վերահսկողությունից դուրս չթողնել: Եթե այսօր բանվորը իր կոլեկտիվում, իր քաղաքում հավատը կորցնի վերակառուցման նկատմամբ, ապա այդ հիասթափությունը կտարածվի նաև ամբողջ հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսների վրա: Դատարկ պրոժեկտյորությունը, անիրականանալի խոստումները, կյանքից կտրված լոզունգները, մի խոսքով, խոսքի ու գործի խզման ամեն մի նշան պետք է բացառվեն: Եթե չկան մխիթարական գործեր, ապա պետք է ասել դառը ճշմարտությունը: Լրիվ ճշմարտությունը մասսաների հետ մեր կատարած

աշխատանքի պարտադիր պայմանն է, այն բուժիչ միջոցը, որը կօգնի հաղթահարելու անտարբերության և թերահավատության հիվանդությունը:

Խոսակցությանը միջամտեց Ի. Թերզյանը.

— Այն մասին, որ գործերը Ձերժինսկու անվան գործարանում վատ են, այստեղ ոչ ոքի համար գաղտնիք չէ: Մտցրեցինք պետընդունում, և անցյալ տարի պլանների կատարումն ընկավ մինչև 50 տոկոսի: Այս տարի ավելի դժվար եղավ. գործիքաշինական արտադրամասում, օրինակ, բանվորներն ամսական ստանում էին 350—400 ռուբլի, մտցրեցին պլան՝ և հիմա վաստակում են 150—170: Բայց մարդիկ մեզանից չեն հեռանում: Կարծում եմ, որ հավատում են իրենց ուժերին: Այսպիսի մի փաստ. կուսկոմիտեի նիստում դրեցին դիրեկտորին ազատելու հարցը. նա չէր կարողացել վերակառուցել իր աշխատանքը և կոլեկտիվի աշխատանքը նոր պայմաններում: Կոլեկտիվն ինքը ընտրեց նոր ղեկավար: Եվ արդեն ամեն մեկը զգում է բարոյական պատասխանատվություն. ինքդ ես ընտրել, ուրեմն պետք է օգնել կարգավորելու գործը: Մարդկանց գիտակցությունը փոխվում է ռեալ պայմաններից: Իսկ փորձել՝ քարոզել կյանքից կտրված ինչ-որ ճշմարտություններ, անշնորհակալ գործ է:

Նույնպիսի իրավիճակ, ինչպես ներկայացրեց Լ. Կուլակովսկայան, ստեղծվել է նաև «Քիմռեակտիվ» ա/մ-ում: Կոլեկտիվը դիրեկտորին անվստահություն հայտնեց հենց այն պատճառով, որ նա ձեռնարկությունը չէր նախապատրաստել տնտհաշվարկի, կոլեկտիվը դնելով դժվարին դրության մեջ: Ընտրեցին նոր դիրեկտոր, կարգավորեցին ուսուցումը: Այժմ տեղի է ունենում արտադրամասերի խոշորացում, կրճատվում են հաստիքները: Շատ հաճախ բանվորներն իրենք են առաջարկում թեկնածություններ կրճատման համար: Այս ամենը բարենպաստ հող նախապատրաստեց նոր գիտելիքների ընկալման համար:

«Հայկենցաղքիմ» միավորման գործերի մասին, տնտեսագիտական ուսուցման գործում եղած ձևամոլության հաղթահարման մասին խոսեց Գ. Բաբայանը:

— Մեր կոլեկտիվը մեծ չէ, հազարից էլ պակաս, բայց արտադրանքը մեծ պահանջարկ ունի երկրում, ուղարկվում է արտասահմանյան երկրներ: Տարունակ նորացվում է տեսականին: Այս հնգամյակում արտադրության ծավալը պետք է աճի մեկուկես անգամ: Թվում էր, թե վատ հիմք չէր ստեղծվել տնտեսավարման նոր ձևերի անցնելու համար: Բայց ահա այդ գործի գաղափարախոսական ապահովումը ստացվեց ոչ այնպես, ինչպես պլանավորել էր դիրեկտորի գլխավորած հատուկ շտաբը: Կադրերի ուսուցումը այս փուլում պետական ձեռնարկության մասին ՍՍՀՄ օրենքի ուսումնասիրումն է: Քանի որ այդ օրենքը ամբողջ տնտեսական համակարգի նորացման հիմքն է: Անհրաժեշտություն է առաջանում բանիմացորեն պարզաբանել այդ փաստաթղթի հիմնադրույթները:

Կոլեկտիվում աշխատում են բազմաթիվ պրոպագանդիստներ, կազմակերպվում են դասախոսություններ, և այդ ամենը կարծես տարիներով ստեղծված ու սովորական դարձած համակարգով: Իսկ երբ բանը հասավ կոնկրետ և շատ անհրաժեշտ խնդրի՝ մարդկանց նախապատրաստել նոր պայմաններում աշխատելու համար, պարզվեց, որ ուժերն այնքան էլ շատ չեն: Իսկ ավելի շուտ, պրոպագանդիստների ընտրությունը այնքան էլ ճիշտ չի եղել: Իրոք, լուրջ մասնագետը պարզապես պլանը կատարած լինելու համար չի ձևացնի, թե իբր պարապմունք է անցկացնում: Իհարկե, ազնիվ և բանիմաց պրոպագանդիստներ միշտ էլ եղել են: Բայց քիչ են, շատ քիչ, եթե նկատի ունենանք վերջնական արդյունքը, պարապմունքների հատույցը:

Գ. Բաբայանը շոշափեց նաև «Գիտելիք» ընկերության հարցը: Ամեն տարի վերևից իջեցվում է պլան, փոխանցվում է փողը, իսկ դասախոսները գալիս են և ելույթ ունենում ռեալ կյանքից կտրված դասախոսություններով: Ավելի ճիշտ կլիներ, ասաց նա, եթե ընկերության ամբողջ աշխատանքը կառուցվեր կոլեկտիվների հայտերի հիման վրա: Եվ «կլոր սեղանի» մասնակիցներից մեկը տեղին ռեպլիկ արեց, «Ոչինչ, հիմա ստիպված կլինեք հետաքրքրվել, թե ինչի համար եք փող տալիս»:

Դրական շատ փոփոխություններ են տեղի ունեցել «Հայհախճապակի» միավորումում 1986 թվականից, երբ ձեռնարկությունն անցավ առավելագույն չափով տնտհաշվարկի մոտեցված պայմանների: Դրանց մասին խոսեց Ռ. Սարինգյուլյանը:

— Երկու տարին փոքր ժամկետ չէ: Բայց այդ ժամանակամիջոցում մենք ինքներս կարողացանք տեսականորեն նախապատրաստվել և նախապատրաստել ղեկավար օղակը մեր ձեռնարկություններում: Իսկ ահա մինչև վարպետները, մինչև բանվորները ձեռքներս դեռ չի հասել: Նոր ռելսերի անցման պրոցեսը միանվագ միջոցառում չէ. դա լուրջ գործ է, որը պահանջում է շատ ուժ և ժամանակ: Կազմակերպական առումով շատ բան է արվել: Տնտհաշվարկի անցնելու համար պահանջվեց խոշորացնել բրիգադները, ստեղծել կոմպլեքսային բրիգադներ: Այսօր, փաստորեն, յուրաքանչյուր խոշոր արտադրամաս մի բրիգադ է, տնտհաշվարկային միավոր: Աշխատանքի և աշխատավարձի բաժինը ստիպված եղավ անակնկալ շատ խնդիրներ լուծել՝ ըստ ռեալ աշխատանքի վարձատրության հստակ համակարգ մշակելու համար:

1986 և 1987 թվականներին արտադրանքի աճը կազմեց համապատասխանաբար 15 և 20 տոկոս: Այդ ժամանակամիջոցում չստացվեց ոչ մի վնասապահանջ: Այդ նույն ժամանակամիջոցում էլ աշխատավարձը ամեն տարի բարձրանում էր 15—20 տոկոսով: Իսկ մեր գլխավոր հաղթանակն այն է, որ կոլեկտիվը հավատացել է նոր գործին:

Նշելով դրական տեղաշարժերը, Ռ. Սարինգյուլյանը ուշադրությունը կենտրոնացրեց գործի նորմալ ընթացքին խանգարող անհամաձայնեցվածությունների վրա:

— Տնտեսական ռեֆորմի հիմքերից մեկը պլանավորման ապակենտրոնացումն է,— ասաց նա:— Այս տարվանից մենք անցել ենք նոր համակարգի և հենց այս տարի էլ ստացել ենք մեր թողարկած արտադրանքի ամբողջ 100 տոկոսի պետական պատվեր: Սա ուղղակի հակասում է պետական ձեռնարկության մասին օրենքին: Մենք հետքերով գնացինք վերև և նման վիճակի մեղավորներին չգտանք:

Տեղից լսվեց մի ռեպլիկ. «Առանց պետական պատվերի չի կարելի: Այլապես ձեռնարկությունները կընկնեն միայն շահույթի հետևից, մոռանալով կարևոր, բայց թողարկման համար ոչ շահավետ ապրանքների մասին: Օրինակ, ձեր ափսեները. ճաշարաններում չեն բավականացնում»:

Առարկությունն այնքան էլ ճիշտ չէ: Նույն այդ «Հայհախճապակիում» թողարկվում են տասնյակ արտադրատեսակներ: Եվ բոլորովին էլ հասկանալի չէ, թե ինչու անպայման պետք է պետական պատվեր լինի, ասենք, հրակավից պատրաստվող ծաղկամանների, հախճապակե մոմակալների և այլ արտադրատեսակների համար, որոնք նախատեսված են սիրողների համար: Այնպես չստացվի, որ պետական պատվերները չդառնան դիրեկտիվ պլանավորման մեկ այլ ձև, որը կաշկանդի ձեռնարկությունների նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը: Չէ որ ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման պայմաններում շատ կարևոր է, որ ձեռնարկությունները դուրս գան ազատ շուկա: Իսկ միայն արտապլանային արտադրանքով կամ նույնիսկ արտադրանքի ծավալի մի քանի տոկոսով հազիվ թե կարելի է խոսել ինչպես այդ շուկայի վրա հնարավոր ազդեցության մասին, այնպես էլ լուրջ տնտեսական ինքնուրույնության մասին: Բոլոր ֆոնդերի ծախսման և ամբողջ արտադրանքի նկատմամբ խիստ վերահսկողության առկայությունը իջեցնում է տնտհաշվարկի արդյունավետությունը:

Արտադրական, սոցիալական խնդիրների լուծման հետ զուգակցելու դեպքում միայն տնտեսագիտական ուսուցումը կարող է տալ ցանկալի արդյունքներ: Գիտակցության վերակառուցումը և էկոնոմիկայի վերակառուցումը միասնական, անխզելի պրոցես է:

Այդ միտքը, որ բազմիցս հայտնեցին քննարկման մասնակիցները, հաստատեց նաև մահուդի ֆաբրիկայի դիրեկտոր, փորձառու պրոպագանդիստ Ծ. Ղազարյանը:

— Օրինականություն, կարգուկանոն, պետական կարգապահություն՝ ահա այն պայմանները, առանց որոնց մեր խոսքերը կախված կմնան օդում: ՌՍՖՍՀ-ի երեք քաղաքներից մենք ստանում ենք թել: Առաքողը կարող է դրանք ուղարկել եռամսյակի վերջին օրերին, մի բան, որ նա իրոք անում է, չի համարվում ժամկետների խախտում: Իսկ չէ որ մենք հաշվետվություններ ենք ներկայացնում ամեն ամիս: Անցյալում այդ պատճառով մենք խիստ հետ էինք մնացել: Չէին օգնում ոչ մարզկոմներ ու քաղկոմներ ուղարկված հեռագրերը, ոչ հեռախոսային զանգերը ձեռնարկություններին: Այդպիսի պայմաններում էլ ի՞նչ օգուտ կարելի է սպասել բանվորների և ինժեներների տնտեսագիտական գիտելիքների մակարդակից: Մեր մյուս դժբախտությունն էլ ջուրն է: Այն շարունակ կտրում են: Դա աննորմալ վիճակ է ստեղծում արտադրությունում: Չխոսելով արդեն տարրական հիգիենայի մասին, ճաշարանի աշխատանքի մասին: Ճի՞շտ է, արդյոք, երբ շրջկոմի քարտուղարները, իրենց գործերը թողած, զբաղվում են մեզ ջուր մատակարարելու հարցով:

Այս և ուրիշ հիվանդոտ հարցեր հաճախ շոշափվում են պարապմունքների ժամանակ, և լավ պրոպագանդիստն անգամ, իհարկե, ոչ մի կերպ չի կարող շրջանցել դրանք: Շրջակա իրականությունը մարդը ընկալում է միասնության մեջ, փաստերի ու երևույթների փոխադարձ կապի մեջ: Միայն կատարյալ հրապարակայնությունը, լիակատար անկեղծությունը կարող են վստահություն առաջացնել դեպի պրոպագանդիստը:

Քաղաշխատողների ուսուցումը կարգավորելու, լավագույն պրոպագանդիստների փորձը ուսումնասիրելու և պրոպագանդելու անհրաժեշտության մասին խոսեց Ի. Առաքելյանը: Լայն առումով այդ հարցի լուծումը գտնվում է կուսակցության շրջկոմների, քաղկոմների իրավասության տակ, որոնք կոչված են ուղղություն տալու և կոորդինացնելու այդ աշխատանքը:

— Մեզ մոտ առայժմ դեռ ղեկավարների ընտրություններ չեն եղել,— ասաց Գ. Մելքումյանը,— բայց ժողովների մակարդակը ակնհայտորեն վկայում է մարդկանց ակտիվության բարձրացման մասին: Դրա հետ մեկտեղ, պարզ է մեկ ուրիշ բան ևս. մենք դեռ պետք է սովորենք ապրել հրապարակայնության պայմաններում, հստակորեն տարբերել դեմոկրատիայի ծիլերը դեմագոգիայից: Դրա ուղին մեկն է՝ ավելի շատ ազնվություն, ավելի շատ բացախոսություն ղեկավարության, կուսբյուրոյի աշխատանքում: Որոշ քայլեր արդեն արվել են. քննարկում ենք ռեզերվային կադրերի թեկնածությունների առաջքաշման հարցը. մինչև ժողովը արտադրամասերում ընթերցվեցին կուսբյուրոյի հաշվետու զեկուցման թեզիսները, լսեցինք ընկերների դիտողությունները, հաշվի առանք դրանք: Դեմոկրատական հիմունքներով, գաղտնի քվեարկությամբ անցկացրինք աշխատավորական կոլեկտիվի խորհրդի ընտրությունները: Խորհուրդը գլխավորեց մեր ավագ ինժեներներից մեկը, կոլեկտիվում հարգանք վայելող մի մարդ: Այստեղ ճիշտ ասվեց, միայն ռեալ գործերը, կոնկրետ աշխատանքը կարող են բեկում մտցնել կոլեկտիվի տրամադրությունների, նրա ողջ գործունեության մեջ:

Նշելով աշխատավորական կոլեկտիվների աճող ակտիվությունը, աշխատավորների հետաքրքրությունը էկոնոմիկայի, ձեռնարկության տնտեսական գործունեության նկատմամբ, «կլոր սեղանի» մասնակիցները խոսեցին այն մասին, որ չի կարելի ամբողջ գործը հանգեցնել լոկ այն բանին, որ բանվորները իմանան, թե իրենք ինչքան կարող են վաստակել և թե ինչպես են ծախսվում ձեռնարկությունների փոնդերը: Չէ որ խոսքը մարդկային գործոնի ակտիվացման մասին է, կառավարման լայն դեմոկրատացման մասին: Ինքնակառավարման միջոցով, ղեկավարների ընտրովիության միջոցով՝ դիրեկտորից մինչև բրիգադավարները և վարպետները, ձեռնարկությունների և միավորումների աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների միջոցով, նյութական արտադրության ոլորտում անմիջական դեմոկրատիայի ձևերի ծավալման միջոցով կուսակցությունը գնում է դեպի սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնում և խորացում, դեպի սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացում:

Ամփոփելով քննարկման արդյունքները, կուսակցության շրջկոմի քարտուղար Օ. Գրիգորյանը նշեց, որ անհրաժեշտ է ավելի համարձակորեն որոնել աշխատանքի նոր ձևեր, տարածել արդեն եղած փորձը, հասնել այն բանին, որ տնտեսագիտական ուսուցումը դառնա աշխատանքային ակտիվության բարձրացման, աշխատավորների լայն զանգվածներին էկոնոմիկայի վերակառուցման, հասարակական կյանքի նորացման պրոցեսի մեջ ներգրավելու ներգործուն ձև:

«Կլոր սեղանի» նիստի մասին հաշվետվությունը պատրաստել են Վ. ԱՅԴԻՆՅԱՆԸ և Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Թ. ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ**

ՄԵՐ ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացումը նշանակում է աճի նոր որակի հիման վրա արտադրահարաբերությունների համակարգի կատարելագործում, որն արտադրաուժերի առաջընթացի ասպարեզ է բացում: Ժողովրդական տնտեսությունը ինտենսիվացման ուղու վրա փոխադրելու հետևանքով փոխվում են տնտեսական աճի աղբյուրն ու կառուցվածքը: Գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արդյունավետ օգտագործման հետ մեկտեղ էկոնոմիկայի ինտենսիվացումը կոչված է վճռական դեր խաղալու արտադրաուժերի զարգացման գործում:

Որպես կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր օղակ՝ ինտենսիվացումը հնարավորություն է ընձեռում զարգացման հիմնական աղբյուր դարձնելու հասարակական . արտադրության արդյունավետության բարձրացումը: Արտադրության ավելի բարձր տեմպերը ապահովում են սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության ուժեղացում, հասարակական պահանջմունքների ավելի լիակատար բավարարում: Որպես տնտեսական աճի գործոն՝ ինտենսիվացումն ընդլայնում է արտադրաուժերի վրա արտադրահարաբերությունների ակտիվ ազդեցության հնարավորությունները, բայց դրանք չի սպառում:

Այն դրույթների տեսական բովանդակությունը և գործնական ուժը, որոնք առաջ են քաշվել արագացման կոնցեպցիայի հիման վրա ու նրա շրջանակներում, իրենց ամբողջ նշանակալիությամբ բացահայտվում են աճի մեկ այլ կարևոր գործոնը՝ սոցիալիստական արտադրության սոցիալական ուղղվածության ուժեղացումը քննելիս: Կոմունիստական արտադրաեղանակի սոցիալական էության համակողմանի բացահայտման խնդիրը արագացման կոնցեպցիայի միջուկն է մեր հասարակության զարգացման ժամանակակից փուլում: Դրա լուծումը կապված է արտադրաուժերի բնույթի ու զարգացման մակարդակի և արտադրահարաբերությունների միջև այն խզումը հաղթահարելու հետ, որին անդրադարձան ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը և կուսակցության XXVII համագումարը: Դա նշանակում է, որ աշխատանքային կոլեկտիվիզմի հարաբերություններ և տնտեսական շահերի համընդհանրություն հաստատող հասարակական սեփականության բովանդակության ամբողջ հարստությունը պետք է բացահայտվի աշխատանքի և արտադրության իրական, փաստական հարաբերություններում: Միայն իսկական հանրայնացումը, «գործով հանրայնացումն» է (Վ. Ի. Լենին) զարգացած անմիջական հասարակական աշխատանքի բազա հանդիսանում ու բնորոշում գործունեության զանազան տեսակների սուբյեկտների հավասարությունը սոցիալիզմի օրոք:

«Կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— լիովին կհաստատվի աշխատանքի և արտադրության անմիջականորեն հանրային բնույթը: Աշխատանքի հին բաժանման մնացուկների և դրանց հետ կապված էական սոցիալական տարբերությունների վերջնական հաղթահարման շնորհիվ կավարտվի սոցիալապես միատարր հասարակության ձևավորման պրոցեսը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 195): Կնշանակի կոմունիզմի բարձրագույն փուլում աշխատանքի սոցիալական միատարրությունը, որը հասարակության բոլոր անդամների լիակատար հավասարության հիմքն է կազմում, արտահայտում է զարգացած անմիջական հասարակական աշխատանքի և արտադրության սոցիալական բովանդակությունը: Այդ բովանդակության բացահայտվածության աստիճանը, ըստ էության, ցույց է

---

*ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ ԹԵՐԵԶԱ ԱՐՏԱՎԱԶԴԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնի դոցենտ:*

տալիս հանրային սեփականության իրացման արդյունավետության չափը։ Սոցիալիստական արտադրության սոցիալական ուղղվածության ուժեղացումն այն առնչությունների բնույթի հետ սեփականության հարաբերությունների օբյեկտիվ բովանդակության մերձեցման միջոցն է, որոնք աշխատանքի սուբյեկտների միջև գոյանում են արտադրության ոլորտում։ Այն ենթադրում է հանրային սեփականության իրացման տնտեսական և կազմակերպական-կառավարչական ձևերի սոցիալական բովանդակության հարստացում և սոցիալական ուղղվածության ամրապնդում, դրանց՝ որպես յուրաքանչյուր աշխատողի աշխատանքը անմիջաբար հանրայնացնելու անհրաժեշտությանը համապատասխան ձևերի, կատարելագործում։

Արտադրաուժերի զարգացման մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների վճռական դերը ժամանակակից փուլում զգալիորեն կապվում է այնպիսի կոնկրետ միջոցների հետ, որոնք գործունեության ստեղծագործական ռեզերվներն օգտագործում են այդ հարաբերությունների ավելի ու ավելի լիակատար հաստատման համար։ Արտադրաուժերի աճը և որակական վերափոխումը խթանող արտադրահարաբերությունների զարգացման իրական ուղիները բացահայտվում են աշխատանքի և արտադրության բուն պրոցեսում՝ տնտեսական մեխանիզմի ոլորտում դրանց կոնկրետ դրսևորումներով։ Այդ մոտեցումը հատկանշական է նախատեսված այն կազմակերպական ու տնտեսական նորամուծությունների ողջ համակարգին, որոնք ծառայում են ժողովրդական տնտեսության ինտենսիվացմանը։ Տնտեսության մեջ կառուցվածքային խոր փոփոխությունները, քանակական ցուցանիշներից որակականին, միջանկյալից վերջնական արդյունքներին, ռեսուրսները աճեցնելուց դրանց օգտագործումը բարելավելուն կողմնորոշվելը, ինչպես նաև գիտատար ճյուղերի, արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածքների զարգացումը միջոցառումներ են, որոնց խնդիրն է հասարակական կյանքի նպատակամետ, պլանաչափ, ստեղծագործական կազմակերպումը աշխատավորական լայն զանգվածների կողմից։

Ոչ վաղ անցյալում սոցիոլոգիական հետազոտությունների մեջ չափազանց տարածված էր սոցիալիզմի արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկայի ընկալմամբ մի այնպիսի մոտեցում, որն առավելապես ելնում էր արտադրության եղանակի կողմերի տարբերությունից, հակադրությունից՝ դրանք ներկայացնելով մեկը մյուսից կտրված, անտեսելով դրանց դիալեկտիկական փոխազդեցության ամբողջականությունը։ Ասվածը վերաբերում է նաև արդեն քննադատության ենթարկված այն պատկերացումներին, որոնց համաձայն սոցիալիստական արտադրահարաբերությունները կարծես «ինքնաբերաբար» ասպարեզ են բացում արտադրաուժերի զարգացման համար, և այն հայացքներին, որոնցում հաստատվում է սոցիալիզմի տնտեսական սիստեմի պլանային զարգացման գերակայությունը՝ ի հակակշիռ արտադրաուժերի զարգացման ձեռք բերված մակարդակը և բնույթը հաշվի առնելու անհրաժեշտության։

Պատահական չէ, որ թե՛ առաջին դեպքում, երբ թերագնահատվում է սոցիալիստական արտադրահարաբերությունների պլանաչափ կատարելագործման դերը արտադրաուժերի հետ նրանց իրական համապատասխանությունն ապահովելու խնդրում, և թե երկրորդ դեպքում, երբ այդ դերը գերագնահատվում է և պատշաճ կերպով չի լուսաբանվում արտադրության սուբյեկտիվ գործոնի դերը։ Չէ՞ որ հենց արտադրության սուբյեկտի պրակտիկայում, գործունեության և սոցիալ-տնտեսական փոխազդեցության գործառությունների միասնության մեջ է իրականացվում արտադրահարաբերությունների համապատասխանությունն արտադրաուժերին, որի բուն անհրաժեշտությունը դադարում է հրատապ լինել վերը հիշատակված մոտեցման շրջանակներում։ Մենք նկատի ունենք սոցիալիստական արտադրահարաբերությունների առաջանցիկ զարգացման և արտադրաուժերի նրանցից հետ մնալու վերաբերյալ հայտնի դրույթը, որը տարածվել է այնպիսի պայմաններում, երբ, օրինակ, շինարարության մեջ ձեռքի աշխատանքը կազմել է ավելի քան 70 տոկոս, իսկ արդյունաբերության մեջ՝ շուրջ 45, այսինքն՝ երբ աշխատանքի տեսակների որակական տարբերության լայն շրջանակը և նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման ցածր մակարդակը չէին ապահովում յուրաքանչյուր աշխատողի ստեղծագործական ունակությունների բազմակողմանի զարգացում։ Ուստի նշված դրույթը պարունակում է համահավաք աշխատողի արտադրական-տեխնիկական և սոցիալ-տնտեսական նկարագրի հակադրություն սոցիալիզմի պայմաններում։

Մինչդեռ, ինչպես հայտնի է, սեփականության հարաբերությունները, իրագործվելով «միայն իր իսկ արտադրության միջոցով» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 46, ч. I, стр. 483), որոշում են նրա սոցիալական էությունը։ Արտադրաուժերի վիճակը, աշխատանքի և արտադրության փաստացի հանրայնացման աստիճանն ու բնույթը սոցիալիզմի օրոք այն բանի ցուցանիշ են, թե աշխատանքի հասարակական բաժանման մասնակիցներն ինչ չափով են հանդես գալիս իբրև հանրային սեփականության, հանրային հարստության տիրակիցներ՝ նրա ստեղծման և օգտագործման հավասար հնարավորություններով հանդերձ։ Աշխատանքի օգտագործման որոշակի տեխնիկական բազայի վրա հիմնված ամեն մի եղանակ, բնութագրելով արտադրության սուբյեկտի, որպես գլխավոր արտադրաուժի, զարգացման աստիճանը, միջնորդավորված կերպով բնութագրում է նրան նաև որպես որոշակի արտադրահարաբերությունների մարմնավորում։ Այլ խոսքով՝ արտադրության իրական հարաբերությունները սոսկ այն հարաբերություններն են, որոնք ծնվում են բուն իսկ աշխատանքով։

Այն հետևանքները, որոնց հասցրեց սոցիալիստական արտադրահարաբերությունների առաջանցիկ զարգացման մասին դրույթը, սոսկ հաստատում են սոցիոլոգիական տեսության հսկայական պատասխանատվությունը հասարակական զարգացման պրակտիկայի նկատմամբ։ Այդ հետևանքները լայնորեն դրսևորվեցին պլանավորման այնպիսի փոխկապակցված թերություններում, ինչպիսիք են որակավորված կադրերի պատրաստման տեմպերի աճը, որը, սակայն չի ուղեկցվում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների լայն ներդրման հիման վրա արտադրության նյութատեխնիկական բազայի արմատական վերափոխմամբ, մի շարք արտադրություններում աշխատանքի ոչ լրիվ և ոչ օպտիմալ ավտոմատացումը, որով պայմանավորված է ոչ որակավորված աշխատանքի որոշ չափով ավելացումը։ Աշխատուժի պահանջարկի ու առաջարկի միջև առաջացած անհամապատասխանությունը, աշխատանքային ռեսուրսների ոչ խելամիտ օգտագործումը չէին կարող նպաստել լայն մասսաների բավարարվածությանն աշխատանքով, արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Արագացման ստրատեգիան, մարքս-լենինյան մեթոդաբանությանը լիովին համապատասխան, հիմնվում է հասարակության նոր որակական վիճակի անցնելու համար արտադրաուժերի բոլոր տարրերի հեղափոխական վերափոխման որոշիչ նշանակության և այդպիսի վերափոխման մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման վճռական դերի վրա։ Հատուկ ուշադրություն է դարձվում տնտեսական մեխանիզմի ոլորտում արտադրահարաբերությունների անմիջական դրսևորումների կատարելագործմանը։

Արտադրության կոմունիստական եղանակը ստեղծում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման նպատակների նոր հարաբերակցություն։ Առաջին անգամ մարդկության պատմության մեջ ֆորմացիայի զարգացման հիմնական տնտեսական օրենքը և արտադրության անմիջական նպատակն ընդգրկում են արտադրաուժերի սոցիալական բովանդակությունը և այն հարստացնում սոցիալական արդարության սկզբունքով։

Սոցիալիստական արտադրության անմիջական նպատակն է հասարակության բոլոր անդամների աճող պահանջմունքների բավարարմանը ծառայող սպառարժեքների ստեղծումը։ Սոցիալիզմի օրոք սոցիալական արդարության իդեալը, որը, ինչպես հայտնի է, «ոչ լրիվ կոմունիզմն» է, հանդես է գալիս որպես հասարակության անդամների՝ ըստ ընդունակությունների աշխատելու և բարիքները ծախսված աշխատանքի քանակին ու որակին համապատասխան բաշխելու իրավունքի հավասարություն։ Արագացման ստրատեգիան վճռական քայլ է նախատեսում հասարակության բոլոր անդամների փաստական սոցիալ-տնտեսական հավասարության հաստատման ուղղությամբ՝ սոցիալիզմին համապատասխան սոցիալական արդարության սահմաններում։ Քաղաքացիների իրական քաղաքական և իրավական հավասարության հետ միասին հարկավոր է ապահովել յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի իրական հանրայնացում՝ սեփական աշխատանքային ավանդի չափերում արտադրության միջոցների և արդյունքների նրա ակտիվ տիրակցություն։

Նշված ուղղությամբ սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման պրոբլեմը ներկայումս գիտական լայն բանավեճերի առարկա է դարձել։ Այն վիթխարի ուշադրությունը, որն այժմ հատկացվում է արտադրահարաբերությունների համակարգի կենսունակության բարձրացմանը, տնտեսական և կազմակերպչական-կառավարչական ձևերի առավել բարելավմանը, ուղղակիորեն համապատասխանում է արտադրության եղանակի կողմերի փոխազդեցության նկատմամբ արագացման կոնցեպցիայի հունի մեջ ձևավորված նոր մոտեցմանը։ Արտադրահարաբերությունների սոցիալական ֆունկցիաները դադարել են դիտվել սոսկ սոցիալիստական կարգերի և արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության գնահատման ընդհանուր տեսական դիրքերից։ Սոցիալիզմը և նրան հատուկ արտադրահարաբերությունների համակարգը ներկայանում են որպես «ժողովրդի կենդանի ստեղծագործության» արդյունք և այն պրոբլեմների ամբողջ բովանդակությամբ, որոնք առաջ են գալիս մեր հասարակության զարգացման տվյալ փուլում։

Այսօր որոշակի ձև է ստանում սոցիալիստական հասարակության կառուցվածքի դինամիկ կերպարը, որը ներառում է դեպի վերելքի ավելի բարձր աստիճան առաջընթաց շարժման ոչ հակամարտ հակասությունների բազմազանությունը։ Դրանք ամենից առաջ այն հակասություններն են, որոնք բնութագրում են արտադրահարաբերությունների հա-

մակարգի գործառությունը և նշանակալից չափով երևան են գալիս տնտեսական մեխանիզմի ոլորտում: Արտադրահարաբերությունների ակտիվացումն արտադրաուժերի հետ իրենց հարաբերակցության մեջ պահանջում է առաջին հերթին հաղթահարել այն հակասությունները, որոնք արդյունք են սուբյեկտիվ սխալմունքների, ոչ հմուտ ղեկավարման և պարունակում են ճգնաժամային երևույթների վերածվելու վտանգ: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է վերացնել ձևախեղումը պլանավորման մեջ, կասեցնել արտադրության դոգմատիկ կարգորոշումները, ոչնչացնել կազմակերպչական-կառավարչական հարաբերությունների բյուրոկրատիզմը: Սոցիալիստական էկոնոմիկայի շարժունության բարձրացման գործում կարևոր դեր է կատարում ապրանքադրամային ձևերի նկատմամբ ճկուն, կանխակալ համոզմունքներից ազատ վերաբերմունքը, արժեքի օրենքի, ձեռնարկությունների ու միավորումների տնտհաշվարկային իրավունքների արդյունավետ օգտագործումը:

Հանրային արտադրանքի տնտեսական շարժման ձևերի և կազմակերպչական-կառավարչական կառուցվածքների կատարելագործումը, ամբողջովին ժողովրդական տնտեսության ինտենսիվացումը, որպես իրենց իրագործման ներքին պայման, պահանջում են, ինչպես վերը նշվեց, ակտիվացնել մարդկային գործոնի դերը: Դա առաջին պլան է մղում նյութական ոլորտում, ինչպես նաև «գիտություն—տեխնիկա—արտադրություն» շղթայի բոլոր օղակների գործառման մեջ մարդկային բազմակողմանի գործունեությունը խթանելու պրոբլեմը: Դրա լուծումը դեմ է առնում սոցիալ-տնտեսական շահերին, պահանջում է սոցիալական հավասարություն ապահովող հզոր մեխանիզմի ստեղծում՝ սոցիալիստական արդարության սկզբունքի հիման վրա: Այլ խոսքով, անհրաժեշտ է հարստացնել սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրագործման արտադրական և տնտեսական ձևերի սոցիալական բովանդակությունը՝ արդեն գոյացած ձևերը այդ բովանդակությամբ հագեցնելու և տվյալ կարգերին համապատասխանող նոր ձևեր ստեղծելու ճանապարհով: Այսպիսին է սոցիալիզմի արտադրական և կազմակերպչական-կառավարչական հարաբերությունների ամբողջ համակարգի կատարելագործման գլխավոր ուղղությունը: Միայն մասսաների սոցիալական ակտիվությունն ամենուրեք օգտագործելով, գործունեության տնտեսական խթանման արդյունավետ միջոցների կիրառումով, յուրաքանչյուր աշխատավորի իրավունքներն ու պարտականությունները հմտորեն զուգակցելով և բոլոր տեսակի բաշխման հարաբերություններում համահարթումը հաղթահարելով կարելի է ներգրավել գլխավոր արտադրաուժի ստեղծագործական զարգացման ռեզերվները: Չէ՞ որ գործունեության սուբյեկտի՝ գլխավոր արտադրաուժի հենց ունակությունները, նրա զարգացման աստիճանն են բնորոշում մարդկային գործոնի ակտիվացման հնարավորությունները ընդհանրապես և արտադրահարաբերությունների սոցիալական ֆունկցիաների զարգացման պայմանները:

Սոցիալիստական արտադրահարաբերությունները կատարելագործվում են արտադրաուժերին դրանց կայուն համապատասխանությունը պահպանելու նպատակով: Այդ անհրաժեշտությունը հիմնավորված է արագացման կոնցեպցիայով և արտացոլված է արագացման ստրատեգիայում, որը որոշում է մարդկային գործոնի՝ այդ համապատասխանության վճռական պայմանի, ակտիվացման կոնկրետ ուղիներն ու մեթոդները: Առկա է արտադրաեղանակի կողմերի դիալեկտիկայի շրջանակներում մարդկային գործոնի ակտիվացման ֆունկցիոնալ կարևորությունը սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման գործում: Շեշտենք, որ մարդկային գործոնի նկատմամբ մտահոգությունը մեծացել է էկոնոմիկայի զարգացման անբարենպաստ միտումների հետևանքով և ուղղված է ամենից առաջ նյութական արտադրության արմատական վերափոխման, նրա արդյունավետության բարձրացման նպատակին: Արտադրաուժերին արտադրահարաբերությունների կայուն համապատասխանությունը պահպանելու անհրաժեշտության, այսինքն՝ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման շրջանակներում, սոցիալական խնդիրների լուծումը, անկասկած, միջոց է հանդիսանում, այլ ոչ թե նպատակ, մինչդեռ մարդկային գործոնի կառուցվածքում առաջին պլան է մղվում մարդու՝ որպես գլխավոր արտադրաուժի, և որպես արտադրահարաբերությունների սուբյեկտի զարգացումը:

Այլ բան է, որ մարդկային գործոնի կառուցվածքը չի սպառվում մարդու՝ իբրև արտադրության սուբյեկտի, հատկություններով, այլ բնութագրում է նրան նաև որպես հասարակական հարաբերությունների ամբողջություն: Այս կապակցությամբ է որոշվում մարդկային գործոնի ակտիվացման սոցիալական բովանդակության գերակայությունը, որում արտահայտված է էկոնոմիկայի զարգացման ենթարկվածությունը սոցիալիզմի առաջադիմության բարձրագույն նպատակին: Այսպիսով, սոցիալիզմի հասարակական հարաբերությունների համակարգի սահմաններում մարդկային գործոնի ակտիվացումն ունի ինքնաբավ նշանակություն (ինքնանպատակ է): Ընդ որում սոցիալական զարգացման ինքնաբավ բնույթը վճռական ազդեցություն է գործում սոցիալական հարցերը որպես տնտեսական զարգացման լծակ, այսինքն՝ ֆունկցիոնալ նպատակներով, օգտագործելու վրա: Այլ կերպ ասած՝ սոցիալական մեխանիզմի ֆունկցիոնալ կիրառությունը ինքնին լիովին համապատասխանում է նոր կարգերի զարգացման հումանիստական ուղղվածությանը: Այսպիսին է ընդհանուր գծերով մարդկային գործոնի կառուցվածքի հենքը հանդիսացող կապերի հարաբերակցությունը: Այդ կառուցվածքի վերլուծությունը թույլ է տալիս արդեն նոր տեսական հիմքի՝ արագացման կոնցեպցիայի հիման վրա և մարդկային գործոնի դերի հրատապության կապակցությամբ կանխելու սոցիալականը տնտեսականից, արտադրահարաբերությունները արտադրաուժերից խզման վտանգը:

Նշված վտանգը, մեր կարծիքով, հղի է մի այնպիսի մոտեցմամբ, որի դիրքերից «սոցիալական զարգացումն արդեն չի կարող դիտվել իբրև տնտեսական նպատակների հասնելու միջոց»: Այդ մոտեցման համաձայն «ընդհակառակը, արտադրաուժերի աճի արագացումն այստեղ հանդես է գալիս որպես հասարակական հարաբերությունների և համապատասխանաբար իր իսկ մարդու զարգացման որակապես նոր աստիճանի հասնելու պայման» (Т. Заславская. Решающее условие ускорения социально-экономического развития. «ЭКО», 1986, № 3, стр. 13): Անշուշտ, էկոնոմիկայի զարգացումը պետք է ենթարկված լինի սոցիալական նպատակներին, այլ ոչ ընդհակառակը: Ամբողջովին այդ սկզբունքով է տոգորված ՍՄԿԿ XXVII համագումարում հաստատված նոր սոցիալ-տնտեսական քաղաքականությունը: Բայց կարելի՞ է արդյոք այդ սկզբունքից ելնելով համարել, որ սոցիալական հարցերը դադարել են ֆունկցիոնալ նշանակություն ունենալուց: Մի՞թե արտադրաուժերի բոլոր տարրերի, այդ թվում՝ գլխավոր արտադրաուժի՝ մարդու հեղափոխական վերակառուցումը չի ենթադրում որոշ սոցիալական հարցերի լուծում իբրև այդպիսի վերակառուցման պայման, միջոց: Նախորդ ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական պլանավորման հայտնի թերությունները բացատրվում են այն բանով, որ ժամանակին սոցիալական հարցերը դիտվում էին միայն իբրև տնտեսական կարգավորման միջոց, այսինքն՝ սոցիալական զարգացման հարցերը լուծվում էին դրանց բուն նշանակության՝ իբրև միջոցի ու հասարակության առաջադիմության բարձրագույն իմաստը հանդիսացող նպատակի օրգանական կապից դուրս:

Խոսելով սոցիալական նպատակներին էկոնոմիկայի հետզհետե ավելի լրիվ ենթարկվելու մասին, մենք բնավ չպետք է ընթանանք արտադրաուժերը և արտադրահարաբերությունները սոցիալական բովանդակությունից զրկելու ճանապարհով և այդպիսի ենթակայության մեջ սոսկ ինքնակա ոլորտների արտաքին կապ տեսնենք: Հարկավոր է հասնել առաջադիմության նպատակի և միջոցի օրգանական միասնությանը, սոցիալական հարցերի ինքնաբավ և ֆունկցիոնալ իմաստավորմանը, ամեն անգամ հասարակական պահանջմունքների կոմպլեքսային և հեռանկարային վերլուծության հիման վրա դրանց լուծմանը: Էկոնոմիկայի ավելի լրիվ ենթարկումը սոցիալական նպատակներին պահանջում է հաղթահարել սոցիալական հարցերի լուծման «մնացորդային» սկզբունքը, որի դեպքում այդ հարցերը նախ որ ձեռք են բերում երկրորդական բնույթ, և ապա, որպես կանոն, քննության են առնվում աշխատանքի և արտադրության անմիջական պրոցեսի հետ կապից դուրս: Դա ենթադրում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների, տնտեսական մեխանիզմի սեփական սոցիալական բովանդակության հարստացում, նրա ամուր կցորդում հասարակական հարաբերությունների համակարգի ուղղվածության հետ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում կրկին շեշտվեց սոցիալիստական տընտեսվարության նոր մեթոդների համար սկզբունքային նշանակություն ունեցող դրույթն այն մասին, որ «մեր տնտեսական քաղաքականության և տնտեսական պրակտիկայի կենտրոնում մարդն է՝ իր ռեալ շահերով և ձգտումներով»: Այդ դրույթի իմաստն այնուհետև բացահայտվում է այն բանի մատնանշմամբ, որ անհրաժեշտ է «ստեղծել դրդապատճառների ու ազդակների այնպիսի հզոր համակարգ, որը բոլոր աշխատողներին մղի լիովին բացահայտելու իրենց ընդունակությունները, աշխատելու արգասավորությամբ, առավել արդյունավետորեն օգտագործելու արտադրական ռեսուրսները...»: Շահերի հաշվառման վրա հիմնված տնտեսական քաղաքականությունը, շահերը կառավարելու նպատակով ու հենց դրանց միջոցով, արտակարգ հրատապ է դարձնում արագացման **սոցիալական մեխանիզմի** մասին հարցը, որի ազդեցության տակ հարստանում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների սոցիալական բովանդակությունը և դրանով իսկ նաև աշխատանքի մղող շարժառիթների ու ազդակների հզոր համակարգ է ստեղծում:

Այդպիսի քաղաքականությունը հնարավորություն է ընձեռում գործասպարեզ դուրս բերելու արտադրական առաջընթացի սոցիալական աղբյուրները, որոնք թաքնված են մարդու՝ այդ առաջընթացի սուբյեկտի, պահանջմունքների ու շահերի մեջ, իր կողմը գրավե-

լու նրա ստեղծագործական ուժերը: Արագացման սոցիալական մեխանիզմը ծառայում է նոր տնտեսական մեխանիզմի ստեղծմանը, որի ձևավորումը ապահովում է հեղափոխական վերափոխումների հաջողությունը հասարակության մեջ, ինչպես նաև վերակառուցման ասպարեզում, որն ընդգրկում է հասարակության կյանքի բոլոր ոլորտները և ուղղված է դեպի սոցիալական առաջադիմությունը, հասարակական և անհատական շահերի ներդաշնակությունը: Հենց այդ կապակցությամբ է հասարակական կյանքի վերակառուցման ամբողջ բովանդակության համատեքստում որոշվում տնտեսականը սոցիալականին ենթարկելու պրոբլեմը, որի լուծումը հանգեցնում է սոցիալական զարգացման հարցերի ֆունկցիոնալ արժեքականության և ինքնանպատակ բնույթի միասնության, օրգանական ամբողջականության հաստատման:

Տնտեսական անհրաժեշտության շրջանակներում մարդկային գործոնի ակտիվացումը միջոց է աշխատանքի արտադրաուժի մեծացման և ծառայում է անհատի, որպես գլխավոր արտադրաուժի և արտադրահարաբերությունների կրողի՝ հատկանիշների զարգացմանը:

Կենսական պահանջն այստեղ արտադրական, տնտեսական հարաբերությունների համակարգի կատարելագործման, այսինքն՝ տընտեսական կապի և կազմակերպչական-կառավարչական կառուցվածքների ձևերի կատարելագործման հիման վրա դեպի սոցիալիստական ինքնակառավարման սկզբունքը կողմնորոշված արտադրաուժերի բոլոր տարրերի արմատական վերակառուցումը խթանելն է: Այդ կապակցությամբ էլ որոշվում են սոցիալիստական արտադրության սոցիալական ֆունկցիաների անհրաժեշտությունը և ուժեղացման պայմանները: Անհրաժեշտ է հասնել արտադրաեղանակի կողմերի փոխներգործության նոր աստիճանի, որում արտադրահարաբերությունների սոցիալ-տնտեսական բովանդակությունն արտահայտվում է իբրև աշխատանքի սուբյեկտների ավելի ու ավելի ոչ ձևական, փաստացի հավասարություն: Միայն այն ժամանակ, երբ միջոցառումները, որոնք ուղղված են արտադրամիջոցների և մթերքների յուրացման (բաշխման) հարաբերությունների կատարելագործմանը, կսկսեն լիովին արտացոլել աշխատանքի (նյութական-արտադրական գործունեության) սուբյեկտների՝ հանրային սեփականության համատերերի ազատ, ստեղծագործական ինքնարտահայտման համընդհանուր շահերը, այդ միջոցառումները թռիչք կպայմանավորեն արտադրաուժերի զարգացման գործում: Յուրաքանչյուրին՝ ըստ ընդունակությունների աշխատանքը սոցիալիստական արդարության սկզբունքի իրագործման առաջին պայմանն է ու արտադրահարաբերությունների համակարգի զարգացման արգասավորության գլխավոր ցուցանիշն արդի փուլում:

Ցույց տալով բաշխման հարաբերությունների երակիությունը, Կ. Մարքսը, ինչպես հայտնի է, առանձնացնում է «հասարակության անդամների բաշխումն ըստ արտադրության զանազան տեսակների (անհատների ենթարկումը որոշակի արտադրահարաբերությունների) որպես այդ երակի հարաբերություններից երկրորդը, այն, որն ուղղակի բխում է «արտադրամիջոցների բաշխման» հարաբերությունից և նրա հետ միասին ներառվում արտադրության բուն պրոցեսի մեջ: Տվյալ ելակետային տեսական դիրքորոշումն արտացոլված է սոցիալիզմի կատարելագործման կուրսի բուն ձևակերպման մեջ. երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացում՝ գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա: Նման առաջընթացը, միացված սոցիալիզմի առավելություններին, ամենից առաջ աշխատանքի տեսակների միջև որակական տարբերությունների հաղթահարումն է, նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրումը, որոնք թույլ են տալիս ստեղծագործական աշխատանք զարգացնել արտադրական և տնտեսական գործունեության բոլոր տեղամասերում ու ոլորտներում: Դրանով իսկ այդ բանը նախադրյալ և հիմք է գործունեության սոցիալական ամրագրումը հաղթահարելու և աշխատանքն ըստ ընդունակությունների համակողմանիորեն իրագործելու համար:

Աշխատանքն ըստ ընդունակությունների սկզբունքի տիրապետման ընթացքում հասարակական առաջադիմությունը տեղի է ունենում աշխատողի պահանջմունքներն սկզբում ըստ ծախսված աշխատանքի քանակի ու որակի, իսկ այնուհետև՝ դրանցից անկախ բավարարումով: Մեր հասարակության զարգացման արդի փուլում վճռվում է ըստ աշխատանքի բաշխումը կատարելագործելու, աշխատավարձի, ինչպես նաև աշխատանքը նյութապես խրախուսելու ամբողջ համակարգի կազմակերպման մեջ մի շարք լուրջ թերություններ արմատախիլ անելու պրոբլեմը: ՍՄԿԿ ծրագրում ցույց է տրվում, որ աշխատանքի նկատմամբ նյութական խթանիչների գործունեությունն ուժեղացնելու նպատակով «անհրաժեշտ է մշտապես կատարելագործել աշխատավարձի համակարգն այն հաշվով, որպեսզի այն լիովին համապատասխանի աշխատանքն ըստ քանակի ու որակի վարձատրման սկզբունքին, հաշվի առնի նրա պայմաններն ու արդյունքները, խթանի աշխատողների որակավորման, աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի բարձրացումը, ռեսուրսների բոլոր տեսակների ռացիոնալ օգտագործումը և տնտեսումը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 213): Ընթացիկ հնգամյակում եկամուտների ընդհանուր աճի առնվազն երկու երրորդը կապահովվի ի հաշիվ ըստ աշխատանքի վճարման: Բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձի բացարձակ չափերը 1985 թ. 190 ռուբլուց 1990 թ. պլանի համաձայն կհասնի մինչև 220 ռուբլու: Աշխատանքի վարձատրման գործում արմատական միջոցառումները կծառայեն արդյունաբերության մեջ, ժողովրդատնտեսական ոլորտում իրագործելու ուժեղ սոցիալական քաղաքականություն, որը խարսխվում է ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի անշեղ կենսագործման վրա:

Կատարելագործելով ըստ աշխատանքի բաշխումը, հասարակությունը փոխում է մարդկային գործոնի կառավարման պայմանները, կարգավորում արտադրության և սպառման վրա ներգործությունը: Դրանով հասարակությունը հսկայական քայլ է կատարում սոցիալիստական արտադրության սկզբունքի իրագործման ուղղությամբ, որի արգասավորությունը, վերջին հաշվով, չափվում է ըստ ընդունակությունների աշխատանքի զարգացածության աստիճանով: Ճիշտ այնպես, ինչպես հավելյալ արժեքի ստացումը ենթադրում է աշխատանքի հակամարտ բաժանում, անմիջական հասարակական արժեքի ստացումը կոմունիստական ֆորմացիայի երկու փուլերում էլ ենթադրում է ազատ, ըստ ընդունակությունների բաժանվող աշխատանք: Այսպիսով, ըստ աշխատանքի բաշխման զարգացումը խթանում է արտադրության նյութական բազայի վերափոխմանն ուղղված գործունեությունը՝ գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա: Ընդ որում ստեղծվում է հասարակական արտադրանք, որը հետզհետե ավելի է ընդունում զարգացած անմիջական հասարակական արժեքի տեսք, այսինքն՝ առավել է բաշխվում ըստ պահանջմունքների: Դա իր հերթին կապված է տընտեսապես ազատ աշխատանքի, ըստ ընդունակությունների աշխատանքի բարձր ձևերի աստիճանական հաստատման հետ:

Ասվածից հետևում է, որ սոցիալիստական արդարության սկզբունքը ոչ թե լրացնում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների կապը, այլ արտահայտում է այդ կապի սոցիալական բովանդակության առանձնահատուկ պայմանը: Նոր կարգերի արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկական կապի տվյալ պայմանի չկատարվելը՝ ըստ ընդունակությունների աշխատանքի ոչ զարգացած լինելը և ըստ աշխատանքի բաշխման անկատարելիությունը մատնանշում է, որ սոցիալիզմի օրոք արտադրաեղանակը դեռևս չի հասել առաջադիմության համապատասխան աստիճանին: Այդ բանի ըմբռնումը թույլ է տալիս իմաստավորել սոցիալիստական արտադրության սոցիալական ֆունկցիաների ուժեղացման խնդրի կապը էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հետ, կապ, որն ամենևին արտաքին չէ, չի հանգում տնտեսականը սոցիալականին պարզապես ենթարկելուն, այլ ենթադրում է այդ սկզբունքների օրգանական միասնություն արտադրական գործունեության ոլորտում: Այս դիրքերից էլ պետք է մոտենալ սոցիալիզմի օրոք արտադրության սոցիալական ուղղվածության ամրապնդման խնդրի կոնկրետ մշակմանը:

ներում. ա) արտադրական խնդիրների լուծմանը ակադեմիական ինստիտուտների ուղղակի մասնակցությամբ (խոսքն այն աշխատանքների մասին է, որ ամբողջապես կատարվում են ինստիտուտում), բ) հատուկ նախագծային-կոնստրուկտորական ստորաբաժանումների և փորձնական-փորձարարական բազաների ստեղծման հիման վրա արտադրական խնդիրների լուծմանը ակադեմիական ինստիտուտների մասնակցությամբ (վերջինս տվյալ դեպքում ստեղծում է նոր արտադրատեսակի սկզբունքային սխեման, որի հիման վրա նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունը հետագայում մշակում է դրա կառուցվածքը):

Ակադեմիական հաստատությունների ուղղակի մասնակցությունը արտադրական խնդիրների լուծմանը հիմնականում իրականացվում է ձեռնարկությունների հետ տնտեսական պայմանագրերի և համագործակցության պայմանագրերի կնքման հիման վրա: Արտադրության հետ ակադեմիական գիտության կապի այս ձևերն ապահովում են, ինչպես պրակտիկան է ցույց տալիս, գլխավորապես, նոր տեխնիկայի առաջնային նմուշների մշակման արագացումն ու պատրաստումը, այլ ոչ թե դրանց զանգվածային տարածումը: Բերենք կոնկրետ օրինակներ: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտը երկրում առաջին անգամ մշակել և իր փորձնական գործարանում արմատավորել է նոր, արդյունավետ մի նյութ (բենտափոշի), որը բարձրացնում է ռետինի և ռետինե կորդերի միակցման ուժը, մեծապես իջեցնում նրանց ինքնարժեքը: Մասնագետների հաշվարկներով, երկրի համանման ձեռնարկություններում դրա արմատավորումը կտա 20 մլն ռուբլու տնտեսական արդյունք: Մեկ ուրիշ օրինակ: Ինստիտուտը մշակել և մինչև պրակտիկ օգտագործման աստիճանի է հասցրել մոլիբդենային կոնցենտրատից քսանյութ ստանալու նոր եղանակ: Չնայած նորույթի անվիճելի հեռանկարայնությանը, այն դեռևս արտադրությունում արմատավորված չէ: Ինստիտուտի ստացած յուրահատուկ, բայց դեռևս չարմատավորված գիտատեխնիկական արդյունքն է նաև հրաբխային հումքի՝ պեռլիտի կոմպլեքսային օգտագործման մեթոդի մշակումը: Այն արդյունավետ կարող է օգտագործվել որպես ֆիլտրող նյութ սննդի, քիմիական, ցելյուլոզի-թղթի և արդյունաբերության այլ ճյուղերում: Տարեկան 20 հազար տոննա միայն ֆիլտրող փոշի արտադրելու դեպքում դրա տնտեսական արդյունքը կկազմի 20 միլիոն ռուբլի: Այս ցուցակը կարելի է շարունակել՝ ելնելով նաև մյուս ակադեմիական ինստիտուտների աշխատանքի փորձից: Ինչպես երևում է բերված օրինակներից, արտադրության հետ ակադեմիական գիտության կապի տնտեսական պայմանագրային ձևը, անկախ նոր մշակումների արդյունավետությունից, ի վիճակի չէ ապահովելու նրանց լայն ներդրումը, և հաճախ կրում է եզակի բնույթ: Պատճառն այն է, որ ժողովրդական տնտեսության ճյուղերում գիտատեխնիկական քաղաքականությունը որոշում են ճյուղային գիտահետազոտական կազմակերպությունները: Անշուշտ, առանց նրանց համաձայնության չի կարող լուծվել նոր տեխնիկայի կիրառման հարցը: Սակայն գործնականում հաճախ կարելի է հանդիպել բազմաթիվ դեպքերի, երբ ճյուղային գիտահետազոտական կազմակերպությունները դժկամությամբ են վերաբերվում ակադեմիական ինստիտուտների և բուհերի մշակած գիտատեխնիկական նորույթներին: Մյուս կողմից այդ նորույթները գիտատեխնիկական միջոցառումների պլանի մեջ մտցնելիս կարող է այնպիսի իրավիճակ ստեղծվել, երբ արագացման արդյունքը, որ ձեռք է բերվել ճյուղային գիտահետազոտական կազմակերպությունները՝ որպես միջանկյալ օղակ շրջանցելու հաշվին, ուղղակի արմատավորման շնորհիվ, կարող է կորչել «հետազոտություն—արտադրություն» շղթայի վերջին փուլերում: Բանն այն է, որ եթե ճյուղային գիտահետազոտական կազմակերպությունները սկզբից ևեթ մասնակցություն չունենան ակադեմիական ինստիտուտների աշխատանքներին, ապա նոր տեխնիկայի տարածման փուլում շատ ժամանակ ու ջանք կպահանջվեն՝ նոր մշակմանը ծանոթանալու և այն գործող ներճյուղային ստանդարտների համակարգի մեջ փոխադրելու համար: Դրա հետևանքով գործնականում դեռևս հանդիպում են դեպքեր, երբ ստեղծված առաջադիմական տեխնիկան ներդնելու ժամկետների ձգձգման պատճառով այն բարոյապես հնանում է:

Այսպիսով, արտադրության հետ ակադեմիական գիտության գոյություն ունեցող կապը չի նպաստում գիտատեխնիկական միջոցառումների արագ ու լայնամասշտաբ



արմատավորմանը: Ակադեմիական գիտության և արտադրության տնտեսական պայմանագրային փոխհարաբերությունների պրակտիկան վկայում է այն մասին, որ գիտական հետազոտությունների ու մշակումների թեմատիկայի ձևավորումը ակադեմիական ինստիտուտներում ենթարկվում է արտադրական նեղ պահանջմունքներին և առանձին պատվիրատու կազմակերպությունների ֆինանսական թույլ հնարավորություններին: Տնտպայմանագրային հարաբերությունների ծավալների ճնշող մեծամասնությունը տատանվում է 50-ից մինչև 100 հազար ռուբլու միջև, իսկ դրանց տևողությունը երկու տարուց էլ պակաս է: Պարզ է, որ հետազոտությունների նման փոքր ծավալների դեպքում խոսք չի կարող լինել բարձրարդյունավետ գիտատեխնիկական արդյունքներ ստանալու մասին:

Գիտական հետազոտությունների ու մշակումների կատարման համար կնքված տնտեսական պայմանագրերի անվան տակ հաճախ վաճառքի է հանվում միևնույն սակավ նշանակալի գիտատեխնիկական արդյունքը: Դա վկայում է այն մասին, որ ակադեմիական ինստիտուտներում միշտ չէ, որ ապահովվում է հաջորդականությունը հիմնարար և կիրառական հետազոտությունների միջև: Իրոք, եթե սկզբնական շրջանում կատարվող կիրառական հետազոտություններն ու մշակումները հնարավորություն էին տալիս իրացնել արդեն ձեռք բերված հիմնարար արդյունքները, ապա հետագայում հիմնարար և կիրառական հետազոտությունների միջև ստեղծվեց անհամապատասխանություն, այսինքն՝ կիրառական հետազոտություններն ու մշակումները սկսեցին ծավալվել նախկինում ձեռք բերված տեսական մակարդակով: Մինչդեռ նպատակահարմար է, որ ակադեմիական ինստիտուտների կիրառական գործունեությունն ուղղված լինի նոր հիմնարար արդյունքի նյութականացմանը, այլ ոչ թե նրա վերավաճառմանը: Ճյուղային գիտահետազոտական ինստիտուտներին և կենտրոնական գործարանային լաբորատորիաներին հատուկ աշխատանքների կատարումը ակադեմիական ինստիտուտների կողմից, վերջին հաշվով, հանգեցնում է կադրային և ֆինանսական ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործման: Ակնհայտ է, որ մասնավոր արտադրական խնդիրների լուծման վրա հիմնված տնտպայմանագրային աշխատանքների հետագա ավելացումը կարող է լուրջ վնաս հասցնել հանրապետությունում կատարվող կենսականորեն կարևոր հիմնարար հետազոտություններին: Տնտպայմանագրային կապերի քանակական աճը ժողովրդական տնտեսության ինտենսիվացման ժամանակաշրջանում պետք է փոխարինվի արտադրության հետ ակադեմիական գիտության կապերի ողջ համակարգի որակական վերափոխումներով: Նրա արդյունավետությունը պետք է գնահատել ոչ թե տնտպայմանագրերի թվով և դրանց ծավալներով, այլ այդ աշխատանքները սպառողի ստացած վերջնական արդյունքներով: Ցավոք, ակադեմիական ինստիտուտների կոլեկտիվները մինչև այժմ նպատակամղված չեն ժողովրդական տնտեսության մեջ արմատավորված մշակումների սոցիալ-տնտեսական արդյունքի մեծացմանը, քանի որ դրանց գլխավոր նպատակն է հասնել պայմանագրերով ստացվող միջոցների այնպիսի ծավալի, որը սահմանված է պլանային առաջադրանքով: Այստեղ տեղին է նշել կոլեկտիվների շահագրգռվածությունը տնտպայմանագրային աշխատանքների արժեքի բարձրացման գործում, քանի որ սահմանված գումարի և փաստացի ծախսումների տարբերությունից է կախված նրանց եկամտի մեծությունը: Ավելին, պարգևավճարների ֆոնդերը գիտահետազոտական կազմակերպություններում գոյանում են աշխատավարձի ֆոնդի 6—8 տոկոսի չափով, որն իր հերթին որոշվում է գիտական հետազոտությունների ու մշակումների ծավալի նկատմամբ տոկոսներով: Ստացվում է, որ կոլեկտիվի շահագրգռվածությունը հիմնված է կատարված ծախսումների և ոչ թե տնտեսական արդյունքի վրա: Ինստիտուտի կոլեկտիվը նոր տեխնիկայի արմատավորումից ստացված արդյունքի մեծության մեջ շահագրգռված է այնքանով, որքանով դա հնարավորություն է տալիս նրան կնքելու տնտեսական պայմանագիր: Այդ պատճառով ինստիտուտի համար միևնույն է՝ նա մի քանի մանր պայմանագրային աշխատա՞նք է կատարում, թե՞ մի խոշոր բարձրարդյունավետ մշակում: Նման դրությունը կարող էր շտկել «ուժեղ պարտնյորը»: Վերջինս հնարավորություն ունի կնքելու երկարաժամկետ տնտեսական պայմանագիր, որի շրջանակներում կարող է լուծվել սկզբունքորեն նոր գիտատեխնիկական խնդիրը: Սակայն արտադրական ձեռնարկությունների հիմնական զանգվածը բավարար ֆինանսական միջոցներ չունի երկարաժամկետ և թանկ արժեցող տնտեսական պայմանագրեր կնքելու

համար: Սահմանափակ են նաև հնարավորությունները՝ սեփական ուժերով ապահովելու ակադեմիական գիտահետազոտական կազմակերպությունների արդյունքների ներդրման աշխատանքների ողջ կոմպլեքսի կատարումը: Այս առնչությամբ հարկ է նշել, որ ցայսօր ոչ մի կազմակերպություն պատասխանատվություն չի կրում գիտատեխնիկական արդյունքների արտադրական յուրացման համար:

Այժմ, երբ խնդիր է դրվում լայնորեն տարածել տեխնիկայի ու տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր նմուշներ, բնականաբար, հարց է ծագում, իսկ ո՞վ պետք է կատարի այդ ֆունկցիան: Վերջին հաշվով, ինչ-որ մի կոնկրետ կազմակերպություն պետք է զբաղվի նոր տեխնիկայի տարածմամբ և արտադրական յուրացմամբ: Իրավացի են այն հեղինակները, որոնք գտնում են, որ այդ խնդրի լուծման արդյունավետ ձևերից մեկը կարող է լինել մասնագիտացված ներդնող կազմակերպությունների կամ ֆիրմաների ստեղծումը: Հրամայական պահանջ է նոր տեխնիկայի արմատավորման կազմակերպման կառուցվածքի կտրուկ վերակառուցումը: Անհրաժեշտ է ունենալ հատուկ կազմակերպություններ, որոնք պատասխանատու լինեն հիմնարար գիտական արդյունքների արմատավորման և արտադրական յուրացման համար:

Ներդնող ֆիրմաների ստեղծման անհրաժեշտությունից բացի պետք է հաշվի առնել արտադրության հետ ակադեմիական գիտության կապի կազմակերպման ձևերի ստեղծման ուրիշ նախադրյալներ ևս: Առավել հեռանկարային է թվում սեփական հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպությունների (ՀԿՏԿ) զարգացումը: Նշենք, որ ներկայումս հանրապետության գիտությունների ակադեմիայի համակարգում գործում է 7 ՀԿՏԿ: Դրանց ստեղծումը գիտությունների ակադեմիայի համակարգում նպատակ ուներ լուծելու հետևյալ հիմնական խնդիրները՝ իրականացնել ակադեմիական ինստիտուտներում ձեռք բերված գիտատեխնիկական արդյունքների նախագծումը և արագացնել նոր տեխնիկայի փորձնական նմուշների պատրաստումն ու արմատավորումը ձեռնարկություններում՝ շրջանցելով ճյուղային ինստիտուտները, ամրապնդել հետազոտությունների ու մշակումների սեփական փորձնական-փորձարարական բազան:

Ակադեմիական ՀԿՏԿ-ների գործունեության յուրահատկությունն այն է, որ նրանց աշխատանքների արդյունքները կրում են միջճյուղային բնույթ: Իբրև օրինակ կարող է ծառայել ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի գործունեությունը: Այս կազմակերպությունը 1977—1986 թթ. ընթացքում երկրի տարբեր պրոֆիլ ունեցող 10-ից ավելի կազմակերպությունների հետ պայմանագրային կարգով իրականացրել է համատեղ մշակումներ:

Տարբեր պրոֆիլներ ունեն նաև դժվարահալ նյութերի, ինչպես նաև մեխանիկայի ինստիտուտի հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոների պատվիրատուները: Այս տեսակետից բացառություն է կազմում միայն նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի հատուկ քիմիադեղագործական բյուրոն: Այդպիսի հատուկ բյուրոների գործունեությունը նպաստում է հանրապետության ակադեմիական ինստիտուտներում կուտակված նշանակալի հիմնարար արդյունքների ներդրման տեմպերի արագացմանը: Օրինակ, տեխնիկայի նոր նմուշների ստեղծման ժամկետը, սկսած հետազոտման հիմնարար փուլից մինչև դրանց պատրաստումն ու արտադրությունը, չորս ՀԿՏԿ-ների գծով միջին հաշվով կազմել է 3,6 տարի: Ճիշտ է, դժվար է դատել այն մասին, թե այդ ժամկետներն առավել լավագույնն են, քանի որ վիճակագրական բազան թույլ չի տալիս համեմատելու մշակումների տևողությունը ՀԿՏԿ կազմավորումից առաջ և հետո: Տվյալ դեպքում ավելի ճիշտ կլինի խոսել գիտահետազոտական ցիկլի տարբեր փուլերի աշխատանքի կոոպերացման հաջող ձևի մասին, որի շնորհիվ առաջացել է ակադեմիական ինստիտուտների հիմնարար արդյունքների ուղղակի արմատավորման սկզբունքորեն նոր սխեմա: Այժմ նոր փուլ է սկսվում ՀԿՏԿ-ների և արտադրության փոխհարաբերություններում: Բանն այն է, որ այդ կազմակերպությունները ներկայումս բավարարվում են արդեն ձեռք բերածով և հիմնականում զբաղված են նախկինում նյութականացված արդյունքի կատարելագործմամբ ու տիրաժավորմամբ: Ստեղծվել է այնպիսի իրավիճակ, երբ հիշյալ կազմակերպությունները, օգտվելով իրավական անձի իրավունքից, գոյություն ունեցող հիմնարար հետազոտությունների հիման վրա ինքնուրույն ձևավորում են իրենց պլանային տնտպայմանագրային աշխատանքների թղթապանակը: Դժվար



է բերել տնտեսական պայմանագրերի կոմպլեքսային կնքման գեթ մեկ օրինակ, երբ ինստիտուտները, պայմանագիր կնքելով արտաքին կազմակերպության հետ, հետազոտական մասն ավարտելուց հետո իրենց մշակումը հանձնեն ՀԿՏԿ-ներին՝ պատվերի ձևով: Արտադրության հետ կապը ինստիտուտները հաստատում են ոչ թե իրենց ՀԿՏԿ-ների միջոցով, այլ ուղղակի տնտեսական պայմանագրեր կնքելու հիման վրա: Ստացվում է, որ ինստիտուտները և կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպություններն ունեն պլանավորման, ֆինանսավորման և տնտեսական խթանման տարբեր համակարգ: Դա խոչընդոտում է նրանց միջև աշխատանքի հստակ բաժանմանը: Ինստիտուտների հիմնարար և կիրառական հետազոտությունները միշտ չէ, որ իրենց ավարտն են գտնում ՀԿՏԿ-ների փորձնական-կոնստրուկտորական մշակումներում, և դա ծնում է նրանց փոխադարձ կապի պրոբլեմը:

Աշխատանքների կազմակերպման ու պլանավորման նման պրակտիկան, մեր կարծիքով, կարող է հանգեցնել այն բանին, որ լրիվ կվերանա թեմատիկ փոխադարձ կապը ինստիտուտների և ՀԿՏԿ-ների միջև: Դրա օրինակն է արդեն գիտությունների ակադեմիայի մեխանիկայի ինստիտուտը և նրա ՀԿՏԿ-ն: Այսօր այդ կազմակերպություններն, ըստ էության, գործում են տարբեր թեմատիկ հիմունքներով և հետապնդում տարբեր նպատակներ: Փաստորեն ի դեմս նրանց մենք ունենք «հետազոտություն-արտադրություն» ցիկլի կազմակերպման ոչ թե սկզբունքորեն նոր սխեմա, այլ զուգահեռաբար գործող երկու կազմակերպություն, թեև ձևականորեն կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպության համար վերադասը ինստիտուտն է, որին ենթարկվում է նա վարչական և թեմատիկ հարցերում: Այս ամենը հանգեցրել է այն բանին, որ այսօր իր աշխատանքների արդյունավետությունը բարձրացնելու համար ՀԿՏԿ-ն հետազոտությունների կարիք ունի, որոնց իրականացումը կապված է պետական բյուջեից լրացուցիչ հատկացումների հետ:

Ակադեմիական ինստիտուտների և հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպությունների նման փոխհարաբերություններում թաքնված է հակասական բովանդակություն: Բանն այն է, որ ակադեմիական ինստիտուտը բյուջետային գիտական կազմակերպություն է, իսկ ՀԿՏԿ-ն, լինելով ակադեմիական ինստիտուտի կոնստրուկտորական-տեխնոլոգիական ստորաբաժանում, իր հարաբերությունները կառուցում է տնտեսական պայմանագրերի հիման վրա: Մի կողմից այն թեմատիկ պլան է հաստատում ՀԿՏԿ-ի համար՝ որպես իր գիտատեխնիկական ստորաբաժանման, մյուս կողմից՝ ՀԿՏԿ-ն ինստիտուտի ստացած հիմնարար արդյունքների հիման վրա ինքնուրույն կնքում է տնտեսական պայմանագրեր: Ընդ որում ՀԿՏԿ-ի և ինստիտուտի միջև հետադարձ կապը կառուցվում է տնտպայմանագրային հիմունքներով:

Այդ հակասությունների վերացման ուղին գիտատեխնիկական աշխատանքի կազմակերպման ու պլանավորման այնպիսի կազմակերպական կառուցվածքի ստեղծումն է, որն իրենից ներկայացներ միասնական գիտահետազոտական, կոնստրուկտորական-տեխնոլոգիական և արտադրական մեխանիզմ՝ պլանավորման, ֆինանսավորման և խթանման ընդհանուր համակարգով: Մեր համոզմամբ, գիտությունների ակադեմիայի համակարգում անհրաժեշտ է ստեղծել միջճյուղային գիտատեխնիկական միավորում (ԳՏՄ): Ինչպես հայտնի է, երկրի տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նշվում է, որ անհրաժեշտ է «Լայնորեն կիրառել գիտական գործունեության կազմակերպման նոր առաջադիմական ձևերը, որոնք թույլ են տալիս սեղմ ժամկետներում լուծել միջճյուղային գիտատեխնիկական խոշոր պրոբլեմներ: Տեխնիկայի և տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների մշակման և լայնամասշտաբ արմատավորման համար ստեղծել միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսներ ու կենտրոններ» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 393):

Հանրապետության գիտությունների ակադեմիայի համակարգում գիտատեխնիկական միավորում ստեղծելու համար առկա են բոլոր նախապայմանները (համանման պրոֆիլ ունեցող ինստիտուտ, հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպություն և նրա փորձնական-փորձարարական արտադրություն), որոնց հիման վրա կարելի է ստեղծել փորձնական գործարան: Նշենք, որ Հայկական

ՍՍՀ գիտությունների ակադեմիայի համակարգում գիտատեխնիկական կոմպլեքսների և միավորումների ստեղծման նախադրյալների առկայությունը ժամանակին մատնանշել էին հեղինակավոր մասնագետները: Ակադեմիական ինստիտուտների բազայի վրա գիտատեխնիկական կոմպլեքսների ստեղծման արդյունավետության հարցը բազմիցս քննարկվել է նաև հանրապետության գիտությունների ակադեմիայի նախագահության նիստերում: Գիտատեխնիկական միավորման ստեղծումը գիտությունների ակադեմիայի համակարգում թույլ կտա լուծել երկու խնդիր. առաջին, աշխատանքի արդյունավետ բաժանումը ինստիտուտի, հատուկ կոնստրուկտորական բյուրոյի և փորձնական-փորձարարական արտադրության միջև մեծ չափով կարագացնի հիմնարար արդյունքների նյութականացման, նոր արտադրատեսակների առաջին նմուշների պատրաստման պրոցեսը և կայահովի նոր տեխնիկայի արդեն պատրաստի, փորձարկումների փուլն անցած նմուշների հանձնումը ճյուղային ինստիտուտներին և արդյունաբերական ձեռնարկություններին՝ սերիական լայն արմատավորման համար. երկրորդ, հնարավորություն կստեղծվի միջինստիտուտային պատվերների կատարման հիման վրա ամրապնդել մյուս կազմակերպությունների փորձնական-փորձարարական բազան:

Ակադեմիական գիտատեխնիկական կոմպլեքսի գործունեության տերիտորիալ սկզբունքը կբարձրացնի գիտաարտադրական կապերի արդյունավետությունը: Միևնույն ժամանակ անհրաժեշտ է ընդգծել, որ ակադեմիական գիտատեխնիկական միավորման ստեղծումը պրոբլեմի վերջնական լուծում չէ: Այստեղ արդեն ծառանում է հաջորդ տրամաբանական խնդիրը՝ բարձրարդյունավետ գիտատեխնիկական մշակումները արտադրության մեջ ներդնելու նկատմամբ ձեռնարկությունների շահագրգռվածության բարձրացումը: Տվյալ հարցադրումը արդիական է նաև նրանով, որ նրա իրականացումը հանրապետությունում հնարավորություն կընձեռի ստեղծել «հիմնարար հետազոտություններ— կիրառական հետազոտություններ և մշակումներ—փորձնական արտադրություն» ցիկլի կառավարման ավելի ճկուն կազմակերպական մեխանիզմ:

---

Վերակառուցման ղեկավարում.
կուսկազմակերպությունների
հաշվետվություններ

# ՇՐՋԱՆԸ ՆՈՐ Է, ԻՍԿ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՃԸ՞...

ԵՐԵՎԱՆԻ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՏՎԱԾՈՒՄ շուրջ երկու տարի առաջ ստեղծվեց հանրապետության մայրաքաղաքի նոր՝ թվով ութերորդ վարչական միավորը, Մաշտոցի շրջանը: Միաժամանակ, բնականաբար, կազմավորվեցին շրջանային ղեկավար մարմինները, այդ թվում՝ կուսշրջկոմը: Նրանք իրենց գործունեությունն սկսեցին ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի նորոգիչ հիմնադրույթների, մեր երկրում արդեն ծայր առած վերակառուցման կոնցեպցիայի իրականացման պայմաններում: Այս իրողությունը շրջկոմին հնարավորություն էր ընձեռում կուսակցական աշխատանքը սկզբից ևեթ դնել նոր ռելսերի վրա, չգնալ տրորված ուղիով, համարձակորեն հաղթահարել ստերեոտիպերն ու շաբլոնը, ըստ ամենայնի զարգացնել սկզբնական կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների նախաձեռնությունը, կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքը փոխադրել աշխատավորական կոլեկտիվներ, այնտեղ, ուր որոշվում է արագացման կուրսի կենսագործման բախտը:

Այս ամենը, արդյոք, հաջողվե՞լ է կուսշրջկոմին. նրա բյուրոյին, ինչպիսի՞ փորձ, ձեռքբերումներ կան այս ճանապարհին և ինչպիսի՞ք են թերությունները, վրիպումները: Հրատապ այս և այլ հարցերին կոչված էր պատասխան տալու շրջկոմի պլենումը, որի քննարկմանն էր ներկայացված վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին կուսշրջկոմի բյուրոյի հաշվետվությունը: Զեկուցումը, որով հանդես եկավ շրջկոմի առաջին քարտուղար Ա. Գեղամյանը, կազմված էր այդ ոգով, պարունակում էր հավուր պատշաճի քննադատություն և ինքնաքննադատություն, որոշ երևույթների խոր վերլուծություն, իսկ մյուսների՝ մակերեսային նկարագրում: Մի խոսքով, այն միանշանակ չէր, ինչպես միանշանակ չէ կուսշրջկոմի բյուրոյի և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքը վերակառուցման ղեկավարման գործում:

Մինչև պլենումը շրջանի կուսկազմակերպություններում ավարտվել էին վերակառուցման ղեկավարման աշխատանքի վերաբերյալ ընտրովի մարմինների հաշվետվությունների քննարկումները: Դրանք վկայեցին կոմունիստների աճող ակտիվությունն ու պահանջկոտությունը, նոր ազդակ դարձան ինքնաքննադատության և կոնստրուկտիվ քննադատության զարգացման համար: Մի շարք սկզբնական կազմակերպություններում կոմունիստները սկզբունքայնությամբ գնահատեցին ընտրովի մարմինների գործունեությունը, համարձակորեն խոսեցին թերությունների մասին: Իսկ № 3 հացի գործարանի, «Վերհանշին» տրեստի, ՆԳՄ-ի ջոկատի կուսբյուրոների՝ վերակառուցումը ղեկավարելու աշխատանքը ճանաչվեց անբավարար:

Շրջանում որոշակի քայլեր են արվում դեմոկրատիայի և հրապարակայնության ընդլայնման, աշխատավորներին արտադրության կառավարմանը մասնակից դարձնելու համար: Այս առումով ուշագրավ է շրջկոմի բյուրոյի նախաձեռնությամբ արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում լայն հրապարակայնության պայմաններում աշխատավորական կոլեկտիվների ղեկավարներ առաջ քաշելու ռեզերվի թեկնածությունների քննարկումը: Բացի այդ, դեմոկրատական հիմունքներով, փակ քվեարկությամբ են անցկացվել

*ՀՈՎԱԿԻՄՅԱՆ ՂԱԶԱՐՈՍ ԳԱՌՆԻԿԻ— «Կուսակցական խոսք» հանդեսի պատասխանատու քարտուղար:*

Սպանդարյանի մանրման-տեսակավորման գործարանի դիրեկտորի, № 7 երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի գլխավոր ինժեների և այլ ձեռնարկությունների ղեկավարների ընտրությունները: Հաճախակի են դարձել կուսշրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի անդամների հանդիպումները աշխատավորական կոլեկտիվներում ու թաղամասերում:

Այս ամենը նպաստել է մարդկային գործոնի ակտիվացմանը և՛ հասարակական կյանքում, և՛ արտադրության ոլորտում: Բարձրացել են աշխատավորական կոլեկտիվների շահագրգռությունն ու պատասխանատվությունը վերակառուցման կուրսի իրականացման նկատմամբ: Դա իր արտահայտությունն է գտել մարդկանց կոնկրետ գործերում. անցյալ տարվա 11 ամսվա տվյալներով շրջանի արդյունաբերությունն զգալիորեն գերակատարել է պետական առաջադրանքները, արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի տեմպերը կազմել են 11,3, աշխատանքի արտադրողականությանը՝ 8 տոկոս: Իրենց առաջադրանքները հաջողությամբ են կատարել տրանսպորտային կազմակերպությունները, շահագործման են հանձնվել ծրագրով նախատեսված բոլոր դպրոցական և նախադպրոցական հիմնարկների օբյեկտները: Շրջանի էկոնոմիկայում ավելի լայնորեն են օգտագործվում աճի ինտենսիվ գործոնները, գիտատեխնիկական նվաճումները: Այսպիսով, դրական միտումները նկատելի են: Տնտեսական և սոցիալական ոլորտներում անցած երկու տարում տեղի են ունեցել որոշակի դրական տեղաշարժեր, բարելավվել է արտադրանքի որակը, ամրապնդվել կարգապահությունը: Սակայն այդ պրոցեսը դեռևս կայուն բնույթ չի կրում:

— Ձեռք բերվածը,—ասաց զեկուցողը,— ոչ մի կերպ չի կարելի բավարար համարել: Կուսշրջկոմի ձեռնարկած միջոցները, տեղերում կատարվող աշխատանքը քիչ են նպաստում ծագած պրոբլեմների լուծմանը: Շրջանային կուսակցական կազմակերպության աշխատանքի վերակառուցման դանդաղ ընթացքի համար պատասխանատվությունն առաջին հերթին ընկնում է շրջկոմի քարտուղարներ Ա. Գեղամյանի, Է. Քոչարյանի, Ա. Պետրոսյանի, ինչպես նաև բյուրոյի անդամ, շրջսովետի գործկոմի նախագահ Ռ. Արևշատյանի վրա: Մեզ լիովին չէ, որ հաջողվել է առանձնացնել շրջանային կուսկազմակերպության աշխատանքի առաջնային ուղղությունները:

ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՑՈՒՄԸ լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման դյուրին գործ չէ: Այն կուսկազմակերպություններից պահանջում է ստեղծագործական մոտեցում, նախաձեռնություն, մարդկանց հետ տարվող աշխատանքի, մասնավորապես, տնտեսագիտական ուսուցման արմատական բարելավում: Պլենումը լուրջ ուշադրություն նվիրեց տնտեսական ռեֆորմի հարցերին: Եվ դա միանգամայն օրինաչափ էր: Չէ որ շրջանի 25 ձեռնարկություններ ընթացիկ տարվա սկզբից անցել են տնտեսավարման նոր պայմաններին: Նրանք նախապատրաստական որոշ աշխատանք կատարել են: Թե այն որքանով է արդյունավետ, ցույց կտան առաջիկա ամիսները: Համենայն դեպս, կուսշրջկոմի կատարած ուսումնասիրությունները վկայում են, որ վիճակը բավարար համարել չի կարելի: Շրջկոմի բյուրոյում վերլուծվել են տնաշինական կոմբինատի և ապրանքային ամրանների կենտրոնացված պատրաստման գործարանի կուսբյուրոների ու տնտեսական ղեկավարների գործունեությունը՝ կոլեկտիվներին տնտեսավարման նոր պայմաններում աշխատանքի փոխադրելու ասպարեզում: Պատկերը մխիթարական չէ. հիշյալ ձեռնարկություններում չկա ֆինանսական վիճակի ամբողջական վերլուծություն, բացակայում է հստակությունը տնտեսական խրախուսման, արտադրական և սոցիալական նպատակների համար անհրաժեշտ ֆոնդերի կազմավորման գործում:

Այդ ամենը, ցավոք, շրջկոմին հայտնի է դարձել միայն նախապատրաստման փուլի վերջին օրերին: Եվ, ինչպես նշվեց պլենումում, կուսշրջկոմի բաժինները (վարիչներ՝ Ռ. Նազարյան, Վ. Անդրեասյան, Է. Սողոմոնյան) հաճախ են հանդես գալիս միայն փաստերն արձանագրողի դերում: Նման իրողության պատճառը, արդյոք, ա՞յն չէ, որ շրջկոմի ապարատի աշխատողները դարձյալ շատ ժամանակ են հատկացնում զանազան գրություններ, փաստաթղթեր կազմելուն, իսկ տեղերում մարդկանց հետ, կուսկազմակերպությունների հետ կենդանի աշխատանք կատարելու քիչ ժամանակ է մնում: Իր ելույթում այդ միտքն արտահայտեց նաև հանրապետական կլինիկական հիվանդանոցի գլխավոր բժիշկ Յու. Բաբինյանը. «Ժողովների, նիստերի քանակը նվազեցնելու փոխարեն աճում է, ավելանում են նաև զանազան



ստուգումները, որոնք չափազանց շատ ժամանակ են խլում՝ ի վնաս կենդանի, գործնական աշխատանքի»:

Պլենումում քննադատական խիստ խոսք ասվեց տրիկոտաժի № 1 միավորման և դեկորատիվ գործվածքեղենի ֆաբրիկայի կուսբյուրոների հասցեին: Եվ ահա թե ինչու: Մեկ տարի է, ինչ այդ ձեռնարկությունները աշխատում են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: Ինչպիսի՞ք են արդյունքները: Մեղմ ասած, մտահոգության տեղիք են տալիս: Այն դեպքում, երբ աշխատավորական կոլեկտիվներին լայն իրավունքներ են տրված և վերացված են նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը կաշկանդող սահմանափակումները, հիշյալ ձեռնարկություններում աշխատանքի վարձատրման հարցերին մոտեցել են ձևականորեն, առանց էապես բարելավելու արտադրության կազմակերպումը: Այդ խնդիրները լուծելու գործում հարկ եղած հետևողականություն չի ցուցաբերել կուսշրջկոմի բյուրոյի անդամ, տրիկոտաժի № 1 միավորման գլխավոր դիրեկտոր Ռ. Բեկիրսկայան:

Մյուս կողմից թվում էր, թե հիշյալ երկու ձեռնարկությունների կուսկազմակերպությունների գործունեությունը պետք է գտնվեր շրջկոմի բյուրոյի ուշադրության կենտրոնում: Սակայն այդպես չի եղել: Ավելին, նոր պայմաններին անցնելուց գրեթե մեկ տարի հետո, շրջկոմի բյուրոյի նիստում պարզվել է, որ այս ձեռնարկություններում, հատկապես դեկորատիվ գործվածքեղենի ֆաբրիկայում, տնտեսագիտական աշխատանքը չի վերակառուցվել, տնտհաշվարկային եղանակները չեն հասցվել ստորին օղակներին, նյութական խրախուսումը չի նպատակամղված վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը: Այդ կարևորագույն գործից իրենց հեռու են պահում սկզբնական կուսկազմակերպությունները:

Միաժամանակ պլենումում նշվեց, որ տնտեսավարման նոր պայմաններին նախապատրաստված անցմանը անհրաժեշտ չափով չեն օգնում հանրապետության ավտոտրանսպորտի, շինարարության, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունները, պետագրոարդը, որոնք իրենց ենթակա ձեռնարկությունները ժամանակին չեն ապահովել նորմատիվային և այլ կարևոր փաստաթղթերով:

— Տնտեսական ռեֆորմի իրականացումը,— իր ելույթում ասաց հաշվողական տեխնիկայի և ինֆորմատիկայի հայկական գիտաարտադրական միավորման դիրեկտոր Կ. Մելիքյանը,—հանդիպում է մի շարք խոչընդոտների հատկապես մինիստրությունների բյուրոկրատական ապարատի կողմից, մի օղակ, որը չի ցանկանում զիջել իր դիրքերը: Պլանավորման, կապիտալ ներդրումների ծավալների և այլ հարցերում սահմանափակվում, երբեմն լիովին խախտվում է ձեռնարկության ինքնուրույնության իրավունքը:

Տնտեսավարման նոր պայմաններին նախապատրաստվելու գործում հիմնական թերություններից մեկը ղեկավարների, մասնագետների, բանվորների տնտեսագիտական ուսուցման ոչ բավարար կազմակերպումն է: Ձեռնարկություններում շատերը չգիտեն, թե լրիվ տնտհաշվարկն ու ինքնաֆինանսավորումը ինչով են տարբերվում մինչև այժմ գործող պայմաններից, բանվորները, նաև որոշ ղեկավարներ, տեղյակ չեն, թե շահույթից ինչ ֆոնդեր են գոյանում: Դա հետևանք է այն բանի, որ բազմաթիվ կուսկազմակերպություններ, շրջկոմի բաժինները հարկ եղած ուշադրություն չեն նվիրում տնտեսագիտական ուսուցմանը: Եթե մարդիկ ծանոթ չեն ու չեն տիրապետում ղեկավարման նոր եղանակներին, ապա ղեկավարման վարչական ձևերից տնտեսագիտական լծակներին անցնելու, ինքնակառավարմանը աշխատավորների լայն ներգրավման մասին խոսելն ավելորդ է:

Չափազանց կարևոր է մարդկանց սովորեցնել հաջողությամբ աշխատել նոր պայմաններում, հասնել նրան, որ յուրաքանչյուրը լավ գիտենա, թե ինչ է պահանջվում իրենից, ինչպիսի խնդիր է լուծում կոլեկտիվը:

— Այս առումով,—իր ելույթում ասաց «Անի» գիտաարտադրական միավորման բանվորուհի, կուսշրջկոմի բյուրոյի անդամ Ա. Հարությունյանը,—մեր ձեռնարկությունում որոշակի աշխատանք կատարվել է: Հուսադրող են նաև արտադրանքի որակի բարձրացման նպատակով իրականացվող միջոցառումները: Արագացման կուրսի պահանջներից ելնելով, կազմակերպվել է երկհերթ աշխատանք, բայց մինչև օրս չի լուծվել հասարակական տրանսպորտի և մանկապարտեզի աշխատանքը նոր պայմաններին համապատասխանեցնելու հարցը:

— Շրջկոմի բյուրոն,— նշեց զեկուցողը,— գտնում է, որ շրջանի կուսկազմակերպությունում վերակառուցումն անհրաժեշտ թափ կստանա միայն այն դեպքում, երբ բոլոր կադրերը նկատելիորեն կբարձրացնեն իրենց տնտեսագիտական գիտելիք-

ների մակարդակը։ Տնտեսական ռեֆորմի հիմունքների խոր յուրացմանը պետք է ծառայեցնել ուսուցման բոլոր ձևերը, կադրերի վերապատրաստման ամբողջ համակարգը, դրանով իսկ լավ նախադրյալներ ստեղծել տնտեսագիտական պարտուսին անցնելու համար։

Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այս գործում մտածված, սիստեմատիկ աշխատանք չկա։ Ձեռնարկությունների տնտեսական ու կուսակցական ղեկավարների համար դեռևս պրակտիկա չի դարձել բանվորների, մասնագետների, միջին օղակի հրամկազմի հետ բացատրական զրույցների անցկացումը, ռեզերվների արդյունավետ օգտագործման շուրջ երկխոսություն վարելը։

Շրջկոմն իր հերթին չի կարողացել կազմակերպել տարբեր օղակների աշխատողների տարբերակված ուսուցումը՝ տնտեսավարման նոր սկզբունքների հարցերի շուրջ, հմտորեն գլխավորել այդ գործը և հասնել այն բանին, որ կուսկազմակերպությունները ամենայն լրջությամբ զբաղվեն կոմունիստների, բոլոր աշխատավորների ուսուցմամբ։

ՄԱՇՏՈՑԻ ՇՐՋԱՆՈՒՄ ՆԵՐԿԱՅՈՒՄՍ իրականացվում է Երևանի բնակարանային շինարարության կեսից ավելին։ Առաջիկայում այդ ցուցանիշն ավելի է աճելու։ Հետևապես, ավելի է մեծանալու շրջանի շինմոնտաժային կազմակերպությունների կոմունիստների, կուսշրջկոմի, նրա բյուրոյի պատասխանատվությունը մայրաքաղաքում այնպիսի մի սուր սոցիալական պրոբլեմի լուծման հարցում, ինչպիսին մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով ապահովելն է։ Այս խնդրի լրջությունը, անշուշտ, գիտակցում են շատերը և քիչ ջանքեր չեն գործադրում շինմոնտաժային կոլեկտիվների աշխատանքն արմատապես վերակառուցելու, շինարարների աշխատանքի, հանգստի, սննդի պայմանները բարելավելու համար։ Այդ հարցերը բազմիցս քննարկվել են կուսշրջկոմի պլենումներում, շրջկոմի բյուրոյի նիստերում, ձեռնարկվել են միջոցառումներ։ Սակայն որոշումներից շատերը մնացել են թղթի վրա, ամենուրեք չէ, որ ամրապնդվել են պրակտիկ գործերով։ Հետևանքն ավելի քան տխուր է՝ շինմոնտաժային աշխատանքների 11 ամսվա պլանը կատարվել է 95, հիմնական ֆոնդերի գործարկմանը՝ միայն 29,7 տոկոսով, ձախողվել է նաև բնակելի տարածության հանձնման առաջադրանքի կատարումը։

Այս ամենի պատճառը, ինչպես նշվեց պլենումում, նախ և առաջ շինարարական արտադրության կազմակերպման ցածր մակարդակն է, կուսկազմակերպությունների թույլ աշխատանքը։ Չափազանց դանդաղում է ճյուղի փոխադրումը տնտեսավարման նոր պայմաններին։ Վիճակը հատկապես տագնապալի է «Վերհանշին» տրեստում, որը ոչ միայն չի կատարում պլանային առաջադրանքները, այլև նախորդ տարվա համեմատությամբ զիջել է իր դիրքերը։ Շինարարական արտադրության ղեկավարման գործում գոյություն ունեցող թերությունների հետևանքով տրեստի կոլեկտիվը (կառավարիչ՝ Ռ. Աբրահամյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Ս. Թութունջյան) 4,2 տոկոսով պակաս շինմոնտաժային աշխատանքներ է կատարել, քան նախորդ տարում. Տրեստի և կուսբյուրոյի ղեկավարությունն ի վիճակի չեղավ լիարժեք երկհերթ աշխատանք կազմակերպել կառույցներում, նույնիսկ շատ կարևոր օբյեկտներում, թեև երեք հերթի աշխատանքի կազմակերպման հարցը ևս վաղուց է հասունացել։

Ստեղծված վիճակը մեծապես պայմանավորված է տրեստում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության ուղղությամբ տարվող ոչ բավարար աշխատանքով։ Այսպես, 1986—1987 թթ. տրեստի № 73 շինմոնտաժային վարչությունում փոխվել է չորս պետ. ընդ որում, առաջադրանքները թերակատարող պետերին փոխարինում են կարևոր կառույցների հանձնումը ձախողած ղեկավարներ։ Վերջերս հիշյալ վարչության պետ է նշանակվել ընդամենը երեք տարվա աշխատանքի փորձ և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող անձ։ Նույն վարչությունում հիշյալ ժամանակամիջոցում փոխվել է հինգ գլխավոր ինժեներ։ Հինգ գլխավոր ինժեներ էլ փոխվել է շինարարական իրերի կոմբինատում, իսկ տրեստում 1986 թվականից՝ չորս գլխավոր ինժեներ։ Նորաստեղծ հարդարման վարչության ղեկավարությունը ևս վստահվել է միջնակարգ մասնագիտական կրթությամբ անձնավորության։

Տրեստում ստեղծված նման վիճակի համար մեղավոր է նաև կուսշրջկոմի բյուրոն, որն անհրաժեշտ պահանջկոտություն չի ցուցաբերել իր իսկ ընդունած որոշումների կատարման նկատմամբ։



Մաշտոցի շրջանը մայրաքաղաքում աչքի է ընկնում ոչ միայն վիթխարի բնակելի շինարարությամբ, այլև, հետաքրքիր զուգադիպություն, քանդման ենթակա բնակելի շենքերի քանակությամբ։ Ինչպես հայտնի է, տասնամյակներ առաջ Աջափնյակում կառուցված բնակելի շատ շենքեր ներկայումս վթարային վիճակում են։ Դրանք, բնակիչներին բնակարաններով ապահովելուց հետո, քանդվում են։ Սակայն բյուրոկրատական քաշքշուկների պատճառով որոշ շենքերի քանդման աշխատանքները երբեմն ավելի երկար են տևում... քան նորերի կառուցման ժամկետները։ Այս և այլ հարցերում անհրաժեշտ նախաձեռնություն ու ճկունություն հանդես չի բերում շրջսովետի գործկոմի նախագահը, նրա տեղակալներ Ի. Զաքարյանը, Ժ. Օհանջանյանը, Դ. Մելքոնյանը։ Սոցիալական արդարության սկզբունքի լուրջ խախտումներ են կատարվում բնակարանների բաշխման հարցում. աշխատավորներից բազմաթիվ նամակներ ու ահազանգեր են ստացվում գործկոմի ու նրա ստորաբաժանումների, պաշտոնատար անձանց, ԲՇՏ-ների ոչ ճիշտ գործողությունների, բյուրոկրատիզմի, բնակիչների հոգսերի ու օրինական պահանջների անտեսման, բարեկարգման, սանիտարական մաքրության աշխատանքների անբավարար վիճակի վերաբերյալ։

Շրջսովետի գործկոմի նախագահ Ռ. Արևշատյանը, ընդունելով զեկուցման մեջ գործկոմի հասցեին ուղղված քննադատությունը, նշեց, որ, իրոք, վերակառուցումը խիստ դանդաղ է ընթանում։

— Աշխատավորները վերակառուցման ընթացքի մասին դատում են մեր կոնկրետ գործերով,— շարունակեց նա,— շրջանային մարմինների, ԲՇՏ-ների աշխատանքով, քաշքշուկի վերացումով, տարիներ շարունակ չլուծված պրոբլեմները լուծված տեսնելով։ Ցավոք, նման դրական տեղաշարժերը աննկատ են։ Նույնը կարելի է ասել վթարային շենքերի քանդման մասին։ Այդ սուր հարցը ձգձգելու գործում մեզ հետ միասին պակաս մեղք չունեն քաղաքային մարմինները։ Հաջորդ ցավոտ հարցը շենքերի անբավարար ջրամատակարարումն ու ջեռուցումն է։ Այդ աշխատանքով զբաղվում են մի քանի կազմակերպություններ, որոնց ավելի շատ հետաքրքրում է գործի ֆինանսական կողմը, քան բնակիչների արդարացի պահանջների իրական բավարարումը։ Առաջարկում եմ այդ աշխատանքը կենտրոնացնել մի կազմակերպությունում, որը և պատասխանատու լինի բնակիչների առջև։

Պլենումի մասնակիցները հանգամանորեն արծարծեցին վերակառուցման կուրսի իրականացման համար վճռական նշանակություն ունեցող մի այնպիսի կարևոր պրոբլեմ, ինչպիսին որոշումների կատարման ապահովումն է։ Ցավով նշվեց, որ նախկինի նման, հիմա էլ ավելի եռանդ ու ակտիվություն ներդրվում է բյուրոյի կամ պլենումի հարցերի նախապատրաստմանը, որոշման ընդունմանը։ Իսկ դրանից հետո բոլորը կարծես հանգիստ վիճակ են ապրում, տեղի է ունենում արգելակում։ Իսկ չէ՞ որ հենց դրանից հետո է, որ պետք է սկսվեն ակտիվ և կոնկրետ գործելու ժամանակը, որոշման կատարման կենդանի կազմակերպումը։

Հանրակրթական դպրոցի և պրոֆտեխկրթության ռեֆորմի մասին վերջին երկու տարում շրջկոմի բյուրոն ընդունել է հինգ, շրջսովետի գործկոմը՝ յոթ որոշում։ Բայց այդ 12 որոշումներից ոչ մեկը ամբողջ ծավալով չի կատարվել։ Իսկ նման անհանդուրժելի մոտեցման համար ոչ մեկը կուսակցական պատասխանատվության չի ենթարկվել։ Իր ելույթում նմանօրինակ փաստ վկայակոչեց նաև № 138 դպրոցի դիրեկտոր Լ. Մալխասյանը. շրջկոմի բյուրոյի որոշմամբ դպրոցի շեֆ է նշանակվել մի ձեռնարկություն, ապա՝ մեկ ուրիշը, երրորդը։ Այդ որոշումներից հետո շեֆական աշխատանքը բարելավվելու փոխարեն ավելի է վատացել։

Արագացման կուրսի հիմնական լծակներից մեկը գիտության նվաճումների լայն արմատավորումն է, գիտության և արտադրության կապի հետագա ամրապնդումը։ Անդրադառնալով այս հարցերին՝ ֆիզիկայի ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղարի տեղակալ Ծ. Ավագյանը նշեց, որ կուսշրջկոմը անհրաժեշտ նախաձեռնություն ու հետևողականություն հանդես բերելու դեպքում կարող է զգալիորեն նպաստել կիրառական գիտության և արտադրության սերտացմանը։ Ինստիտուտի կոլեկտիվը, շարունակեց նա, ներկայումս այնպիսի աշխատանքներ է իրականացնում, որոնք առաջիկայում անպայման կարժանանան համընդհանուր ճանաչման։

Պլենումում կուսշրջկոմի բյուրոյի հաշվետվության քննարկմանը մասնակցեց յոթ կոմունիստ։ Եթե նկատի ունենանք, որ նրանցից երկուսը կուսշրջկոմի բյուրոյի անդամ են, այսինքն՝ նույն զեկուցման կազմման անմիջական մասնակից, ապա հաշվետվության շուրջը, փաստորեն, մտքեր փոխանակեցին «դրսից» միայն հինգ ընկերներ։ Քիչ չէ՞, արդյոք, դա։ Այս փաստն, ինքնին, չի՞ հիշեցնում ձևամոլության,

անցկացվող միջոցառումները միայն նշելու մասին: Դա այն պլենումն էր, ուր պետք է հնարավորություն տրվեր ավելի մեծ թվով շարքային կոմունիստների՝ իրենց խոսքն ասելու վերակառուցման ընթացքի, այն ղեկավարելու գործում շրջկոմի բյուրոյի աշխատանքի, նրա ոճի մասին, հանդես գալու գործնական առաջարկներով: Դա առավել ևս անհրաժեշտ էր, քանի որ մինչև պլենումը վերակառուցման ընթացքի և նրա ղեկավարման մակարդակի վերաբերյալ շրջկոմը հարցաթերթիկներով չէր դիմել կոմունիստներին, աշխատավորական կոլեկտիվներին, մի բան, որն ընդլայնվող հրապարակայնության և դեմոկրատիայի ներկա պայմաններում ավելի ու ավելի շատ է կիրառվում կուսակցական կազմակերպություններում: Եվ պլենումում միանգամայն տեղին հնչեց այն իրավացի միտքը, որ գոյություն ունեցող թերությունների, չլուծված պրոբլեմների համար պետք էր ավելի սուր քննադատություն ծավալել շրջանի ղեկավարների, քաղաքային մարմինների հասցեին:

Պլենումի աշխատանքներին մասնակցում էր և ելույթ ունեցավ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ, Երքաղկոմի առաջին քարտուղար Լ. Սահակյանը:

Մաշտոցի կուսշրջկոմի պլենումում բյուրոյի հաշվետվության քննարկումը, անշուշտ, նոր ազդակ կհաղորդի երիտասարդ շրջանի կուսակցական կազմակերպության գործունեությանը, ղեկավարման քաղաքական մեթոդներին տիրապետելու պրոցեսին, կնպաստի կոմունիստների ավանգարդային դերի բարձրացմանը, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացմանը, համամիութենական կուսակցական կոնֆերանսի արժանավայել դիմավորմանը:

**Դ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ**

---

# ԵՐԲ ՀԱՐԳԻ Է ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

ԱՐՓԱՅԻ ՁԱԽԱՓՆՅԱ ԸՆԴԱՐՁԱԿ լեռնաստանները դատարկվում էին: Բնակիչները վաղուց լքել են Գանձակ, Գնիշիկ և Բոլորաբերդ գյուղերը, ուր մամռոտել են վերջին արահետները: Վտանգի տակ էր այս տարածքի ամենախոշոր՝ Խաչիկ գյուղը, ուր 1930 թվականից հետո ոչ մի տուն չի կառուցվել, եղած կավաշեն տներն էլ քայքայման վտանգի տակ են: Եթե Խաչիկն էլ դատարկվեր, մեր պատմական բազմաթիվ բնակավայրերի նման միայն հուշարձանները կվկայեին, որ Արփայի ձախափին Հայաստան է եղել:

Վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել Խաչիկ գյուղի արտահոսքը կանխելու համար: Կառուցվել են ջրհան կայան, ճանապարհ, մանկապարտեզ, արդյունաբերական ձեռնարկության մասնաճյուղ, կենցաղի տուն: Երկրորդ տարին է, ինչ նախկին կավաշեն խրճիթների փոխարեն մարդիկ սկսել են քարե տներ կառուցել: Կառուցվում են նաև պետական միջոցներով, արդեն շահագործման է հանձնվել չորս տուն՝ յուրաքանչյուրը երկու բնակարանով, այս տարի կկառուցվի ևս վեցը: Նախագծվում են ակումբը և գազամուղը:

Կուսակցության Եղեգնաձորի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Թարվերդյանի գրասեղանին նախկին գնիշիկցի 30 ընտանիքների ցուցակն է՝ մոտ 150 մարդ, որոնք ցանկություն են հայտնել վերադառնալ հայրենի գյուղ, եթե այնտեղ կուլտուր-կենցաղային բավարար պայմաններ ստեղծվեն:

Գնիշիկի համար արդեն կազմվել է մեծ նախագիծ. բնակարաններ կկառուցվեն 190 ընտանիքի համար, երեք տուն արդեն պատրաստ է, չորսը կառուցվում է, սկսվել է նաև ճանապարհի շինարարությունը: Որոշվել է դատարկված մյուս երկու գյուղերը՝ Գանձակն ու Բոլորաբերդը, դարձնել այգեգործական տնտեսություններ:

Զրուցեցի նաև մի քանի եղեգնաձորցիների հետ: Շատերը, հաշվի առնելով տարիների փորձը, թերահավատությամբ են վերաբերվում ծրագրերին: Սակայն կուսշրջկոմի առաջին քարտուղարը համոզված է, որ այդ նախագծերը կիրականանան և Արփայի ձախափնյա տարածքը կմնա որպես ոչ թե հուշարձանների, այլ բնակելի Հայաստան: Բնակչության արտահոսքը դեռևս պրոբլեմ է մնում շրջանի մի շարք գյուղերի համար: Դա տասնամյակների տնտեսական սխալ քաղաքականության հետևանքներից է, որոնք նույնպես պետք է շտկի վերակառուցման կուրսը: Այդ կուրսի

ԴԱՆԻԵԼՅԱՆ ՄԱՎՐ ՍԻՐԱԿԱՆԻ— *ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ:*



անցած երկուսուկես տարում զգալի տեղաշարժ է կատարվել և՛ անասնապահության ու բուսաբուծության, և՛ շինարարության ու մարդկանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, և՛ բազմաթիվ այլ բնագավառներում:

Սակայն վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին կուսշրջկոմի բյուրոյի հաշվետվությունը, որով հանդես եկավ շրջկոմի առաջին քարտուղար Ս. Թարվերդյանը, ամբողջությամբ կառուցված էր սուր քննադատության ոգով, իսկ դրականի մասին միայն թռուցիկ նշումներ կային: Տպավորություններս ամբողջացնելու համար պլենումից առաջ ու հետո եղա շրջանի մի քանի գյուղերում: Արենիում սոցիալ-կուլտուրական շինարարության շնորհիվ գրեթե կանխվել է բնակչության արտահոսքը: Վերջին երկու տարում նյութական եկամուտների աճի հուսալի միջոց է դարձել աշխատանքի կապալային եղանակը: Տնտեսության կուսբյուրոյի քարտուղար Աշոտ Աթանեսյանն ասում է, որ անհատական կապալի շնորհիվ կայուն վերելքի ուղի է բռնել անասնապահությունը: Կովերի նույն գլխաքանակի պայմաններում տարեկան 8—10 տոկոսով աճում է կաթի, 5—8 տոկոսով՝ մսի արտադրությունը: Երկու տարի է, ինչ օղակային կապալ է արմատավորվել բուսաբուծության բնագավառում: Դրա շնորհիվ օրինակ, ճակնդեղի հեկտարի միջին բերքատվությունը 350-ից հասել է 700 ցենտների: Բարձրացել է նաև ծխախոտի, հացահատիկի բերքատվությունը:

Մի շարք արգելքներ են հաղթահարվել շինարարության բնագավառում: Արտահոսքի պատճառներից է եղել այն, որ անող ընտանիքներին հողամաս չեն տրամադրել բնակարան կառուցելու համար: Վերջին տարիներին շտկվել է այդ գործը, և 120 ընտանիք արդեն տուն է կառուցել, շուտով կկառուցի ևս 30-ը:

Գյուղերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի բացումը նպաստել է բնակչության արտահոսքի կանխմանը, սակայն միավորումների ղեկավարները քիչ ուշադրություն են դարձնում աշխատավորների սոցիալ-տնտեսական պայմանների բարելավմանը: Օրինակ, Արենիի տնտեսությունը ծախսել է 256 հազար ռուբլի և կառուցել 136 տեղանոց մանկապարտեզ: Երբ առաջացավ գյուղում արտադրամիավորման մասնաճյուղ բացելու հարցը, մանկապարտեզի շենքը տրամադրեցին նրան և պայմանագիր կնքեցին, որ հետագայում միավորումը մանկապարտեզ կառուցի և՛ մասնաճյուղի, և՛ տնտեսության համար: Հիմա ժամկետը լրացել է, նախագծերը պատրաստ են, բայց չեն կառուցում՝ պատճառաբանելով, որ տնտհաշվարկի պայմաններում դա հնարավոր չէ: Այդ մասին նշվեց նաև կուսշրջկոմի պլենումում:

— Շրջսովետը համարձակ չի գործել,— իր ելույթում ասաց գործկոմի նախագահ Մելանյա Դովլաթյանը,— գյուղերում բացված շատ մասնաճյուղեր աշխատում են օգուտով, սակայն կուտակված միջոցները տնօրինում են միավորումների ղեկավարները և հատկացումներ չեն կատարում մասնաճյուղերի սոցիալ-կուլտուրական պայմանները բարելավելու համար, չեն կառուցում կենցաղսպասարկման օբյեկտներ, մսուր-մանկապարտեզներ, իսկ շրջսովետը չի կարողացել ինչպես հարկն է լուծել այդ հարցերը:

— Կախման մեջ գտնվելով գլխամասային գործարաններից ու միավորումներից,— ասված է շրջկոմի բյուրոյի հաշվետվության մեջ,— մասնաճյուղերը ինքնուրույն ոչինչ չեն կարողանում իրականացնել, ավելին՝ հաճախ քմահաճ վերաբերմունք է ցուցաբերվում արտադրության վերակառուցման, տեսականու ընդլայնման և, որ առավել կարևոր է, աշխատավորության համար բնակարանային, սոցիալ-կենցաղային և հանգստի պայմանների բարելավման նկատմամբ:

Քարագլուխ գյուղում մենք տեսանք նորակառույց դպրոցը՝ 392 աշակերտական տեղով, 500 համարով ավտոմատ հեռախոսակայան: Կառուցվել են նաև կենցաղի տներ, ընթացքի մեջ է մսուր-մանկապարտեզի շինարարությունը: Ձեռքբերումների թվարկումը կարելի է շարունակել: Սակայն տնտեսության կուսկոմիտեի քարտուղար Ֆ. Հակոբյանին ավելի արմատական և ցավոտ հարցեր են հուզում, որոնց մասին պատմեց կուսշրջկոմի պլենումում:

— Երիտասարդությանը հայրենի գյուղում հիմնավորելու համար,— ասաց նա,— կարևոր նշանակություն ունեցավ այն, որ աշխատանքի տեղ բացեցին աղջիկների համար: Սակայն այդ մասին պետք է ավելի խորը մտածեին ղեկավար մարմիններն ու պլանավորող կազմակերպությունները, հարկ էր անել սոցիոլոգիական հաշվարկներ: Աղջիկներն ամրապնդվեցին գյուղում, իսկ նրանց հասակակից տղաները գնացին տարբեր վայրերում աշխատանք որոնելու: Նրանք միասին են անցկացրել իրենց մանկությունը, աշակերտական տարիները և ահա հասունանալուց հետո շատ անմիտ

կերպով «պլանավորվեց» նրանց ճակատագիրը: Ինչպե՞ս պետք է ընտանիք կազմեն այդ աղջիկները: Նոր մտածելակերպը ենթադրում է նորովի մոտենալ նաև մեր պրոբլեմներին: Ի՞նչ անուն տալ նրան, երբ տասնյակ հազարներ են ծախսել Սալլիի տեղամասում բաղնիք կառուցել, հետո պարզվել է, որ ջուր չկա, և տարիներ շարունակ անգործության մատնված բաղնիքը մամռոտվում է: Որոշում ընդունողը, նախագծողը չի՞ իմացել, որ բաղնիքին ջուր է պետք:

Սա եզակի օրինակ չէ շինարարների պրակտիկայում: 1987 թվականին ավարտվել է Մալիշկայի 140 տեղանոց մանկապարտեզի կառուցումը, բայց ինչպե՞ս գործարկել, երբ այն չի ջեռուցվում, չկան ջուր և էլեկտրաէներգիա: 1986 թվականի կապիտալ ներդրումների պլանը շրջանում կատարվել է 75 տոկոսով, 1987-ը նոր առաջընթաց չբերեց, այժմ էլ վտանգի տակ են շրջկենտրոնի հյուրանոցի, Գնիշիկի բնակելի տների, Մալիշկայի և Վերնաշենի ակումբների շենքերի, Գյուլիդուզի կովանոցի շահագործման աշխատանքները:

— Պատճառն այն է,— ասված է զեկուցման մեջ,— որ այս բնագավառում կառավարման մեխանիզմը հստակ չի գործում վերից մինչև վար, այստեղ դրսևորվում է խնամառություն կադրերի, առանձնապես աշխղեկների, տեղամասերի պետերի նկատմամբ, կադրերից շատերը չեն տիրապետում ոչ միայն կառուցման արվեստին, այլև ամենահասարակ լուծումներին: Բազմիցս քննադատել ենք հանրապետական մատակարարող կազմակերպությունների և բազաների գործունեությունը, որից հետո միակ «տեղաշարժը» եղավ այն, որ ավելի վատացան ու խորացան բացասական երևույթները:

— Իսկ որո՞նք են այդ երևույթները. այն, որ ղեկավարները շատ են, սակայն ոչ մեկը, ինչպես հարկն է, տեր չի կանգնում գործին,— իր ելույթում ասաց շինարարության մինիստրության «Ջերմուկշին» տրեստի Եղեգնաձորի շարժական մեքենայացված շարասյան պետ Ս. Խուդոյանը,— պետք է դրանք միավորել շրջսովետի գործկոմի համակարգում: Այսպիսին է վիճակը. շինանյութերը ստացվում են եռամսյակի վերջին տասը օրում, որի պատճառով առաջացող գրոհայնությունը հանգեցնում է ցածրորակ աշխատանքի: Մեխանիզմների 90 տոկոսը հնացած է:

Բողոքելու շատ տեղեր կան, շատ են նաև հրամայող ղեկավարները, իսկ կատարող՝ ոչ մեկը:

— Հանրապետությունում շինարարական կազմակերպությունների կառուցվածքը սխալ է,— ասում է շրջսովետի գործկոմի նախագահի տեղակալ Ս. Հայրապետյանը,— Սիսիանի տրեստը տեղում պլանը գերակատարում է, իսկ նրա՝ այլ շրջաններում գործող ենթակա օղակները պլան չեն կատարում: Նույնը կարելի է ասել տրանսպորտային և արդյունաբերական ձեռնարկությունների մասին, որոնց միավորումների ղեկավարները նստում են Երևանում կամ Արարատում և անբավարար են ղեկավարում մասնաճյուղերը:

Իսկ ինչպե՞ս է վիճակը անասնապահության և դաշտավարության բնագավառում: Շատ տնտեսությունների ղեկավարներ փաստորեն չեն կարողանում ձերբազատվել հնացած աշխատաեղանակներից ու սովորույթներից: Շատինի, Եղեգիսի, Գյուլիդուզի, Ելփինի, Վերնաշենի պետական տնտեսություններում անասնապահությունը վարում են հնացած, ավանդական եղանակով: Տարիներ շարունակ գրեթե ոչինչ չի արվել դրա վարման կուլտուրան բարձրացնելու, տոհմային գործը բարելավելու նպատակով, որի հետևանքով խիստ ցածր է մթերատվությունը: Շրջանում կովերի միջին կաթնատվությունը 2.100 կգ է, իսկ այս տնտեսություններում՝ 1.100—1.550 կգ: Զարմանալի է, որ դրանց ղեկավարները շահագրգռություն չեն հանդես բերում ստեղծված վիճակից դուրս գալու համար: Ֆերմաներում տիրապետում է ձեռքի աշխատանքը: Տարիներ առաջ կերախոհանոցների կառուցման լայն շարժումը արդեն մարել է: Ոչինչ չի արվում հնացած արտադրամասերը վերակառուցելու համար: Ռինդի, Մալիշկայի, Եղեգիսի տնտեսություններում կերերի խրամատավորումը կատարվում է տեխնոլոգիական այնպիսի խախտումներով, որ ձմռանը դրանք փաստորեն պիտանի չեն լինում օգտագործման համար:

Դրությունը մխիթարական չէ նաև դաշտավարության ասպարեզում: 1987 թվականի հացահատիկի արտադրության պլանը չեն կատարել 18, պետությանը վաճառքի պլանը՝ վեց տնտեսություններ: Հացահատիկի հեկտարի միջին բերքատվությունը շրջանում կազմել է 12,3 ցենտներ, իսկ Վերնաշենում՝ 6, Ելփինում՝ 5,2 ցենտներ: Ինչպես ասում են, հնձել են այնքան, որքան ցանել են, իսկ առանձին տնտեսություններում այդ էլ չեն հնձել, սերմի չափ բերք չեն ստացել:



Այս ամենը, իր զեկուցման մեջ նշեց կուսշրջկոմի առաջին քարտուղարը, շրջկոմի բյուրոյի թույլ վերահսկողության հետևանք է: Դանդաղ է վերակառուցում իր աշխատանքը բյուրոյի անդամ, շրջանային ագրոարդյունաբերական միավորման խորհրդի նախագահ Ա. Խաչատրյանը:

Հետ մնալու լուրջ պատճառներից է վերակառուցման հետ առնչվող նոր աշխատաեղանակների՝ բրիգադային, օղակային, անհատական կապալի, տնտհաշվարկի անբավարար արմատավորումը: Ագրոարդի հաշվետվություններում նշված է, որ անասնապահական 51 ֆերմաներից 46-ը և դաշտավարական 63 բրիգադներից 56-ը անցել են կապալային եղանակի և տնտհաշվարկի, սակայն այս գործում շատ է ձևականությունը: Ստացվում է այնպես, որ կապալային եղանակը ներդրված է, սակայն աշխատանքի արտադրողականության ու մթերքների աճ չկա: Եղեգիսի, Ելփինի, Գետափի, Մալիշկայի պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները ոչ մի անգամ չեն անդրադարձել կապալի ներդրման հարցերին, որի պատճառով էլ նոր աշխատաեղանակը ձևական բնույթ է կրում և գրեթե արդյունք չի տալիս:

Պատկերը բոլորովին այլ է Աղավնաձորի պետական տնտեսությունում, որտեղ աշխատանքի կազմակերպման նոր եղանակների ներդրմանը մոտենում են ստեղծագործորեն: Գյուղն ապրում է բարեկեցիկ կյանքով և դրա հիմնական աղբյուրը տնտեսության աճող նյութական միջոցներն են: Եվ, երբ թվում էր, թե վերելքի ռեզերվներն այլևս սպառվել են, նվաճված են հնարավոր բոլոր բնագծերը, նոր հնարավորություններ բացահայտեց բրիգադային, օղակային և անհատական կապալը: Ահա, օրինակ, ամփոփվել են անբարենպաստ կոչվող 1987 թվականի արդյունքները: Պլանից ավելի արտադրվել և պետությանն են վաճառվել 1200 տոննա խաղող, 300 տոննա պտուղ, 55 տոննա հացահատիկ, 100 տոննա կաթ, լրացուցիչ կուտակվել է 1.500 տոննա կեր:

Աղավնաձորը կարողանում է լուծել վերակառուցման փուլում իր առջև ծառացած խնդիրները, սակայն շրջանային ու հանրապետական որոշ կազմակերպություններ թերանում են նրան օժանդակելու իրենց պարտականություններում: Այդ առթիվ պլենումում համոզիչ փաստեր բերեց տնտեսության երկարամյա դիրեկտոր, ՀԿԿ վերստուգիչ հանձնաժողովի անդամ Վ. Մաթևոսյանը:

— Ուզում ենք վերակառուցել անասնապահության բնագավառը՝ այն բրիգադայինից փոխադրելով ընտանեկան կապալի: Սակայն տարիներ շարունակ չենք կարողանում բարելավել անասնապահների աշխատանքի և հանգստի պայմանները: Մեր ուժերով կառուցել ենք կաթնատներ, ընթացքի մեջ է անասնապահի տան շինարարությունը, ձեռք ենք բերել խոտալյուրի ագրեգատներ, սակայն շրջանային ագրոարդյունաբերական միավորման մեքենայացման և էլեկտրիֆիկացման ձեռնարկությանը չեն կարողանում ներքաշել իր իսկ պարտականությունների կատարման մեջ՝ մոնտաժելու կաթի սառեցման և խոտալյուրի ագրեգատները: Մելիորատիվ աշխատանքները կատարվում են մակերեսորեն, և տնկված ծառը չի կարողանում ամուր արմատներ ձգել: Նոր հողերի յուրացումը նախագծվում է «Հայհողշիննախագիծ» ինստիտուտում: Մելիորատիվ ջոկատն այն իրականացնում է, բայց ջրագծեր չի անցկացնում: Տարիներ շարունակ բախում ենք պետագրոարդի համապատասխան վարչությունների դռները, որ ջրային ցանցերի նախագծեր պատվիրենք, սակայն գործը ձգձգվում է, և մեզ հանձնված հողատարածությունները տարիներով մնում են պապ: Ոռոգման ցանցերին վերահսկում են շրջանի ջրհան կայանների պետը, «Արաքս» ջրհան կայանների և ոռոգման համակարգերի վարչությունները, շրջանային ագրոարդյունաբերական միավորումը և ուրիշներ: Յուրաքանչյուր անգամ պոմպը միացնելը պետք է համաձայնեցնել բոլորի հետ, որը շաբաթ է խլում, իսկ բույսերը չորանում են: Մի՞թե ժամանակը չէ դրանք կենտրոնացնել շրջանային մեկ կազմակերպության մեջ:

Շրջանի տնտեսությունները ներկայումս ոռոգման ջուր են ստանում Կեչուտի ջրամբարից՝ հիմնականում եռաստիճան ջրհան կայանների միջոցով, իսկ դա թանկ է նստում և հաճախ չի հատուցվում ստացված արդյունքով:

— Այդպիսի համակարգի ստեղծումը,— իր ելույթում շարունակում է Վ. Մաթևոսյանը,— նյութական շատ մեծ վնաս է հասցրել: Ես չեմ ուզում խորանալ դրա պատճառների մեջ, սակայն պետք է ասեմ, որ վերակառուցումը պահանջում է շտկել անցյալի բոլոր սխալները: Բազմիցս բարձրացրել ենք Եղեգիս գետից ջրանցքի կառուցման հարցը, որի իրականացումը հնարավորություն կտար ոչ թե ներկայիս

նման եռաստիճան ջրհան կայանների միջոցով շատ թանկ գնով ջուր օգտագործել, այլ ինքնահոս էժան ջրով Գետափ, Աղավնաձոր, Ռինդ, Արենի, Չիվա, Ելփին, Արփի գյուղերի և շրջկենտրոնի տնտեսությունների հողատարածությունները դարձնել ոռոգելի:

Առաջարկը թվում է հրատապ և հեռանկարային, որի իրականացման նպատակահարմարության և հնարավորության մասին պետք է լրջորեն մտածեն շրջանային ու հանրապետական համապատասխան կազմակերպությունները:

. Ընդհանուր առմամբ կուսշրջկոմը, նրա բյուրոն ջանացել են քննադատության և ինքնաքննադատության, հրապարակայնության, դեմոկրատիայի խորացման մթնոլորտ ստեղծել բոլոր օղակներում, որպեսզի մարդիկ անկաշկանդ արտահայտեն իրենց կարծիքները, դրանք գրանցվեն, վերլուծվեն և ընթացք ստանան: Բայց որքա՞ն են արդյունավետ եղել այդ ջանքերը:

— Բյուրոկրատական վերաբերմունքի պատճառով մարդիկ ամենամանր հարցերով, որոնք կարող են լուծվել տեղում, դիմում են շրջանային կազմակերպություններին,— ասում է կուսշրջկոմի քարտուղար Մ. Հարությունյանը: — Պահածոների գործարանի, հասարակական սննդի և մի շարք այլ կազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների անպատասխանատվության հետևանքով չի դադարում դիմում-բողոքների հոսքը դեպի վերադաս կազմակերպություններ: Դա խոսում է այն մասին, որ նման մարդիկ իրավունք չունեն տեղ գրավելու վերակառուցման գործը ղեկավարող որևէ օղակում:

— Հաճախ ստացվում է այնպես,— ասում է կուսշրջկոմի բյուրոյի անդամ, բանվորուհի Անուշ Օհանյանը,— որ ղեկավարը գիտելիքների, կարողությունների ընդհանուր մակարդակով ցածր է լինում ենթականերից: Պարզվում է նաև, որ մինչև առաջ քաշվելը նման մարդկանց դրսևորած կազմակերպչական հատկանիշներն էլ միայն ցուցադրական են եղել: Եվ երբ քաղաքացին բողոքով դիմում է արդեն ղեկավար դարձած այդպիսի ընկերոջը, ապա նա հարցը չի լուծում, նորից դիմում, դիմում՝ վերև, ներքև և ի վերջո ստացվում է բյուրոկրատական քաշքշուկ:

— Շատ ղեկավարներ իրենք են արգելակում գործին,— ասում է կուսշրջկոմի երկրորդ քարտուղար Ե. Թադևոսյանը,— տարիներ են տևում, մինչև նրանց կարողությունները ստուգվում են աշխատանքում և, դժբախտաբար, հաճախ պարզվում է, որ շատերը պիտանի չեն այդ պաշտոնի համար: Պատճառն այն է, որ կուսշրջկոմի բյուրոն, նախքան երաշխավորելը, ինչպես հարկն է չի ուսումնասիրում իր կադրերին, պաշտոնամոլությունը երբեմն շփոթում է գործարարության, կարողությունները՝ կյանքի վերափոխմանն ի սպաս դնելու ազնիվ մղումների հետ, իսկ այդ ամենն անհետևանք չի անցնում:

— Որոշ ղեկավարներ,— իր ելույթում ասաց շրջկենտրոնի № 2 միջնակարգ դպրոցի ուսուցչուհի, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Զեմֆիրա Ավետիսյանը,— չարաշահելով իրենց պաշտոնեական դիրքը, սխալ են ընտրում և տեղաբաշխում կադրերին, և դեռահասները, տեսնելով նրանց անկարողությունը, բայց և զբաղեցրած կարևոր դիրքը, կորցնում են հավատը կյանքի, մեր չափանիշների նկատմամբ: Անբավարար է իրականացվում դպրոցական ռեֆորմը՝ վերակառուցումը ուսման մեջ: Մի կերպ դաստիարակելով՝ ստացվում է միջակ աշակերտ, դրանից էլ՝ միջակ ուսուցիչ, միջակ մասնագետ, միջակ ղեկավար, մի խոսքով՝ պատրաստում ենք միջակ մարդիկ, որոնց հետ հազիվ թե կարելի է մեծ հույսեր կապել:

Փոխվել են գաղափարաքաղաքական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին ներկայացվող պահանջները: Գրքայնությունից, շաբլոնից, վերացական դատողությունից պետք է անցնել կոնկրետ տվյալ բնագավառի մարդկանց հուզող հարցերին, բացահայտել նոր աշխատեղանակների առաջին արդյունքները և պրոպագանդել դրանք, ցույց տալ հրապարակայնության, դեմոկրատիայի խորացման նշանակությունը առօրյա կյանքում: Սակայն արվու՞մ է այդպես: Զեկուցման մեջ և ելույթներում նշվեցին, որ գաղափարաքաղաքական ու դաստիարակչական աշխատանքի հնացած ոճի ու մեթոդների առկայության պատճառով այն թյուր մտայնություն է առաջացել, որ այժմ, իբր, պակասել է այդ աշխատանքի անհրաժեշտությունը: Հավանաբար նման կարծիքի են Շատինի, Եղեգիսի, Ռինդի, Մալիշկայի, Գյուլիդուզի տնտեսությունների, շրջկոոպի, բուժմիավորման և այլ սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարներ: Եթե ոչ, ապա ի՞նչն է պատճառը, որ հենց նրանց մոտ էլ պարարտ հող է ստեղծվել անտնտեսվարության, անբարեխիղճ աշխատանքի, պետական, պլանային և աշխատանքային ցածր կարգապահության և մի շարք այլ երևույթների համար:



Այսօր հրապարակայնություն ասելով առաջին հերթին նկատի ունենք մասսայական ինֆորմացիայի միջոցները: Կուսշրջկոմի առաջին քարտուղարի զեկուցման մեջ և ելույթներում քննադատական խոսք ասվեց շրջանային «Վերելք» թերթի և ռադիոհաղորդումների խմբագրությունների հասցեին: Նրանց մոտ պակասում են սուր, քննադատական ելույթները, իսկ եղածներն էլ մնայուն հետք չեն թողնում քննադատված օբյեկտում և մարդկանց հիշողության մեջ: Շրջկոմի բյուրոյի անդամ, «Վերելք» թերթի խմբագիր Խ. Հարությունյանն իր ելույթում նշեց, որ եղած քննադատությունը դեռևս լրիվ չի արտահայտում նշված օղակների աշխատանքում տեղ գտած թերությունները: Շրջանային թերթը, օրինակ, հազվադեպ է իր էջերը տրամադրում նոր աշխատեղանակներին նվիրված տնտեսագիտական հոդվածների, պակասում են քննադատական ելույթները տնտեսությունների, ձեռնարկությունների և շրջանային այն ղեկավարների հասցեին, ովքեր խոսքով կողմ են վերակառուցմանը, բայց շարունակում են աշխատել հին ոճով:

— Խմբագրությունը չի հասել նրան,— ասաց նա,— որ բազմակողմանիորեն և խորը ընդհանրացվի վերակառուցման ասպարեզում կուսակցական, սովետական կազմակերպությունների ծավալած գործունեությունը: Թերթում հազվադեպ են հանդես գալիս ղեկավարները, դրանց թվում նաև կուսակցության շրջկոմի ու շրջսովետի գործկոմի ապարատների աշխատողները: Բայց չէ՞ որ կուսակցական, սովետական աշխատանքի փորձը ոչ ոք չի կարող ավելի լավ ներկայացնել, քան նրանք: Մասսայական ինֆորմացիայի միջոցների նկատմամբ նրանց վերաբերմունքի մեջ նույնպես պետք է մուտք գործի վերակառուցումը:

Շրջանում տիրող իրավիճակը արդյոք արտացոլվե՞ց պլենումում: Ասենք, որ այն չտարվեց հաջողությունների և նվաճումների թվարկումով, որոնց առկայությունը անվիճելի է շրջանի ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր բնագավառներում: Շրջանի աշխատավորները դրանց հասել են կուսշրջկոմի, նրա բյուրոյի՝ վերակառուցման ասպարեզում կատարած աշխատանքի շնորհիվ: Բայց և՛ զեկուցումը, և՛ ելույթները, ինչպես տեսանք, հիմնականում նվիրված էին թերությունների բացահայտմանը, հագեցած էին դիպուկ քննադատությամբ ու ինքնաքննադատությամբ:

— Պլենումին նախապատրաստվելու ընթացքում այդպիսի նպատակ էինք դրել մեր առջև. և թվում է, հասանք դրան,— զրույցի ժամանակ ասաց կուսշրջկոմի առաջին քարտուղար Ս. Թարվերդյանը:

Այո՛, պլենումը հասավ դրան: Զեկուցման մեջ հիմնականում հաղթահարվել էին ավանդական դարձած շաբլոնը, էջեր զբաղեցնող դրվատանքը, առաջավորների անհարկի թվարկումը: Տեղ-տեղ զգացվում էր ընդհանրացված քննադատություն՝ առանց կոնկրետ հասցեների, որոնց փակագծերը, ինչպես ասում են, բացեցին ելույթ ունեցողները: Հաղթահարվել էր կաշկանդվածությունը, զգացվում էր, որ հրապարակայնության, դեմոկրատիայի խորացման կուրսը բացել է մարդկանց լեզուն: Մնում է, որ կուսշրջկոմը, նրա բյուրոն, շրջանի բոլոր կոմունիստները լարեն իրենց ուժերը՝ բացահայտված արմատական թերությունները վերացնելու, աշխատանքը վերակառուցման երկրորդ փուլի պահանջների ոգով կազմակերպելու համար:

**Մ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

---

# ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է։ ԻՆՉՈ՞Ւ

ՄԱՍԻՍԻ ՇՐՋԱՆԻ ՀՈՎՏԱՇԱՏ ԳՅՈՒՂԻ պետական տնտեսությունը ոչ վաղ անցյալում իր ցուցանիշներով դուրս էր եկել առաջավոր բնագծեր։ Այդ իրողությունը վավերացված է ՀԿԿ Մասիսի շրջանային կազմակերպության 1985-ի դեկտեմբերի 14-ի կոնֆերանսին շրջկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, որտեղ «վերջին երկու տարում առաջընթացի հաստատուն ուղի» անցած տնտեսությունների թվում հիշատակվում է նաև Հովտաշատը։ Այնուհետև անասնապահական մթերքների հնգամյա պլանային առաջադրանքների կատարման առնչությամբ կրկին գովեստի խոսք է ասվում այդ տնտեսության հասցեին. «458 կիլոգրամով ավելացել է կովերի կաթնատվությունը»։ Եվ, վերջապես՝ «Կուսակցական կազմակերպություններից իրենց մարտունակությամբ աչքի են ընկնում» բառերից հետո նորից հանդիպում եմ Հովտաշատ անվանը։

Այո՛, ինչպես երևում է, եղել է ժամանակ, երբ Հովտաշատի պետական տնտեսությունը հաջողությունների իմաստով ասելիք է ունեցել։ Սակայն հաջորդ երկու տարվա ցածր արդյունքները ցույց են տալիս, որ տնտեսությունը նահանջ է ապրել։ Ինչո՞ւ։ Հարցի պատասխանը տվեց պետական տնտեսության սկզբնական կուսկազմակերպության վերջերս տեղի ունեցած ժողովը, որտեղ քննարկվում էր վերակառուցման ղեկավարման ասպարեզում տարվող աշխատանքի վերաբերյալ կուսկոմիտեի հաշվետվությունը։

Զեկուցման մեջ իրավացիորեն նշվեց, որ տնտեսության համեստ հաջողություններից նրա ղեկավարների չարդարացված ինքնահավանության ու ոգևորության հետևանքով սքողվեցին խորացող թերություններն ու բացերը, նկատվեցին դափնիների վրա ննջելու միտումներ։ «Թվում էր,— ասաց կուսկոմիտեի քարտուղար Բ. Հովհաննիսյանը,— թե 1986 թվականին պետք է ամրապնդվեին նախորդ տարվա որոշ հաջողությունները, արագացվեր և զարգացվեր վերակառուցման պրոցեսը։ Սակայն ստացվեց հակառակը։ Այլ խոսքով, կադրերի մոտ առաջացան ինքնահանգստացման ու ինքնագոհության տրամադրություններ, վերակառուցումը տեղապտույտ տվեց, թերակատարվեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքները»։

Զեկուցման մեջ նահանջը բացատրվում է կուսկոմիտեի թույլ աշխատանքով, տնտեսության դիրեկտոր Հ. Բադալյանի ու մասնագետների անսկզբունքայնությամբ ու անպատասխանատվությամբ, շրջանային մարմինների անբավարար օգնությամբ։ Կուսկոմիտեն, ինչպես հարկն է, չի կարողացել կատարելագործել ներկուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները, սկզբունքայնություն արմատավորել կադրերի մոտ, վերակառուցման կուրսի պահանջների կատարումը չի դարձել նրանց պարտքը։ Այդ ամենի հետևանքով էլ առանձին ղեկավար կադրեր, մասնագետներ և կոմունիստներ հստակ պատկերացում չունեն վերակառուցման վերաբերյալ, դրսևորում են ոչնչով չարդարացված հանգստություն այդ պրոցեսի խորացման նկատմամբ։ Կուսժողովների և կոմիտեի նիստերի օրակարգերում տեղ չեն գտել կոմունիստի բարոյական կերպարին, մարդկային գործոնի ակտիվացմանը վերաբերող հարցերը, միշտ չէ, որ ղեկավար կոմունիստի անձնական օրինակը դարձել է դաստիարակության միջոց։ Անբավարար է կոնկրետությունը կոմունիստ ղեկավարներին, կադրերին վերաբերող հարցերի քննարկման առթիվ ընդունված որոշումներում։ «Մեզ մոտ,— նշվեց զեկուցման մեջ,— կուսակցական-կազմակերպական, նույնպես և տնտեսական ղեկավարման պրակտիկ շատ հարցերում տարիներ շարունակ տիրում էին պահպանողական տրամադրությունները, իներցիան... Եվ կյանքը բերեց այն համոզման, որ պատասխանատվությունից խույս տալով, իր մեղքը ուրիշի վրա բարդելով չի կարելի արտադրություն զարգացնել։ Կա միայն մի ճշմարիտ սկզբունք՝ օբյեկտիվ գնահատել իրերի վիճակը»։

*ՍԱՔԱՆՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ՄԱԹԵՎՈՍԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի «Կուսակցական կյանք» բաժնի վարիչ, խմբագրական կոլեգիայի անդամ։*



Ի պատիվ Հովտաշատի կոմունիստների, պիտի ասել, որ կուսակցական ժողովը այդպես էլ վարվեց...

ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՏԱՐ ՃՅՈՒՂԸ անասնապահությունն է։ Այստեղ գործում է շրջանի համար եզակի կաթնային համալիր, որտեղ ամեն ինչ մեքենայացված է։ Ասել է թե՝ մարդկանց գործը դյուրին է դարձել, նրանք պիտի գոհ լինեն... Մինչդեռ լավ գործերը քիչ են, դժգոհելու առիթներն ու թերությունները՝ շատ...

Ժողովից առաջ եղա կաթնային համալիրում։ Կուսկոմիտեի քարտուղար Բ. Հովհաննիսյանը տեղեկացնում է, որ ամեն ամիս, ինչպես նաև յուրաքանչյուր եռամսյակի և տարվա վերջում ամփոփվում են սոցպարտավորությունների կատարման արդյունքները։ Առաջավոր կթվորուհիները, որ անցած տարիներին հատել են մեկ կովից 3.000 կգ կաթ ստանալու բնագիծը, 1987-ի 3.300—3.600 կգ-ը վերջնական սահման չեն համարում։ Եթե դատելու լինենք առաջավորների ցուցանիշներով, ապա կարելի է կարծել, թե կաթնային համալիրում ամեն ինչ բարեհաջող է։ Բայց, ինչպես պարզվեց նաև կուսակցական ժողովում, այստեղ կան բավականաչափ աղաղակող թերություններ և թերացումներ, լուծման սպասող շատ խնդիրներ։ Նախ նշենք, որ ավելի քան 320 տոննայով թերակատարվել է կաթի համախառն արտադրության տարեկան պլանը, ցածր է կովերի մթերատվությունը։ Վիճակը բարվոք չի եղել նաև 1986-ին. պլանից 204,5 տոննա պակաս կաթ է ստացվել, ամեն մի ցենտների ինքնարժեքը թանկացել է 5,75 ռուբլով և համախառն արտադրության գերպլանային վնասը կազմել է 185 հազար ռուբլի։ Ընդ որում վերջին երկու տարում, նախորդ տարիների համեմատությամբ, նվազել է ինչպես կաթի համախառն արտադրությունը, այնպես էլ կովերի միջին կաթնատվությունը։

Որո՞նք են թերությունների, նահանջի պատճառները։ Լճացման տարիների գործելակերպն ու հոգեբանությունը իրենց կնիքն են թողել նաև Հովտաշատի պետական տնտեսության վրա։ Այստեղ 1978-ին շահագործման հանձնվեց կաթնային համալիրը, որի շինարարության վրա ծախսվեց ավելի քան 2,3 միլիոն ռուբլի։ Այն նախատեսված էր 800 գլուխ կովի ազատ, խառը պահվածքի համար։ Մինչդեռ երկու տարվա պրակտիկան ցույց տվեց, որ այդ եղանակը չի արդարացնում. կովերի կճղակները վնասվում են, կաթը պակասում է։ Տնտեսության մարդկանց բողոքներին արձագանքող չեղավ։ Անցավ ևս երկու տարի, մինչև որ Մոսկվայից հրավիրված մասնագետները շրջանի ղեկավարներին համոզեցին խառը պահվածքի վնասակարության մեջ. չորս տարում տնտեսությունը կորցրել էր 150 գլուխ բարձր կաթնատու կով՝ կճղակային հիվանդության պատճառով։ Դրանից հետո միայն թույլ տրվեց վերակառուցել համալիրի կովանոցները և անցնել կապովի եղանակի։ Դրա համար էլ ծախսվեց 180 հազար ռուբլի, որով կարելի էր կառուցել մեկ տիպային հորթանոց, որից այժմ զուրկ է տնտեսությունը...

Սակայն համալիրի գլխին ուրիշ փորձություններ էլ եղան։ Նախ՝ մինչև այն գործարկելը հիվանդությունների պատճառով տնտեսության ֆերմայի կովերի 30 տոկոսը հանձնվել էր սպանդի։ Եվ, երբ համալիրը սկսեց գործել, հին գոմերից 200 գլուխ կովեր տեղափոխվեցին այնտեղ, բնականաբար, իրենց հին հիվանդություններով։ Այդ հանգամանքն էլ բացասաբար անդրադարձավ հոտի գլխաքանակի և կաթի արտադրության վրա։ 1978—1980-ին տնտեսությունը գնեց 1100, 1981—1984-ին՝ ևս 700 գլուխ սևաբղետ ցեղի երինջ՝ 2 մլն 98 հազար ռուբլի ընդհանուր գումարով։ Ժամանակի ընթացքում դրանց զգալի մասը ևս վարակվեց հին գոմերից եկած հիվանդությամբ և ենթարկվեց սպանդի։

Այնուհետև։ Համալիրի կառուցմամբ նախատեսված էր արու մատղաշը հանձնել Եղվարդի բտման համալիրին, իսկ էգը՝ շրջանում ստեղծվելիք երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությանը։ Բայց ի՞նչ ստացվեց. միջտնտեսային ձեռնարկությունը չստեղծվեց, իսկ Եղվարդի բտման համալիրը արու մատղաշը վերցնում է ձգձգումներով, ընտրովի եղանակով՝ որոշակի քաշի դեպքում։ Այլ խոսքով, դրանից ցածր և բարձր քաշի մատղաշները «բախտ» չեն ունենում արժանանալու եղվարդցիների բարեհաճությանը։ Մինչդեռ մատղաշի աճեցման համար համալիրում չեն նախատեսված և չկան գոմային նորմալ պայմաններ։

Ասել, թե կուսկազմակերպությունը չի զբաղվել համալիրում գործերի բարելավման հարցերով, սխալ կլինի։ Ինչպես կոմիտեի նիստերում, այնպես էլ կուսակցական ժողովներում դրանք դարձել են քննարկման առարկա, քանիցս լսվել է համալիրի պետի հաշվետվու-

թյունը: Հարցին անդրադարձել է նաև ՀԿԿ Մասիսի շրջկոմի բյուրոն: Եվ ամեն անգամ արձանագրվել են նույն թերությունները, տրվել նույն հանձնարարականները: Բայց ինչպե՞ս են կատարվել ընդունված որոշումները: Պատասխանը տվեցին կուսկոմիտեի քարտուղարը կոմիտեի հաշվետվության մեջ և մտքերի փոխանակությանը մասնակցած ժողովականները: Տողեր զեկուցումից. «Համալիրում երկու տարվա ընթացքում խոտանվել է 200 գլխից ավելի բարձր մթերատու կով: Ո՞վ է մեղավոր, եթե ոչ մասնագետներն ու համալիրի պետը: Իսկ դա մեկ տարվա հետևանք չէ: Եթե տնտեսությունում անասնապահության մեջ անհրաժեշտ սելեկցիոն աշխատանք չի տարվում, նույնպես մենք ենք մեղավոր: Այս բոլորով հանդերձ, դեռ համարձակվում ենք մեզ արդարացնել: Ես կասեի՝ դա ոչ սկզբունքային և ոչ կուսակցական մոտեցում է գործի հանդեպ»:

Իսկ ահա թե ինչ ասացին կոմունիստները: Առաջավոր կթվորուհի Մարիամ Մելքոնյանի ելույթից. «Ամբողջ ամիս աշխատում ենք, բայց փոխարինող չունենք, որպեսզի գոնե մի քանի օր հանգստանանք: Եթե կթվորների շահագրգռությունը բարձրացվի, ավելի լավ կաշխատեն»: Մեկ ուրիշ առաջավոր կթվորուհի՝ Ջելիֆ Կարապետյանը, ասես շարունակեց իր գործընկերուհու միտքը. «Ամսական ստանում եմ 120 ռուբլի»: Քիչ չէ՞ մեկ կովից տարեկան 3.000 կգ-ից ավելի կաթ ստացողի համար: Իհարկե, քիչ է: Չնայած կուսակցական ժողովում խոսվել է այս մասին, տնտեսության դիրեկցիան մատը մատին չի տալիս կթվորների վարձատրման նորմաները կարգավորելու համար:

Տնտեսության դիրեկտոր Հ. Բաղալյանի ելույթից. «Շատ ռեզերվներ չենք օգտագործում: Տարիների ընթացքում չէինք կարողանում խոտանել ցածր մթերատու անասուններ, կովերը կերը ուտում, բայց կաթ չեն տալիս: Արհեստական սերմնավորման գործը վատ է կազմակերպվում, սերմնավորող-տեխնիկ չունենք»: Թվում է՝ տարօրինակ են հնչում այս խոսքերը. ո՞վ էր դիրեկտորին խանգարում լուծելու այս կամ այն հարցը: Ահա և 1986-ի նոյեմբերի 4-ի կուսժողովում նրա արտահայտած միտքը. «Ես դժգոհ չեմ կադրերից: Կովերի ներկա կաթնատվությունը իմ կարծիքով մաքսիմում ցուցանիշ է»: Մի՞թե: Իսկ որն է եղել այդ տարվա կաթնատվության իրական ցուցանիշը՝ 2481 կիլոգրամ, պլանով նախատեսված 2.800-ի փոխարեն: Մինչդեռ տարիներ առաջ ֆերմայի կոլեկտիվը 3.000, առաջավոր կթվորները 3.200—3.300 կիլոգրամից են խոսել: Իսկ ահա թե ինչ է ասել այդ ժողովում անկուսակցական կթվորուհի Արուսյակ Խաչատրյանը. «Կաթի պակասը կթվորների պակասից է, կենսաթոշակի անցնողներին փոխարինում են անփորձ երիտասարդները, որոնք կովերը լրիվ չէին կթում»:

Այո՛, տնտեսության դիրեկտորին, մասնագետներին ոչ ոք չի խանգարում ունենալ սերմնավորող-տեխնիկ, կազմակերպել տոհմային աշխատանքը, խոտանել արդյունք չտվող, բայց կեր ծախսող կովերը, համալիրն ապահովել կթվորների բանիմաց ու կայուն կադրերով... կուսկոմիտեին էլ ոչ ոք չի խանգարում հետամուտ լինել իր իսկ ընդունած որոշումների կատարմանը, զգաստացնել կադրերին...

Վերակառուցումն իր պահանջներն է առաջադրում և որքան խորանում է այդ պրոցեսը, այնքան բարձրանում է կադրերի, մասնավորապես, ղեկավարների պատասխանատվությունը, ուժեղանում պահանջկոտությունը ինչպես ուրիշների, այնպես էլ իրենց իսկ նկատմամբ: Ցավոք, նույնը չի կարելի ասել Հովտաշատի տնտեսական ղեկավարների մասին. տպավորությունն այնպիսին է, թե վերակառուցումը նրանց չի էլ վերաբերում:

Կաթնային համալիրը, որ տնտեսության էկոնոմիկայի առաջատար տեղամասն է և եկամուտների հիմնական աղբյուրը, այսօր շատ հոգսեր ունի և դեռ հեռու է լրիվ կարողությամբ գործելուց: Հաշվարկները ցույց են տալիս, որ համալիրը իր նախագծային հզորությանը կհասնի երեք տարի հետո՝ 1991-ի վերջին: Ո՞րն է այստեղ արագացման ուղին. բարձր մթերատու երինջների ձեռքբերումը, տեղում տոհմային աշխատանքի արդյունավետ կազմակերպումը՝ մատղաշի առանձնացման ու հատուկ խնամքի և արհեստական սերմնավորման միջոցով: Սրանք հարցեր են, որոնք կարող է լուծել պետական տնտեսության ղեկավարությունը, եթե հարկ եղած եռանդ ու պատասխանատվություն ցուցաբերի...

ՀՈՂԻ ՈՒ ՋՐԻ ՎՐԱ ԿԱՏԱՐՎԱԾ ծախսումներից անհրաժեշտ հատույցի ապահովումը վերակառուցման ու արագացման պահանջներից բխող խնդիր է, որն այժմ, երբ տնտեսություններն անցնում են տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման, ավելի է կարևորվում: Մինչդեռ Հովտաշատում, ինչպես



երևաց կուսկոմիտեի քարտուղար Բ. Հովհաննիսյանի զեկուցումից, դրա համար չեն անհանգստանում: «Մենք,— ասաց նա,— դեռևս նախադրյալներ չենք ստեղծել տնտեսավարման նոր ձևի անցնելու համար: Նոր պահանջներն ու խնդիրները չպատկերացնելու պատճառով տնտեսությունում զգացվում է ինքնահանգստացման տրամադրություն»: Քարտուղարն ասածը հիմնավորեց հետևյալ փաստերով. դեռևս կա 120 հեկտար առվույտի հին, աղքատ և 80 հեկտար անմշակ տարածություն, այգետնկման համար նախատեսված 10 հեկտար հողահատվածը չի նախապատրաստվել, չի լուծվել 100 հեկտար գերխոնավ հողերի չորացման հարցը, աշխատանք չի տարվում №№ 1, 2, 4 բրիգադների 130 հեկտար հողատարածությունները ջրով ապահովելու և մելիորացնելու համար և այլն:

Կենսաթոշակառու Ա. Հովհաննիսյանն իր ելույթում ասաց. «Նախորդ տարիներին առվույտի սերմացու էինք ստանում, մեր հոգսերը հոգում էինք, դեռ ուրիշ տնտեսությունների էլ սերմացու էինք վաճառում: Իսկ հիմա դա պրոբլեմ է դարձել: Հողերը աղակալում են, եթե ամեն մի բրիգադ տարեկան 10 հեկտար աղազերծի, ապա հսկայական քանակությամբ առվույտ կստանանք: Կերի բազան չենք ամրապնդում: Անցյալում հեկտարից 48 ցենտներ հացահատիկի բերք էին ապահովում, պահեստները լիքն էին, իսկ հիմա քիչ ենք ստանում: Եվ պատահական չէ, որ տնտեսությունը վայրէջք է ապրում»:

Ահա վայրէջքի ևս մի քանի պատճառներ, որոնց մասին ժամանակին ահազանգել են կոմունիստները և որոնց մասին խոսվեց նաև կուսկոմիտեի հաշվետվության մեջ: Վերադաս կազմակերպությունները տնտեսության հեռանկարային զարգացման նկատմամբ ցուցաբերել են կամայական, ոչ սկզբունքային մոտեցում, թերագնահատելով նրա ղեկավարության կարծիքը: Վերջին տասը տարում ներդրված 2,5 մլն ռուբլին փաստորեն արդյունք չի տվել: Այսպես, 1976-ին առանց նախագծի ու նախահաշվի 90 հեկտար տարածության վրա անցկացվել է անձրևացման համակարգ, որի վրա ծախսվել է 93 հազար ռուբլի: Առաջին փորձարկումը ցույց է տվել, որ սխալ հաշվարկի հետևանքով հնարավոր չէ այն շահագործել: Երկու տարի անց 107 հեկտարի համար ստեղծվել է կիսատ-պռատ համակարգ: Ծախսվել է 87 հազար ռուբլի, սակայն սարքավորումները առանց տեղադրելու մինչև օրս էլ թափված են բաց երկնքի տակ և վերածվել են մետաղի ջարդոնի: Առավել արտառոց փաստ. 1980-ին «շահագործման» է հանձնվել 1,2 մլն ռուբլի արժեքով 140 հեկտարի չորացման համակարգ, որը, սակայն, նախագծային սխալի պատճառով գործել է միայն մեկ սեզոն: Եվ, վերջապես, երեքնուկի ցանքատարածությունները ոռոգելու նպատակով կառուցվել են խորքային ջրհորներ և տեղադրվել ջրհան պոմպեր: Սակայն սխալ հաշվարկի և ոչ ճիշտ տեղադրման պատճառով համակարգը չի գործել... Մինչդեռ դրա վրա էլ ծախսվել է մոտ մեկ միլիոն ռուբլի: Տարօրինակ է, որ քամուն տված այդ միջոցների համար ոչ ոք պատասխան չի տվել: Ու, չգիտես ինչու, տնտեսության ղեկավարները հանգիստ խղճով ստորագրել են այդ «կառուցումների» կատարման փաստաթղթերը:

Ընդհանուր հետևությունը մեկն է. հողը, հարստության այդ աղբյուրը, Հովտաշատում վատ է օգտագործվում: Այդ գործում պարզապես անտնտեսվարություն է դրսևորվում: Հողն անտնտեսվար օգտագործելու և շռայլելու, կերարտադրության գործը վատ կազմակերպելու համար տնտեսության դիրեկցիան ու կուսկոմիտեն քննադատվել են նաև կուսշրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում, նրանց ղեկավարները՝ տույժի ենթարկվել: Մնում է կարծել, որ նրանք լուրջ հետևություններ չեն անում քննադատությունից և ահազանգերից: Հաշվետու ժողովում փաստեր բերվեցին այն մասին, որ հողերի շռայլումները չեն կանխվում: Մեծ չափերի հողատարածություններ են օգտագործում նաև այնպիսի ընտանիքներ, որոնց անդամներից ոչ մեկը չի աշխատում հանրային արտադրությունում, մինչդեռ, ինչպես նշեցին մտքերի փոխանակությանը մասնակցած կոմունիստ կթվորուհիներ Մարիամ Մելքոնյանն ու Ջիլիֆ Կարապետյանը, որոնք օրնիբուն գործի մեջ են, իրենց տնամերձ հողամասերի հարցը տարիներ շարունակ չի լուծվում...

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ հաշվետու ժողովում քննարկվեցին կուսակցական սկզբունքայնության դիրքերից, կոմունիստների ակտիվության պայմաններում, առողջ քննադատության միջոցով բացահայտվեցին հանրային արտադրությունում, սոցիալական ոլորտում և կուսակցական աշխատանքում տեղ գտած շատ թերություններ: Քննադատությունից զերծ չմնացին ինչպես ղեկավար կադրերն ու մասնագետները, այնպես էլ իրենց պարտականությունների կատարման մեջ թերացող մյուս կոմունիստները:

Կուսկազմակերպությանը մտահոգող խնդիրներից մեկը գյուղի սոցիալական զարգացումն է։ Կուսակցական ժողովի որոշմամբ կաթնային համալիրում գործարկվել է բաղնիք, բացվել է բուֆետ, անասնապահները ապահովվել են արտահագուստով, այլ պարագաներով, նրանց հատկացվել է վառելիք, տեղում կազմակերպվել է առաջին անհրաժեշտության ապրանքների վաճառք և այլն։ Կուսկոմիտեի և դիրեկցիայի ներկայացմամբ սոցիալական զարգացման մի շարք հարցեր էլ տեղ են գտել շրջանային միջոցառումների պլանում և արդեն լուծվել կամ լուծման ընթացքի մեջ են։ Հողամաս է առանձնացվել մարզադաշտ կառուցելու համար, 73 երիտասարդ ընտանիքների հատկացվել է տնամերձ հողամաս։ Այս բնագավառում, սակայն, տակավին կան լուծման կարոտ խնդիրներ, որոնք արծարծվել են նախընթաց ժողովներում ու կոմիտեի նիստերում և կրկին առաջ քաշվեցին հաշվետու ժողովում։ Դրանք վերաբերում են գյուղի գազիֆիկացմանը, բաղնիքի, կենցաղային այլ օբյեկտների կառուցմանը։ Գյուղը տարեցտարի մեծանում է, ավելանում է ծխերի, հետևաբար և երեխաների թիվը։ Տարեկան 85—100 ծնունդ է լինում։ Մինչդեռ դպրոցում նեղվածք է, նոր շենք կառուցելու հարցը հասունացել է։ Այս առնչությամբ շրջժողկրթբաժինը պիտի իր վճռական խոսքն ասի։

«Վերակառուցման հաջողությունը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը հոբելյանական հանդիսավոր նիստում,— նախ և առաջ կախված է կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի եռանդից, նպատակասլացությունից, օրինակի ուժից»։ Այս տեսանկյունից գնահատելով կոմունիստների աշխատանքը՝ կոմիտեի քարտուղար Բ. Հովհաննիսյանն ասաց. «Այսօր հաճելի է նշել կոմունիստ կթվորուհիներ Մարիամ Մելքոնյանի, Ջիլիֆ Կարապետյանի, ջրվորներ Մայիս Խալաթյանի, Ջիվան Հովհաննիսյանի, բանվորներ Հումբաթ Աբասովի, Ֆենիկ Եղոյանի, Իսա Ալիևի, Գյուլավաթան Ռահիմովայի և մյուսների լավ օրինակը։ Սակայն ի՞նչ արդարացում կարող են գտնել ՍՄԿԿ անդամներ Վանիկ Կուրղինյանը, Միրզա Աբդուլաևը, Արամ Ղազարյանը, որոնք չեն կատարում իրենց կուսակցական պարտականությունները, անբավարար մասնակցություն են ցույց տալիս սովխոզային արտադրությանը։ Իսկ ՍՄԿԿ անդամ անասնապահ Ավետիք Ալավերդյանը երկար ժամանակով ինքնագլուխ լքել է աշխատանքը։

Քարտուղարը հիշեցրեց, որ անասնապահական տեղամասային կուսկազմակերպությունը անդրադարձել է Ա. Ալավերդյանի վարքագծին և նրան ենթարկել կուսակցական տույժի։ Նա քննադատեց պետտնտեսության դիրեկտոր Հ. Բաղալյանին այն բանի համար, որ կոմունիստներին վարչական տույժի ենթարկելիս, աշխատանքի ընդունելիս կամ աշխատանքից ազատելիս շրջանցում է կուսկոմիտեին, այդ մասին ժամանակին չի տեղեկացնում կազմակերպությանը։ Իսկ կուսկոմիտեն անաչառ չի եղել անպարտաճանաչ կոմունիստների նկատմամբ, հաճախ ժամանակին հաշիվ չի պահանջել ճյուղերի ղեկավարներից ու մասնագետներից գործերի վիճակի համար։ Նման պայմաններում նրանցից ոմանք դրսևորել են անկարողություն, աքողել թերությունները։ Այդ առնչությամբ քարտուղարը քննադատության խոսք ասաց բրիգադավարներ Գ. Մեհթիևի, Մ. Ղարագյոզյանի, Ս. Օզմանյանի, համալիրի պետ Ս. Գրիգորյանի հասցեին։

Ժողովում լուրջ խոսակցության առիթ տվեց կապալային աշխատանքի ձախողման փաստը։ Նշվեց, որ կադրերի մոտ տնտեսական գիտելիքների պակասով պետք է բացատրել տնտեսավարման նոր ձևի՝ տնտհաշվարկի և կապալի անցնելու գործի ձախողումը։ Ճիշտ է, կուսկոմիտեն աշխատավորության շրջանում բացատրական աշխատանք է տարել, նույնիսկ որոշումներ ընդունել, բայց ինչ-ինչ պատճառներով գործն առաջ չշարժվեց, իսկ մեղավորներն այդպես էլ պատասխան չտվեցին։

Պետտնտեսության դիրեկտոր Հ. Բաղալյանն իր ելույթում ասաց, որ ժամանակն ստիպում է հաշվարկով, տնտեսավարորեն աշխատել, նոր ռեզերվներ օգտագործել։ «Տնտեսությունն անցնելու է տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման, դրա համար լայն հնարավորություններ ունենք»։ Սակայն այս հավաստիացումը չհիմնավորվեց կոնկրետ փաստերով ու հաշվարկներով։ Ժողովականները այնպես էլ չլսեցին դիրեկտորի գործունեության ինքնաքննադատական գնահատականը։

Այո՛, տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելու համար հարկավոր է միջոցները խնայել, ռացիոնալ օգտագործել, որոնել ու գործի դնել դրամական եկամուտի նոր աղբյուրներ։ Մինչդեռ երկու թռչնանոց դատարկ է, 4250 թռչունի համար երկու թռչնապահ, մեկ պահակ ու բրիգադավար են վարձատրում։ Իսկ տարիներ առաջ եռակի անգամ ավելի գլխաքանակի պայմաններում ֆերման ունեցել է 5 աշխատող։ Այստեղից էլ՝ վերջին տարիներին այս ճյուղի պատճառած տասնյակ հազար ռուբլու հասնող վնասը և ձվի բարձր ինքնարժեքը։

Տարիներ առաջ տնտեսությունն զբաղվում էր խոզաբուծությամբ և քիչ օգուտ չէր քաղում։ Շրջանային մարմինների «նախաձեռնությամբ» կերի պակասի պատրվակով այն վերացվել է։ Խոզանոցը տրվել է «Հայգլխգազի» ւսանրապետական կոմիտեին՝ օժանդակ տնտեսություն ստեղծելու համար։ Առնվազն տարօրինակ է. Հովտաշատի տարածքում ուրիշները խոզ են աճեցնում, իրենք՝ ոչ։ Իսկ այդ մասին ժողովում ոչինչ չասվեց։

Տնտեսավարման նոր պայմաններում աշխատելու համար Հովտաշատի պետական տնտեսությունում, իրոք, գործադրելու շատ ռեզերվներ ու հնարավորություններ կան։ Դրանց արդյունավետ օգտագործման վրա ժողովականների ուշադրությունը հրավիրեց ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար Ա. Հարությունյանը։ Սոցիալ-տնտեսական խնդիրները հաջողությամբ լուծելու համար նա մասնավորապես առաջ քաշեց կոմունիստների ավանգարդային դերի ու ակտիվության բարձրացման, կուսկազմակերպության մարտունակության ուժեղացման, արտադրական տեղամասերի կուսակցական ղեկավարումը բարելավելու, տնտեսական ու կուսակցական աշխատանքը վերակառուցման պահանջների ոգով կազմակերպելու և այլ հարցեր։

Կոմունիստների ակտիվության պայմաններում անցած կուսակցական ժողովից արած գլխավոր հետևությունն այն է, որ, ճիշտ է, կուսկոմիտեն անցած տարիներին բազմիցս անդրադարձել է վերակառուցումից բխող տնտեսական և սոցիալական զարգացման հարցերին, ընդունել համապատասխան որոշումներ, սակայն հետևողականություն հանդես չի բերել դրանց կատարումն ապահովելու գործում։ Կոմիտեն վատ է իրականացրել դիրեկցիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իր իրավունքը, հաշտվել է արտադրական առանձին ճյուղերի ղեկավարների դրսևորած անտարբերության հետ, ինչպես հարկն է չի բարձրացրել նրանց պատասխանատվությունը, անհաշտ պայքար չի մղել թերությունների ու թերացումների դեմ։

Ժողովում կոմունիստների դրսևորած ակտիվությունը և արած անաչառ քննադատությունն ու ինքնաքննադատությունը հույս են ներշնչում, որ կուսկազմակերպությունը, նրա կոմիտեն կհաղթահարեն վերակառուցման պրոցեսում եղած արգելքներն ու դժվարությունները և կքայլեն ժամանակի պահանջների համընթաց։

**Ա. ՍԱՔԱՆՅԱՆ**

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

**Կ. ՉԵՐԵՊԱՆՈՎ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ հերոսական պատմության մեջ ոսկե տառերով է գրված սովետական բանակի և ռազմածովային նավատորմի ծննդյան օրը: 1988 թվականի փետրվարի 23-ին լրանում է նրա 70 տարին:

Այդ տոնը նշվում է այն ժամանակ, երբ ողջ սովետական ժողովուրդը, կենսագործելով ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումները, ակտիվորեն ներգրավվել է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, համակողմանի բարեփոխման, սոցիալիստական հասարակության որակական կատարելագործման աշխատանքի մեջ: Մեր երկրի ներքին քաղաքականության արմատական, ստրատեգիական խնդիրների հետ անխզելիորեն կապված են և նրա միջազգային քաղաքականության խնդիրները: Այդ քաղաքականության գլխավոր նպատակն է՝ սովետական ժողովրդի համար ապահովել կայուն խաղաղության և ազատության պայմաններում աշխատելու հնարավորություն:

Սովետական զինված ուժերի պատմությունն սկսվել է աշխարհում առաջին սոցիալիստական պետության կազմավորման հետ միասին: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության իրականացումից հետո հաղթանակած ժողովրդին հարկ եղավ ոչ միայն կառուցել նոր հասարակություն, այլև զենքը ձեռքին պաշտպանել այն հակահեղափոխությունից, միջազգային իմպերիալիզմի և նրա դրածոների ոտնձգություններից:

Սովետական բանակը և ռազմածովային նավատորմը ստեղծվեցին կոմունիստական կուսակցության կողմից՝ Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարության ներքո, որը մշակեց և գիտականորեն հիմնավորեց պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին ուսմունքը:

Սովետների համառուսաստանյան II համագումարը 1917 թվականի հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7) կոչ արեց ժողովրդին՝ իշխանությունը վերցնել իր ձեռքը և պաշտպանել հեղափոխության նվաճումները: 1918 թ. սկզբին ակներև դարձավ, որ Հոկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստության շրջանում ստեղծված կարմիր գվարդիայի, ինչպես նաև հեղափոխական զինվորների ու նավաստիների ուժերը, որոնց թիվը 150 հազարից չէր անցնում, ակնհայտորեն բավարար չեն սովետական պետության պաշտպանության համար:

Այդ ժամանակ Վ. Ի. Լենինը նշում էր, որ հեղափոխության նվաճումների հուսալի պաշտպանության համար պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը պետք է ունենա կանոնավոր բանակ, որը կառուցված լինի խստագույն դասակարգային սկզբունքների հիման վրա: Հարկ է նշել, որ հեղափոխական բանակի ստեղծման հարցը միանգամայն նոր էր և արտակարգ բարդ, այն չէր առաջադրվել նույնիսկ տեսականորեն: Վ. Ի. Լենինը նշում էր. «Մենք այնպիսի մի գործ ենք ձեռնարկում, որին ոչ ոք աշխարհում այդպիսի լայնությամբ դեռևս չէր ձեռնարկել:... Մենք փորձից փորձ էինք գնում...» (ԵԼԺ, հ. 38, էջ 174):

---

ՉԵՐԵՊԱՆՈՎ ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ԻՆՈԿԵՆՏԻԵՎԻՉ — ՀԿԿ Կենտկոմի անդամ։



Նոր բանակի կազմավորման վերաբերյալ սովետական հանրապետության առաջին օրենսդրական ակտը դարձավ «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան», որը գրել է Վ. Ի. Լենինը և հաստատվել է համառուսաստանյան III համագումարում 1918 թ. հունվարի 12-ին: Նրանում ասվում էր. «Աշխատավոր մասսաների համար ամբողջ լիակատար իշխանությունն ապահովելու և շահագործողների իշխանության վերականգնման ամեն հնարավորություն վերացնելու դիտումով՝ դեկրետագրվում է աշխատավորների զինումը, բանվորների և գյուղացիների սոցիալիստական կարմիր բանակի կազմակերպումը և ունևոր դասակարգերի լիակատար զինաթափումը» (ԵԼԺ, հ. 35, էջ 260):

Ծուտով համագումարից հետո դեկրետներ են ընդունվում կարմիր բանակի և նավատորմի հիմնադրման վերաբերյալ: 1918 թ. հունվարի 28-ին Վ. Ի. Լենինը ստորագրեց Ժողովրդական կոմիսարների խորհրդի դեկրետը բանվորագյուղացիական կարմիր բանակ կազմակերպելու մասին: Այդ պատմական փաստաթղթում ասվում է. «Հին բանակը զենք էր ծառայում բուրժուազիայի կողմից աշխատավորների դասակարգային շահագործման համար: Իշխանությունը աշխատավորների և շահագործվող դասակարգերի ձեռքն անցնելով՝ անհրաժեշտություն ծագեց ստեղծել նոր բանակ, որը սովետական իշխանության պատվարը կդառնա... Բանվորագյուղացիական կարմիր բանակը ստեղծվում է աշխատավոր մասսաների առավել գիտակից և կազմակերպված տարրերից... կարմիր բանակ մտնում է յուրաքանչյուր ոք, ով պատրաստ է տալ իր ուժերը, իր կյանքը հանուն Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների, սովետների իշխանության և սոցիալիզմի»: Փետրվարի 11-ին ստորագրվել է բանվորագյուղացիական կարմիր նավատորմի կազմակերպման դեկրետը:

Այդ պատմական փաստաթղթերի հրապարակումից հետո առաջին իսկ շաբաթները ցույց տվեցին, թե որքան իմաստուն ու ժամանակին էին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, նոր բանակի կառուցման նպատակով կուսակցության ձեռնարկած միջոցները: 1918 թ. փետրվարի 18-ին կայզերական Գերմանիայի զորքերը, խախտելով զինադադարի պայմանները, սկսեցին լայն հարձակում ողջ ռազմաճակատով՝ Ռիգայի ծովածոցից մինչև Դանուբի գետաբերանը: Հեղափոխության օրրան Պետրոգրադի և սոցիալիստական հայրենիքի վրա կախվեց մահացու վտանգ:

Սովետական կառավարության՝ «Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է» դեկրետ-կոչով, որը ստորագրեց Վ. Ի. Լենինը 1918 թ. փետրվարի 21-ին և հաջորդ օրը հրապարակվեց մամուլում, երկրում սկսվեց Հոկտեմբերի նվաճումների պաշտպանությանը կոչված նոր տիպի բանակի, բանվորների և գյուղացիների կարմիր բանակի կազմավորումը: Վ. Ի. Լենինի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի և կառավարության, տեղական կուսակցական և սովետական մարմինների անդուլ և բազմակողմանի գործունեության շնորհիվ կարմիր բանակի թվակազմը 1918 թ. աշնան մուտերքը հասավ մինչև մեկ միլիոն զինվորի, 1919 թ. գարնան մուտերքը՝ մինչև 1,8 միլիոնի, իսկ 1920 թ. օգոստոսին արդեն հաշվվում էր 5,5 միլիոն մարդ:

ՌՍԴԲԿ-ի Կովկասյան երկրային կոմիտեն 1918 թ. մարտին դիմեց բանվորներին, գյուղացիներին և զինվորներին, կոչ անելով կազմակերպել սոցիալիստական կարմիր ջոկատներ՝ պայքարելու համար թուրքական և գերմանական զավթիչների դեմ, որոնք հարձակման էին անցել կովկասյան ռազմաճակատում, վերցրել էին Բաթումը, Ղարսը և շարժվում էին դեպի Անդրկովկասի կենտրոնական շրջանները, դեպի պրոլետարական Բաքուն:

Ավելի քան երեք տարի կարմիր բանակն ու նավատորմը կատաղի մարտեր էին մղում սպիտակգվարդիականների և օտարերկրյա ինտերվենտների դեմ՝ հետ մղելով նրանց բազմաթիվ արշավանքները: Սովետական պետության երիտասարդ զինված ուժերը բռնեցին իրենց առաջին ահեղ քննությունը: Եվ նրանք պատվով հանձնեցին այն: Թշնամուն հարվածելու մասշտաբները և ուժը անշեղորեն աճում էին: Կարմիր բանակը 1918 թվականին մեծ հաղթանակների հասավ գրեթե բոլոր ռազմաճակատներում. ջախջախեց հակահեղափոխական միացյալ ուժերը արևելքում, հետ շպրտեց սպիտակ-կազակային բանակի գրոհները հարավում, կանգնեցրեց ինտերվենտներին արևելքում: 1919 թվականին կարմիր բանակը, ջախջախելով կոլչակյան և դենիկինյան զորքերը, արմատական բեկում մտցրեց քաղաքացիական պատերազմի ընթացքի մեջ: Դրա հաղթական ավարտը դարձավ պանական Լեհաստանի և Վրանգելի ջախջախումը 1920 թվականի վերջերին: Հեռավոր Արևելքում

ճապոնական ինտերվենտների և սպիտակգվարդիականների դեմ ռազմական գործողությունները շարունակվեցին մինչև 1922 թվականը:

Այդ շրջանում հայ ժողովուրդը անհավասար մարտերում հերոսական դիմադրություն էր ցույց տալիս թուրքական զավթիչներին: Հայաստանի աշխատավորները 1918 թ. շուրջ վեց-յոթ ամիս պայքար էին մղում թուրքական 60-հազարանոց բանակի դեմ: Մայիսի վերջերին հայ աշխարհազորայինները ջախջախիչ հարված հասցրին հակառակորդին Սարդարապատի ու Ղարաքիլիսայի մոտ և ժամանակավորապես կանգնեցրին նրան: Թուրքական զավթիչների դեմ հերոսական մարտեր մղեցին Զանգեզուրի և Հայաստանի այլ շրջանների աշխատավորները: Այդ պայքարը կրում էր համաժողովրդական բնույթ:

Բազմաթիվ մարտերում և ճակատամարտերում երիտասարդ սովետական հանրապետության զինվորները իրենց անթառամ փառքով պսակեցին: Պերեկոպը, Կախովկան, Վոլոչաևկան, հերոս-չապաևականները, հեծելազորայինները և նավաստի-բալթիականները գովերգվում էին երգերում: Նրանց սխրագործության օրինակով դաստիարակվել է սովետական մարդկանց ոչ մեկ սերունդ, նրանց ավանդույթները ապրում և հարստանում են սովետական զինվորների ներկա սերնդի սխրագործ աշխատանքում, մարտական ծառայության մեջ:

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի նորաստեղծ ռազմահեղափոխական կոմիտեն հայկական ապստամբ ջոկատի հետ միասին մտավ Իջևան: Նույն օրն էլ այստեղ հրապարակվեց հայտարարություն Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության հռչակման մասին. «Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով ու ցանկությամբ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցությունը այսօրվանից Հայաստանը հայտարարում է Սոցիալիստական Խորհրդային Հանրապետություն»:

Վ. Ի. Լենինը ջերմորեն շնորհավորեց Հայաստանի աշխատավորների հաղթանակը և հեղկոմի նախագահի անունով հղեց հեռագիր, որի մեջ ասվում էր. «Ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին» (ԵԼԺ, հ. 42, էջ 65):

Ինտերվենտների զորքերի և սպիտակգվարդիական հրոսակների դեմ հաղթանակի գործում արժանի ավանդ մուծեց ռազմաքաղաքական միության մեջ միավորված յուրաքանչյուր սովետական ժողովուրդ: Աշխարհում առաջին սոցիալիստական պետության թշնամիների դեմ հաղթանակի հաջողության մեջ կարևոր դեր խաղաց աշխատավորների միջազգային համերաշխությունը: Մեր հայրենիքի համար դժվարին ժամին կարմիր բանակի և նավատորմի շարքերում հերոսաբար կռվում էին բուլղարներ և լեհեր, սերբեր և խորվաթներ, չեխեր և սլովակներ, հունգարներ և ռումիններ, կորեացիներ, մոնղոլներ և չինացիներ, ուրիշ ժողովուրդների հեղափոխականորեն տրամադրված ներկայացուցիչներ:

Հաղթանակ տանելով ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների դեմ՝ սովետների երկիրը ամրապնդեց իր ներքին դրությունը և միջազգային դիրքերը: Մեր ժողովուրդը հնարավորություն ստացավ կենտրոնացնելու ուժերը տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության վրա: Սակայն խաղաղ շինարարության տարիներին էլ, թշնամական կապիտալիստական շրջապատման պայմաններում, մեր կուսակցության ու ժողովրդի առջև ծառացավ երկու գլխավոր խնդիր՝ կառուցել սոցիալիզմ և զենքը ձեռքին ապահովել նրա պաշտպանությունը:

ՍՍՀՄ-ի վրա հարձակվելու սպառնալիքի վտանգը հատկապես ուժեղացավ, երբ Գերմանիայում իշխանությունը զավթեց ֆաշիզմը: Այդ պայմաններում կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ձեռնարկեցին անհրաժեշտ միջոցներ երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման նպատակով: Այդ միջոցառումները նպաստեցին սովետական զինված ուժերի մարտունակության բարձրացմանը: Սակայն պատմությունը մեզ քիչ ժամանակ էր տվել և ամեն բան չէ, որ հաջողվեց անել իմպերիալիզմի ամենահետադիմական ուժի՝ գերմանական ֆաշիզմի, ագրեսիայի դիմագրավումը նախապատրաստելու համար:

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիայի զորքերը ձեռնարկեցին ավազակային հարձակում Սովետական Միության դեմ: Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, որն իր էությամբ սոցիալիզմի ամենախոշոր ռազմական ընդհարումն էր իմպերիալիզմի հարվածային ուժերի դեմ:



Մեզ պարտադրված ագրեսիան անողոք քննություն էր սոցիալիստական կարգի կենսունակության համար, բազմազգ սովետական պետության ամրության, մեր ժողովրդի հայրենասիրական ոգու ուժի համար: Ագրեսորի հետ արիաբար մահացու գոտեմարտի բռնվեցին սովետական ժողովուրդը, նրա զինված ուժերի մարտիկները: Նրանք ելան Հայրենական մեծ պատերազմի, որն ընդունեց համաժողովրդական բնույթ, մղվեց հանուն Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության և եղավ ամենաարդարացի ազատագրական պատերազմը:

Հանկարծակի հարձակման, ուժերի և միջոցների զգալի գերազանցության շնորհիվ, հսկայական կորուստների գնով ֆաշիստները կարողացան հասնել ժամանակավոր հաջողության: Բայց սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը դիմացան: Զինված սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքով՝ կուսակցությունը երկիրը վերածեց միասնական ռազմական ճամբարի, ապահովեց ռազմաճակատի և թիկունքի քաղաքական, ռազմական և տնտեսական ղեկավարման միասնությունը: Սովետական երկրի կյանքի օրենքը դարձավ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» կուսակցական կոչը: Կոմունիստական կուսակցությունը ձեռնարկեց բոլոր միջոցները՝ ապահովելու գործող բանակի անխափան մատակարարումը նորագույն տեխնիկայով, զենքով, պարենամթերքով, այն ամրապնդեց կուսակցական ուժերով, զինվորական կադրերով: Թշնամու դեմ մղած համառ մարտերում կատարելագործվեց սովետական ռազմական արվեստը, ձեռք բերվեց մարտական գործողությունների վարման փորձ, աճեց զինվորների և հրամանատարների վարպետությունը:

Մոսկվայի, Ստալինգրադի և Կուրսկի ճակատամարտերը, այդ ստրատեգիական եռանկյունում մղած պայքարը ապահովեցին արմատական բեկման հաջողությունը ոչ միայն Հայրենական մեծ պատերազմում, այլև ամբողջ համաշխարհային պատերազմում:

Այնահեղ տարիներին հայ ժողովուրդը պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ: Հայ մարտիկները, ռուս մեծ ժողովրդի և մեր երկրի մյուս եղբայրական ժողովուրդների զավակների հետ միասին, անձնուրաց կերպով պաշտպանեցին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը: Լեգենդար դարձավ Թամանյան 89-րդ հայկական դիվիզիայի սխրանքը, այն իր դրոշը հաղթականորեն Կովկասի նախալեռներից հասցրեց Բեռլին:

Վիթխարի, նախկինում չտեսնված ճակատամարտերը լայնորեն բացահայտեցին մեր զորապետների ու զորահրամանատարների տաղանդը: Ժողովրդի խորքից ելած, կուսակցության կողմից դաստիարակված այդ մարդիկ իրենց դրսևորեցին որպես հայրենական ռազմական արվեստի լավագույն ավանդույթների ժառանգորդներ և շարունակողներ: Ուժեղ, փորձված հակառակորդի հետ գոտեմարտում ակներև դարձավ սովետական ռազմական գիտության և զորավարական մտքի գերազանցությունը՝ ստրատեգիական կանխատեսումը, ընդունած որոշումների ստեղծագործական բնույթը, առաջադրված նպատակներին հասնելու համառությունն ու ակտիվությունը, զինվորների և սպաների բարձր ռազմական ոգին նորագույն տեխնիկայի ջախջախիչ հզորության հետ միաձուլելու հմտությունը: Հայրենական մեծ պատերազմի ականավոր զորապետների և զորահրամանատարների փառապանծ անունները գիտի ողջ երկիրը: Նրանցով հպարտանում են ռազմաճակատայինները, մեր զինված ուժերը, ողջ սովետական ժողովուրդը: Նրանք են Գ. Կ. Ժուկովը, Կ. Կ. Ռոկոսովսկին, Ա. Մ. Վասիլևսկին, Ի. Ս. Կոնևը, Ի. Ք. Բաղրամյանը և շատ ուրիշներ:

Ֆաշիզմի հետ կատաղի գոտեմարտում բանակի և նավատորմի մարտիկները դրսևորեցին անձնուրաց հավատարմություն կուսակցությանն ու ժողովրդին, հայրենիքին, իսկական մասսայական հերոսություն: Տասնյակ հազարավոր հերոսներ հիանալի սխրանքներ են գործել թշնամու դեմ հաղթանակը կռելու համար:

Հայրենիքը բարձր գնահատեց սովետական մարդկանց սխրագործությունները: Ավելի քան 11 հազար մարդ՝ մեր հայրենիքի բոլոր ազգությունների զինվորներ, արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման: Այդ հերոսների փառավոր կոհորտայում կա 86 կին, մեր հայրենիքի անվանի, խիզախ դուստրեր, որոնք գործել են անմար մարտական սխրանքներ: Պատերազմի տարիներին կառավարական պարգևներ են ստացել 7 միլիոն ռազմիկներ: Զորքերի և բնակչության անվեհերության, անձնուրացության, տոկունության օրինակ դարձան հերոս քաղաքներ Մոսկվայի, Լենինգրադի, Ստալինգրադի, Կիևի, Մինսկի, Օդեսայի, Սևաստոպոլի, Նովո-

ռոսիյսկի, Կերչի, Տուլայի, Մուրմանսկի, Սմոլենսկի, հերոս-ամրոց Բրեստի համար մղված ճակատամարտերը: Շատ քաղաքներ արժանացան կառավարական պարգևների: Պատերազմում զինվորական բարձր պարգև էր «Գվարդիական» կոչման շնորհումը: Պատերազմի տարիներին գվարդիական դարձան 11 համազորային և 6 տանկային բանակները, 82 կորպուս, 215 դիվիզիա, շատ առանձին զորամասեր, ինչպես նաև ռազմածովային նավատորմի մի շարք նավեր և միավորումներ:

Խիզախության և հերոսության համար հազարավոր հայ զինվորներ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 103 մարդ արժանացել է Սովետական Միության հերոսի կոչման, իսկ անվեհեր օդաչու Նելսոն Ստեփանյանին այդ բարձր կոչումը շնորհվել է կրկնակի:

Զինված ուժերի տարեգրության մեջ ոսկե տառերով է գրված Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Իվան Քրիստափորի Բաղրամյանի անունը: Սովետական Միության նավատորմի ադմիրալ, Սովետական Միության հերոս Ի. Ս. Իսակովի, ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովի (Խանփերյանց), զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ, Սովետական Միության հերոս Ա. Խ. Բաբաջանյանի և շատ ուրիշների անունները ընդմիշտ կմնան սովետական մարդկանց հիշողության մեջ՝ որպես փառապանծ ինտերնացիոնալիստների, սովետական հայրենիքի ազատության և անկախության համար պայքարի մարտիկների:

Սովետական զինված ուժերի հաջողությունները խարսխված էին պատերազմի ընթացքում մեր հայրենիքի մշտապես աճող ռազմատնտեսական հզորության վրա, բանակին ամեն անհրաժեշտ բանով ապահովող թիկունքի հերոսական աշխատանքային սխրագործության վրա: Պատերազմը, գրել է Վ. Ի. Լենինը, յուրաքանչյուր ազգի տնտեսական և կազմակերպական բոլոր ուժերի փորձությունն է:

Ռազմաճակատի և թիկունքի, բանակի և ժողովրդի անշեղ միասնությունը հաղթանակի կարևոր աղբյուրներից մեկն էր: Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, ինչպես և սովետական ողջ ժողովուրդը անդուլ կերպով աշխատել են թշնամու դեմ հաղթանակի նվաճման համար: Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ, իրենց ողջ աշխատանքը վերակառուցեցին ռազմական պայմաններին համապատասխան: Ամեն օր հանրապետությունից ռազմաճակատ էին ուղարկվում զենք, զինամթերք, համազգեստ, պարեն:

Պատերազմի ծանր տարիներին Հայաստանում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին արդյունաբերական նոր ձեռնարկություններ՝ Հայէլեկտրագործարանը, ավտոպահեստամասերի, կոմպրեսորների, ժամացույցի, էլեկտրաշարժիչների և այլ գործարաններ: Ծավալվեց թիկունքի գվարդիականների՝ բազմահազարանոցայիններ հայրենասիրական շարժումը: Այդ գործում մեծ նախաձեռնություն դրսևորեց երիտասարդությունը:

Ինքը՝ կոմունիստական կուսակցությունը, դարձավ իսկական մարտնչող կուսակցություն, որը միաձուլվեց կռվող ժողովրդի հետ: Կոմունիստները գտնվում էին թշնամու դեմ պայքարի ամենադժվարին և վճռորոշ տեղամասերում: Նրանք խիզախության ու անվեհերության անձնական օրինակով համախմբում էին բանակի և նավատորմի շարքերը, բոլշևիկյան կրքոտ խոսքով բարձրացնում զինվորների մարտական ոգին, նրանց մղում սխրագործության, սովետական մարդկանց տանում դեպի հաղթանակ: Այն տարիներին յուրաքանչյուր հինգ կոմունիստից չորսը գտնվում էր բանակում կամ պաշտպանական ձեռնարկություններում: Այնտեղ էին գործուղվել կենտրոնական կոմիտեի անդամները, կուսակցության լավագույն կադրերը: Երեք միլիոն կոմունիստներ զոհվեցին ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում: Ավելի քան 5 միլիոն մարդ այն ահեղ տարիներին ընդունվեց կուսակցության շարքերը:

Պատերազմը ցույց տվեց, որ սովետական ժողովուրդը, կուսակցությունը, սոցիալիզմը և Հոկտեմբերը անբաժան են և աշխարհում չկան ուժեր, որոնք կարողանային խախտել այդ միասնությունը: «Սոցիալիզմը ոչ միայն տոկաց և սոսկ հաղթանակ չէ, որ տարավ,— նշված է մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ:— Նա ամենաահեղ, ամենաավերիչ պատերազմից դուրս եկավ բարոյապես, քաղաքականապես ամրացած, ամրապնդեց իր հեղինակությունն ու ազդեցությունը ամբողջ աշխարհում»: Զեկուցման մեջ առանձնահատուկ նշվում է, որ պատերազմի գլխավոր ծանրությունն իր վրա կրեց



ժողովրդի զավակը հանդիսացող, մեծ աշխատավոր, խիզախ, իր հայրենիքը սիրող հասարակ սովետական զինվորը:

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի, սովետական զինված ուժերի տարած հաղթանակը օրինաչափ էր: Այն ողջ համոզչությամբ ապացուցեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության հսկայական կենսական ուժը և անխորտակելիությունը, նրա արմատական առավելությունը կապիտալիզմի նկատմամբ քաղաքական, տնտեսական, գաղափարական և այլ ասպարեզներում: Լիակատար կերպով դրսևորվեց գերազանցությունը սովետական զինված ուժերի, որոնք Հայրենական մեծ պատերազմի տարիներին զինվորների մարտական սխրագործություններով գրեցին իրենց հերոսական տարեգրության ամենավառ և փառավոր էջերից մեկը: Պաշտպանելով ամենաառաջավոր հասարակական կարգը՝ սոցիալիզմը, սոցիալիստական հայրենիքը, նրանք ահեղ դաս տվեցին ռազմական ավանտյուրայի սիրահարներին, միջազգային գերիշխանություն հավակնողներին, համոզիչ կերպով ցույց տվեցին նրանց ագրեսիվ նկրտումների դատապարտվածությունը:

Դեռ չէին դադարել երկրորդ համաշխարհային պատերազմի համազարկերը, երբ իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները սկսեցին վարել «ուժի դիրքերից» քաղաքականությունը ՍՍՀՄ-ի՝ հակահիտլերյան կոալիցիայի իրենց երեկվա դաշնակցի դեմ: Այժմ, երբ ԱՄՆ-ի և Անգլիայի արխիվներից հրապարակայնության են հանձնվել շատ գաղտնի փաստաթղթեր, հայտնի է դարձել, որ արդեն քառասունական թվականներին այդ երկրների ռեակցիոն շրջանները հղացել էին մեր երկրի դեմ լայն ագրեսիայի նախապատրաստման գաղտնի պլաններ՝ մասսայական ոչնչացման զենքի գործադրմամբ:

Դժվարին էր այն ժամանակ Սովետական Միության համար: Հիշենք. պատերազմի տարիներին զոհվեց 20 միլիոն սովետական մարդ, հիմնականում տղամարդիկ, երկրի անհամեմատ աշխատունակ բնակչությունը, ոչնչացվել էր մեր պետության ազգային հարստության մոտ 30 տոկոսը: Հարկավոր էր առաջին հերթին լուծել ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման, պատերազմի ծանր վերքերի բուժման խնդիրները: Կապիտալի աշխարհում շատերը համոզված էին, որ Սովետական Միությունը, կրելով այդքան հսկայական կորուստներ, տևականորեն հետ կմղվի և երկար ժամանակ ուշքի չի գա պատերազմի հետևանքներից: Այդ պարագաների հաշվառմամբ իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները և, առաջին հերթին ԱՄՆ-ը, գործնականում իրականացնելով «ուժի դիրքերից» քաղաքականությունը, իրենց ռազմական և գլխավորապես միջուկային պոտենցիալը ուժեղացնելու լայնամասշտաբ ծրագիր, սկսեցին կազմակերպել ագրեսիվ ռազմական բլոկներ, ձեռնամուխ եղան նոր պատերազմի նյութական և գաղափարական նախապատրաստության:

Այդ պայմաններում կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ստիպված էին ոչ միայն զբաղվել ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հարցերով, այլև պատշաճ հոգատարություն ցուցաբերել երկրի պաշտպանունակության ամրապնդման նկատմամբ, ռազմական ուժերը պահել անհրաժեշտ մակարդակի վրա:

Հետպատերազմյան տարիներին սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իր անձնուրաց աշխատանքով ապահովեց ժողովրդական տնտեսության ո՛չ միայն արագ վերականգնումը, այլև հետագա զարգացումը:

Հոկտեմբերի երկիրը պատմական ռեկորդային կարճ ժամանակամիջոցում վերածվեց հզոր միջազգային տերության: Դրանում, և դա հարկ է ընդգծել, կրկին անգամ առանձնահատուկ ուժով դրսևորվեցին սոցիալիստական կարգի հսկայական հնարավորությունները, որոնք բացահայտվեցին և հաստատվեցին մարդկային կեցության արմատական հարցերը լուծելու նրա բուն ունակության մեջ:

Սոցիալիստական հասարակարգը արմատապես փոխեց մեր հայրենիքի դիրքն ու դերը միջազգային ասպարեզում: Այն մեզ տվեց այնպիսի նյութական, գաղափարական և բարոյական ռեսուրսներ, որոնք հնարավորություն են ընձեռում արդյունավետորեն ներազդել համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա: Հասնելով ռազմաստրատեգիական հավասարակշռության իմպերիալիզմի ուժերի հետ՝ ՍՍՀՄ-ը և նրա դաշնակիցները էապես սահմանափակեցին պոտենցիալ ագրեսորների՝ միջուկային պատերազմ սանձազերծելու հնարավորությունները: «Սոցիալիզմի պատմական հաջողությունը,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— հանդիսացավ ռազմաստրատեգիա-

կան զուգակշռության հաստատումը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև, Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ՆԱՏՕ-ի միջև: Այն ամրապնդեց ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի երկրների և բոլոր առաջադեմ ուժերի դիրքերը, տապալեց համաշխարհային միջուկային պատերազմում հաղթանակի հասնելու իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների հաշվարկները: Այդ հավասարակշռության պահպանումը խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման գործոն է:

Բայց միջուկային-տիեզերական դարի իրողությունները անհրաժեշտաբար թելադրում են ընթանալ զինաթափման, ռազմական դիմակայության մակարդակի իջեցմամբ հավասարակշռության պահպանման ուղիով: Կուսակցության XXVII համագումարում նշվեց, որ հակադիր կողմերի միջուկային պոտենցիալի հաշվեկշռի այժմյան մակարդակը չափից ավելի բարձր է: Այն դեռևս հավասարապես վտանգավոր է նրանցից յուրաքանչյուրի համար: «Միջուկային սպառազինությունների մրցավազքի շարունակումը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը,— անխուսափելիորեն կմեծացնի այդ հավասար վտանգը և կարող է այն հասցնել այնպիսի սահմանների, երբ անգամ զուգակշռությունը կդադարի ռազմաքաղաքական զսպման գործոն լինելուց: Ուրեմն առաջին հերթին անհրաժեշտ է մեծ չափով նվազեցնել ռազմական դիմակայության մակարդակը: Իսկական հավասար անվտանգությունը մեր դարում երաշխավորվում է ոչ թե ստրատեգիական հաշվեկշռի առավել բարձր, այլ առավել ցածր մակարդակով, հաշվեկշիռ, որից պետք է լիովին բացառվեն միջուկային և մասսայական ոչնչացման մյուս զինատեսակները»:

Գիտակցելով այդ իրողությունը և համակողմանիորեն կշռադատելով ստեղծված իրադրությունը՝ ՍՄԿԿ-ն առաջադրեց մինչև ընթացիկ հազարամյակի վերջը մասսայական ոչնչացման զենքի լրիվ վերացման ամբողջական, իր մասշտաբով և նշանակությամբ պատմական ծրագիր: Այդ ծրագրի կենսագործման վառ օրինակ դարձավ միջին և փոքր հեռահարության հրթիռների ոչնչացման մասին պայմանագրի ստորագրումը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև:

Այսօր, հայացք ձգելով ապրած յոթ տասնամյակների վրա, մենք կարող ենք լիակատար իրավունքով ասել, որ այդ տարիներին կուտակած փորձը ոչ միայն մեր քաղաքական և բարոյական անգնահատելի կապիտալն է, այլև առաջին հերթին՝ առաջընթացի հիմքը և անցած ուղու գնահատման յուրահատուկ չափանիշը: Սովետական իշխանության համար մղված ճակատամարտերի հնոցում, իմպերիալիզմի ամենահետադիմական ուժերի դեմ պայքարում աճեցին և կոփվեցին սովետական զինված ուժերը:

Այսօր մենք իրավունք ունենք ասելու, որ իր նպատակների էությամբ Հոկտեմբերը պատերազմի այլընտրանք է: Սակայն Արևմուտքում շատերը չեն ուզում դա հասկանալ, և հատկապես նրանք, ովքեր հարստանում են զենքի արտադրությունից, վարում են միլիտարիզմի քաղաքականություն, ապրում պատերազմով: Ուստի, կրկին անգամ հարկ է նշել. նոր տիպի բանակի ստեղծումը, զինվորական լեզվով ասած, զինված պահակի հերթափոխություն է պատմության ժամացույցի մոտ: Եվ եթե կապիտալիստական բանակները շահագործողներին հարկավոր են թալանի համար, ապա սովետական զինված ուժերը հետապնդում են այլ նպատակ՝ խաղաղության պահպանությունը հանուն առաջադիմության:

Հաղթական տասնամյակները, լենինյան հանճարեղ ուսմունքը դարձան իր էությամբ ու բնույթով հեղափոխական արդի վերակառուցման տեսական և գործնական հիմքը: Վերակառուցման պրոցեսը ծավալվում ու խորանում է սովետական բանակում և ռազմածովային նավատորմում: Ավելի հստակ է դարձել ռազմական և քաղաքական պատրաստության ռիթմը, ավելի լավ են յուրացվում ժամանակակից ռազմական տեխնիկան և զենքը: Վերակառուցման ընթացքի կարևոր ցուցանիշ է անձնակազմի հասարակական-քաղաքական և ծառայողական աճող ակտիվությունը:

Սակայն բանակում վերակառուցումը, ցավոք, ընթանում է ավելի դանդաղ, քան կցանկանայինք: Արվել են դեռևս առաջին քայլերը. խնդիրը շատ ավելի բարդ է, իսկ պրոբլեմները անհամեմատ շատ են, քան ենթադրվում էր:

Շատ բաներ, ինչով միշտ հպարտանում էր սովետական բանակը, կորսվեցին 70—80-ական թվականներին: Զարգացան ժամանակի քննությունը բռնած մեր մարտական ավանդույթները, իսկ հաճախ էլ դրանք միայն թմբկահարվում էին գեղեցիկ լոզունգների տեսքով: Երևան եկան լճացման և այլ բացասական երևույթներ զորքերի



պատրաստության մեջ: Կազմակերպչական աշխատանքը հաճախ փոխարինվեց անհիմն հայտարարություններով, գործը՝ երկարախոսությամբ: Ինչ-որ տեղ կադրային քաղաքականություն ներխուժեց պրոտեկցիոնիզմը: Մի շարք զորամասերում բանակայինների մոտ սկսեց նվազել հետաքրքրությունը զինվորական ծառայության նկատմամբ: Այդ ամենը բացասաբար անդրադարձավ ռազմական պատրաստության, սոցիալական և հոգևոր ոլորտների վրա:

Այսպիսին է իրողությունը, և այն պարտավորեցնում է մեզնից յուրաքանչյուրին՝ այլ կերպ դիտել սեփական աշխատանքը, խորությամբ գիտակցել դրության լրջությունը, հասունացած խնդիրների ողջ սրությունը, որոնք առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումը. «բարձրացնել զգոնությունը, գործել է՛լ ավելի վճռականորեն, ամենուրեք ամրապնդել կարգապահությունը, կազմակերպվածությունը, պատասխանատվությունը բոլոր մակարդակներում»: Ով հասկացել է այդ խնդիրները և ցանկացել վերակառուցվել, ներգրավվել է աշխատանքի մեջ, իսկ ով չի ըմբռնել նոր խնդիրները, շարունակում է կառչել հնից, իր անգործությամբ փաստորեն սաբոտաժի է ենթարկում վերակառուցումը բանակում: Ահա թե ինչու սովետական բանակի և ռազմածովային նավատորմի 70-ամյակի նախօրեին զինվորական կոլեկտիվի յուրաքանչյուր ղեկավար, յուրաքանչյուր սպա և գեներալ, պրապորշչիկ և ավագ, սերժանտ և բանակային իր առջև վերակառուցման ընթացքի համար անձնական պատասխանատվության հարց է դրել:

Զինված ուժերում վերակառուցման էությունը ամենից առաջ լճացման երևույթների վճռական հաղթահարումն է ռազմական պատրաստության մեջ, զորքերի և նավատորմի ուժերի պատրաստությունը: Արգելակման հիմնական մեխանիզմը ռազմական և քաղաքական պատրաստության պլանային բնույթի խախտումն է, անձնակազմի կտրվածությունը պարապմունքներից և ինքնաղքատացումը:

Գլխավորը՝ զորքերին սովորեցնել այն, ինչ անհրաժեշտ է պատերազմում: Վերակառուցումը բանակի և նավատորմի ուժերի բարոյաքաղաքական վիճակի մեջ նորի ձեռքբերումն է, կարգապահության արմատական ամրապնդումը: Կարգապահության մեջ է բանակի ամրությունը: Հատկապես կարևոր է զինվորական կոլեկտիվում արմատախիլ անել ոչ կանոնադրական փոխհարաբերությունները, բարձրացնել ազնիվ զինվորական ծառայության հեղինակությունը, հաղթահարել մի շարք պետերի կտրվածությունը ենթականերից: Անհրաժեշտ է հետևողականորեն ամրապնդել միանձնյա ղեկավարումը կուսակցական հիմքի վրա:

Վերակառուցումը բանակային կոլեկտիվների կյանքի համակողմանի դեմոկրատացումն է, ամենուրեք մեր հասարակական ինստիտուտների իրական և ոչ թե ձևական դերի վերականգնումը, կոմերիտական կազմակերպությունների գործունեության ինքնագործ բնույթի ուժեղացումը, անձնակազմի ժողովական ստեղծագործական, ինքնագործ բնույթի ուժեղացումը, անձնակազմի ժողովների, կոլեկտիվ կերպով ընտրված հանձնաժողովների, խորհուրդների լայն հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության զարգացումն է, զինվորական ծառայության նկատմամբ անձնակազմի հետաքրքրության բարձրացումը, առաջավոր փորձը կրողների և նրանց արդյունավետ աշխատանքի անպայման խրախուսումը, նրանց ըստ ամենայնի պաշտպանությունը և պրոպագանդումը, ովքեր ուրիշներից շատ են հոգեկան և ֆիզիկական ուժեր նվիրաբերում ծառայությանը:

Վերակառուցումը զինվորական կանոնադրությունների դերի աճեղ բարձրացումն է: Կանոնադրությունները օրենք են: Դրանց ոգուն և տառին հետևելը անվերապահորեն առաջ շարժվելու երաշխիք է զինվորական կյանքի բոլոր մարզերում: Դա սոցիալիստական օրինականության և սոցիալական արդարության խստագույն պահպանումն է:

Վերակառուցումը վճռական շրջադարձ է դեպի գիտությունը, նոր գիտելիքներ յուրացնելու ձգտում: Յուրաքանչյուր պարապմունք, զինավարժություն, արշավ պետք է կազմակերպվի ռազմական գիտության վերջին նվաճումների հիման վրա:

Վերակառուցումը զինվորական կադրերի գործունեության մեջ սոցիալական ուղղվածության ուժեղացումն է, նրանց մեջ սոցիալական պրոբլեմների նկատմամբ վերաբերմունքի դաստիարակումը՝ որպես կարևոր քաղաքական գործի: Զինվորականների ծառայության, ռազմական ուսուցման, նրանց ընտանիքների անդամների կյանքի և կենցաղի համար բարենպաստ պայմանների ստեղծման կարողությունը

ցանկացած հրամանատարի և քաղաշխատողի, յուրաքանչյուր սպայի և գեներալի քաղաքական ու գործնական հասունության պարտադիր պայման է:

Զինված ուժերում վերակառուցման կարևորագույն խնդիրը զորքերի և նավատորմի ուժերի մարտունակության բարձրացումն է՝ ի շահ Հոկտեմբերից սերված մեր սոցիալիստական հայրենիքի հզորության: Դրա համար անհրաժեշտ է առաջին հերթին իսպառ հաղթահարել անսխալականության կոմպլեքսը, որով մի ժամանակ հիվանդ էր բանակային օրգանիզմը: Այժմ խնդիրը վերակառուցման պրոցեսի յուրահատկությունները խորապես իմաստավորելը, նրա հեռանկարները սահմանելը, սկսած գործը մինչև վերջ հասցնելն է:

Ճիշտ է ասված, որ վերակառուցման համար քիչ է քննադատել թերությունները, հարկավոր է ջանադրորեն հավաքել առաջավոր փորձի հատիկները, իսկ փորձը մարդկանց մեջ է: Այն կա: Նրա հասցեների աշխարհագրությունն ընդլայնվում է: Լավ տեղաշարժեր կան հրամանատարների, քաղաշխատողների, ժամկետային զինծառայողների գործունեության մեջ: Իրենց 70-ամյա հոբելյանի նախօրեին սպաներ Վ. Բելյակովի, Ա. Գուլքանյանի, Վ. Տերենտևի, Ա. Ֆելդմանի ղեկավարած զինվորական կոլեկտիվները պատվով են կատարել սոցիալիստական պարտավորությունները: Գերազանցիկների և կարգային մասնագետների շարքերը լրացրել են սերժանտներ Ա. Բաղդասարյանը, Ս. Կովալենկոն, Ն. Պարպիևը, Ա. Խաչատրյանը, շարքայիններ Է. Հարությունյանը, Ա. Պայազովը, Ա. Ստեփանյանը, Ն. Ալիևը, Ծ. Իաձեն և շատ ուրիշներ:

Այս հիանալի տարելիցը նրանք, ինչպես և սովետական բոլոր զինվորները, նշում են բանակային կյանքի բոլոր ոլորտներում ընթացող խոր վերակառուցման իրադրության մեջ, արժանավայել են կատարում իրենց սրբազան պարտքը, հուսալիորեն ապահովում խաղաղ պայմաններ սովետական պետության տնտեսական և սոցիալական զարգացման ստրատեգիական կուրսի իրականացման համար:

---



# ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏ-ՀԱՅՐԵՆԱՍԵՐՆԵՐ

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը լենինյան կոմերիտմիության գլխավոր խնդիրն է: Սովետական հայրենասիրությունը խարսխվում է մեր երկրի բոլոր ժողովուրդների համազգային հըպարտության վրա: Ինտերնացիոնալ այդ զգացումն անհամատեղելի է ազգային բացառիկության սնանկ մտայնության հետ: «Մարդը ինտերնացիոնալիզմի կամ նացիոնալիզմի գեներով չի ծնվում: Հենց իրենից, դաստիարակությունից, հասարակությունից է կախված, թե նա ինչպիսին կդառնա կյանքում: Եվ սովետական մարդկանց յուրաքանչյուր նոր սերունդ պետք է ամեն անգամ նորից ձեռք բերի ինտերնացիոնալիզմի զգացումը ազգամիջյան հաղորդակցման, համատեղ ուսման մեջ և աշխատանքում»— Համ-ԼԿԵՄ XX համագումարում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Համակողմանի քննության առնելով երիտասարդության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության հրատապ խնդիրները՝ համագումարը դրական տեղաշարժերի հետ միասին նշեց նաև, որ այդ աշխատանքը դեռևս տարվում է լոզունգային, ցուցադրական եղանակով, ինչը հակասում է մեր սոցիալ-տնտեսական կյանքում տեղի ունեցող հեղափոխական վերափոխումների ոգուն: Համագումարը խնդիր դրեց՝ երիտասարդության շրջանում ձևավորել անձնական պատասխանատվության զգացում վերակառուցման ընթացքի և արդյունքների համար, ուշադրությունը բևեռել պատանիների և աղջիկների աշխատանքային ու հասարակական գործունեության հայրենասիրական կողմերին, անհաշտ պայքար մղել նացիոնալիզմի, շովինիզմի, տեղայնական մտայնությունների, ազգային սահմանափակության ամեն տեսակ դրսևորումների դեմ:

Ինչպես մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նըվիրված հանդիսավոր նիստում իր զեկուցման մեջ իրավացիորեն նշեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը, վերակառուցման, դեմոկրատացման, տնտեսության զարգացման նոր փուլի պայմանները ենթադրում են ապագայում ավելի խոր վերլուծել ու քննարկել ազգային փոխհարաբերությունների հարցերը՝ առավելագույնս զարգացնելով յուրաքանչյուր ազգի, ժողովրդի պոտենցիալը:

Ելնելով վերոհիշյալ պահանջներից՝ Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմը, նրա բյուրոն, ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմներն իրենց ուշադրության կենտրոնում են պահում երիտասարդության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության խնդիրները, ջանում ըստ ամենայնի նպաստել համոզված ինտերնացիոնալիստների, ճշմարիտ հայրենասերների դաստիարակմանը: Այսպես, Կենտկոմի բյուրոն հանգամանալի քննարկեց երիտասարդության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության ասպարեզում Մասիսի շրջանի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի վերաբերյալ հարցը: Ընտրությունը պատահական չէր: ՀԼԿԵՄ Մասիսի շրջկոմը զգալիորեն աշխուժացրել է այդ նպատակով ծավալված գործունեությունը. վերջին տարիներին հիմնըվել են ռազմական փառքի 115 թանգարաններ, Հաղթանակի 40-ամյակի անվան զբոսայգի, 8600-ից ավելի երիտասարդներ համամիութենական արշավի մասնակիցներ են: Միաժամանակ վեր հանվեցին շրջանի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում տեղ գտած էական թերություն-

ՀԱԿՈԲՅԱՆ ԳՈՒՐԳԵՆ ԳԱԳԻԿԻ— ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար:

ներն ու բացթողումները, նշվեցին դրանք վերացնելու կոնկրետ ուղիները, ինչպես նաև երիտասարդության ինտերնացիոնալ-հայրենասիրական դաստիարակության կազմակերպումը կատարելագործելու ձևերն ու մեթոդները:

Հատկանշական է, որ այդ հարցին անդրադարձել են նաև Հրազդանի, Աբովյանի և Ստեփանավանի կոմերիտմիության կոմիտեները: Նմանօրինակ քննարկումները մեծապես նպաստել են՝ բարելավելու երիտասարդության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության գործը, հարստացնելու այդ ասպարեզում ձեռք բերած փորձն ու ավանդույթները:

Կոմերիտմիության ծավալած հայրենասիրական դաստիարակության աշխատանքի ամենատարածված ձևերից է «Կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերով» արշավը: Ավելի քան 20-ամյա պատմություն ունեցող այս շարժումն ընդգրկում է 60 միլիոն մասնակից: Արշավը կազմակերպում է ՀամԼԿԵՄ Կենտկոմին առընթեր գլխավոր շտաբը, որը տարբեր ժամանակներում ղեկավարել են փառաբանված զորավարներ, Սովետական Միության կրկնակի հերոսներ, մարշալներ Ի. Կոնևը և Ի. Բաղրամյանը: Ներկայումս համամիութենական արշավի կենտրոնական շտաբի պետն է ավիացիայի մարշալ, Սովետական Միության հերոս Ի. Ռուդենկոն:

Համամիութենական արշավի տասներորդ հավաքն անցկացվեց Սովետական Հայաստանում: Երկրի տարբեր ծայրերից ժամանած պատվիրակները, որոնց թվում կային և նշանավոր զորավարներ, Սովետական Միության հերոսներ, հանդիպումներ ունեցան արտադրության ու գիտության երիտասարդ ներկայացուցիչների հետ, դրվագներ պատմեցին իրենց սերնդակիցների սխրանքներից: Իր հերթին հանրապետության երիտասարդությունը նոր հայրենանվեր գործերով դիմավորեց հավաքի մասնակիցներին: Պատանիներն ու աղջիկներն ստանձնեցին պատերազմի և աշխատանքի հազարավոր վետերանների շեֆությունը: Նրանք օգնում են զոհվածների ընտանիքներին, տվյալներ հավաքում մեր հայրենակիցների կատարած սխրագործությունների վերաբերյալ:

Իրենց գեղեցիկ գործերի և նախաձեռնությունների մասին կոմերիտականները հաշվետու են լինում համամիութենական արշավի նշանակալից արարողությունների՝ «Հայրենական պատերազմի տարեգրություն», «Հավատարմություն հաղթանակի դրոշներին», ինչպես նաև «Համամիութենական հուշո հերթափոխի» ժամանակ, որն ամեն տարի անցկացվում է մայիսի 8—9-ը: Ի դեպ, անցյալ տարի համամիութենական հուշո հերթափոխի բացման պատիվը ընձեռված էր Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանին: Հերթափոխի բացման շրջանակներում հանրապետության տարբեր շրջաններում անցկացվող միջոցառումները, որոնց մասնակցում էին մեր լայնարձակ երկրի տարբեր շրջաններից եկած շուրջ 50 պատվիրակություններ, նոր լիցք հաղորդեցին երիտասարդության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակությանը: Հուշո հերթափոխի պատվիրակությունները մասնակցեցին նաև մարշալ Ի. Ք. Բաղրամյանի ծառուղու հիմնադրմանը Հաղթանակի զբոսայգում:

Զուր չի ասված, թե բարեկամին ճանաչում են դժվարին պահերին, ճշմարիտ բարեկամությունը զոդվում է փորձության մեջ: Սովետական Հայաստանի երիտասարդությունը մեկ անգամ չէ, որ գործով դրսևորել է իր խոր հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը: Այս իրողության համոզիչ ապացույցն է հանրապետության ուսանողների և պրոֆտեխուսումնարանների սովորողների անձնվեր աշխատանքը: Նրանք ժամանակին օգնության ձեռք պարզեցին չեռնոբիլյան վթարից տուժածներին, ակտիվորեն մասնակցեցին Մոլդավիայում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքների վերացմանը, զորավիգ եղան եղբայրական վրաց ժողովրդին՝ տարերային աղետի ծանր օրերին:

Խորամուխ լինելով վերջին աշխարհամարտի դասերի մեջ, հաղորդակցվելով ավագ սերնդի հերոսական ավանդներին, նրանց հետ մեկտեղ վերստին անցնելով փառքի ու արիության ճամփաներով՝ պատանիներն ու աղջիկները հասու են լինում մերօրյա արժեքներին, սովետական ժողովրդի նվաճումներին, խորապես գիտակցում հայրենիքի պաշտպանությանը մշտապես պատրաստ լինելու գաղափարի կարևորությունն ու հրատապությունը: Այդ գիտակցությունից էլ ծնունդ առավ մեծ հաղթանակի տարելիցի նախօրեին զինվորների մայրերի հետ ՀԼԿԵՄ Կենտկոմում հանդիպում կազմակերպելու նախաձեռնությունը, որն արժանացավ լայն հասարակայնության ուշադրությանը:

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության գործում էական նշանակություն ունեն մեր հայրենակիցների մարտական փառքի վայրերով կազմակերպվող ավտոագիտարշավները, զորակոչիկների հավաքները, ռազմակիրառական և ռազմատեխնիկական մարզաձևերի բազմաթիվ մրցումները, «Բաղրամյանի դասերը», դպրոցներում անցկացվող «Արծվիկ» և «Փայլակ» ռազմամարզական խաղերը, ՊԱՊ համալիրի նորմաների զանգվածային հանձնումը և այլն: «Հավատարիմ ենք հայրերի պատգամներին», «Ուժ և գեղեցկություն», «Հեղափոխական երթին համաքայլ», «Մենք բարեկամությամբ ենք հզոր» և ավանդական դարձած ռազմահայրենասիրական ու մասսայական այլ միջոցառումներին, որոնք նախաձեռնում են ՀԼԿԵՄ Կենտկոմն ու հանրապետության մյուս շահագրգիռ կազմակերպությունները և դաստիարակչական հսկայական նշանակություն ունեն, ակտիվորեն մասնակցում են պատանիներն ու աղջիկները, ֆիզիկապես ու բարոյապես կոփվում են հայրենիքի ապագա պաշտպանները՝ հնարավորություն ստանալով գործնականում դրսևորելու իրենց ուժերն ու կարողությունները:

Կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները տարեցտարի ավելի լուրջ ուշադրություն են նվիրում հանրապետության երիտասարդներին ռազմական ուսումնական հաստատություններ գործուղելուն: Այդ նպատակով նախազինակոչային և զինակոչային հասակի երիտասարդների շրջանում լայնորեն պրոպագանդվում են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան պատգամները, սովետական սպայի կոչումը, «Համընդհանուր զինվորական պարտավորության մասին» ՍՍՀՄ օրենքը: Դրական աշխատանք են ծավալել հատկապես Երևանի Շահումյանի, Սովետական, 26 կոմիսարների անվան, ինչպես նաև Աբովյանի, Ղափանի, Շամշադինի, Ախուրյանի, Արտաշատի շրջանների կոմերիտական կազմակերպություններն ու զինկոմիսարիատները:

Երիտասարդության ռազմահայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակության, ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում ծառայության նախապատրաստման նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը ուսումնասիրել և տարածման է երաշխավորել հանրապետության բոլոր հանրակրթական դպրոցների և պրոֆտեխնիկական ուսումնարանների սկզբնական կոմերիտական կազմակերպություններում Շամշադինի շրջանի Վերին Կարմիրաղբյուրի կոմերիտական կազմակերպության փորձը: Գյուղի պիոներ-դպրոցականներից ավելի քան 200-ը մասնակցում են համամիութենական արշավին, արդյունավետ գործունեություն են ծավալում «Նրանք մարտնչում էին հայրենիքի համար», «Լենինյան դրոշով», «Կարմիր հետախույզներ» և թիմուրականների ջոկատները: «Մեծ Հայրենականի տարեգրություն» հետախուզական արշավախմբի ջանքերով համագյուղացիների հեղափոխական ու ռազմական սխրանքն արտացոլող հարյուրից ավելի նյութեր են ցուցադրվում մարտական փառքի թանգարանում: Ռազմահայրենասիրական դաստիարակության ինքնատիպ կենտրոն է դարձել մեծ Հայրենականում զոհված Վերին կարմիրաղբյուրցիների հիշատակը հավերժացնող հուշահամալիրում բացված սրահը: Այստեղ հանդիսավոր պայմաններում աշակերտներին ընդունում են լենինյան պիոներիայի շարքերը, հանձնվում են կոմերիտական տոմսեր, անցկացվում են բազմազան միջոցառումներ: Հանդիսավոր պայմաններում գյուղի վետերանները ողջերթի ջերմ խոսքեր են ուղղում զինակոչիկներին: Դպրոցականները սիրով են մասնակցում «Սպայի մասնագիտությունը հերոսական մասնագիտություն է» միջոցառմանը, որը մեծապես նպաստում է ռազմահայրենասիրական դաստիարակության ուժեղացմանը, սովորողների շրջանում զինված ուժերի, հայրենիքի պահապանների պատվավոր առաքելության նկատմամբ նվիրվածության և հարգանքի զգացման դրսևորմանը: Այդ գործին ակտիվորեն մասնակցում են դպրոցի շրջանավարտները՝ ռազմական տարբեր հաստատությունների սաներ, որոնք սովորողների առջև հանդես են գալիս զեկուցումներով, պատմում են իրենց առօրյայի մասին:

Կազմակերպվող ռազմահայրենասիրական և մարզական միջոցառումները ցանկալի արդյունք են տալիս: Բավական է նշել, որ վերջին երկու տարում դպրոցի վեց շրջանավարտներ ընդունվել են բարձրագույն ռազմական ուսումնարաններ, իսկ երկուսը՝ գործուղվել ռուսաց լեզվի և ռազմաֆիզիկական պատրաստության խորացված ուսուցման գիշերօթիկ դպրոց:

ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմների և շրջանային զինկոմիսարիատների սերտ համագործակցությունը, հանրակրթական դպրոցների և պրոֆտեխուսումնարանների կոմերիտական կազմակերպությունների ծավալած ագիտացիոն-պրոպագանդիստական նպատակամետ աշխատանքը նպաստել են ռազմական հաստատություններ գործուղվողների ճիշտ ընտրությանը: Այդ ջանքերի արգասիքն է, որ վերջին շրջանում կրկնապատկվել է հիշյալ կրթօջախներ մեր հանրապետությունից ընդունվողների թիվը:

Հայրենիքի հանդեպ ջերմ նվիրվածության, ինտերնացիոնալիզմի գաղափարներին հավատարմության պերճախոս օրինակ են Աֆղանստանում մարտական մկրտություն ստացած և կառավարական պարգևների արժանացած Արթուր Թուրվանդյանը, Վոլոդյա Շախվիկյանը, Արթուր Խաչանյանը և շատ ուրիշ երիտասարդ հայրենակիցներ: Միայն անհրաժեշտ է նրանց ավելի լայնորեն ներգրավել ռազմահայրենասիրական դաստիարակության գործում, ինչը, անշուշտ, կնպաստի վերջինիս արդյունավետության բարձրացմանը:

Հանրապետության կոմերիտական կազմակերպությունը երիտասարդության ռազմահայ-

րենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրները դիտում է անքակտելի միասնության մեջ, այդ ոգով էլ կազմակերպում է իր աշխատանքային գործունեությունը:

«Կոմերիտմիությունը ծնունդ է առել որպես ինտերնացիոնալիստների միություն և այդպիսին է եղել ամբողջ պատմության ընթացքում»,—նշվեց ՀամԼԿԵՄ XX համագումարում: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կուսակցությունն առանձնապես կարևորում է աճող սերնդի ինտերնացիոնալ գիտակցության ձևավորումը, նրա դասակարգային դիրքորոշման ամրապնդումը: Այս առնչությամբ նոր ու պատասխանատու խնդիրներ են ծառանում կոմերիտմիության առջև:

Ելնելով Անդրկովկասյան հանրապետությունների կուսկենտկոմների որոշումից՝ կոմերիտմիության Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կենտկոմները երիտասարդության ինտերնացիոնալ կապերի հետագա զարգացման նպատակով մշակել են համատեղ միջոցառումների պլան: Նրանում արտացոլված բազմաբնույթ խնդիրները ներառում են երեք հանրապետությունների քաղաքների, շրջանների և աշխատավորական կոլեկտիվների միջև ավանդական սոցիալիստական մրցությունը, պատվիրակությունների փոխայցելությունները, «Լավագույնը իր մասնագիտության մեջ» միջհանրապետական մրցույթները, ուսանողական շինարարական ջոկատների փոխանակումը, գեղարվեստական ինքնագործունեության փառատոների ու ցուցահանդեսների կազմակերպումը, «Մենք բարեկամությամբ ենք հզոր» նշանաբանով Անդրկովկասի պատանի ինտերնացիոնալիստների հավաքների անցկացումը և այլն:

Անդրկովկասյան ժողովուրդների բարեկամության հզոր ցույցի վերածվեց երեք հանրապետությունների ուսանողության գարնանային տոնը՝ «Ուսանողական գարուն» փառատոնի եզրափակիչ միջոցառումը, որը տեղի ունեցավ Երևանի մարզահամերգային համալիրում: Այդ տպավորիչ տոնահանդեսը տոգորված էր ջերմ ու կենսահաստատ զգացումների լիցքով:

Դիլիջան քաղաքի, Իջևանի և Նոյեմբերյանի շրջանների հանրակրթական դպրոցներում արմատավորվել են Վրաստանի ու Ադրբեջանի դպրոցականների հետ համատեղ կազմակերպվող ավանդական միջոցառումները: Յուրաքանչյուր ուսումնական տարվա վերջին Կարմիր կամրջի մոտ, որը երեք հանրապետությունների սահմանագիծն է, հանդիպում են Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի երիտասարդության ներկայացուցիչները: Դա սոսկ հանդիպում չէ, այլ փորձի փոխանակում, ապագայի համատեղ ծրագրերի մշակում:

Կոմունիստական դաստիարակության կարևոր օղակ են ինտերնացիոնալ բարեկամության ակումբները: Փառատոներ, պատվիրակությունների փոխանակումներ, նամակագրություններ, բանավեճեր, մրցույթներ, լուսանկարային ցուցահանդեսներ, էքսկուրսիաներ. այսպիսիք են այդ ակումբների ինտերնացիոնալ աշխատանքի ձևերն ու եղանակները: Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, գիտական, նախագծային-կոնստրուկտորական կոլեկտիվներում, բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում, պրոֆտեխուսումնարաններում ու հանրակրթական դպրոցներում գործում է ինտերնացիոնալ բարեկամության 95 ակումբ, որոնցում ընդգրկված են շուրջ 9000 պատանիներ ու աղջիկներ: Այդ ակումբները բարեկամական կապեր են հաստատել ՍՍՀՄ մյուս հանրապետությունների և արտասահմանյան երկրների 440 հասցեատերերի հետ: Նամակագրության միջոցով և փոխայցելությունների ժամանակ նրանք միմյանց պատմում են իրենց կատարած աշխատանքների մասին, ուսումնասիրում և վերլուծում դրական փորձը:

Լայն ու բազմազան են Սովետական Հայաստանի երիտասարդության ինտերնացիոնալ կապերը նաև արտասահմանյան երկրների առաջադիմական երիտասարդական կազմակերպությունների հետ: Սոցիալիստական երկրների երիտասարդական կազմակերպությունների ինտերնացիոնալ համագործակցության ինքնատիպ դպրոց են ուսանողների և աշակերտների փոխանակային ջոկատները: Սոցիալիստական ընկերակցության երկրների՝ ՉՍՍՀ-ի, ԳԴՀ-ի, ՀԺՀ-ի ներկայացուցիչներն ամեն տարի աշխատում են մեր հանրապետությունում՝ ուսանողական ջոկատների կազմում: Մեր ուսանողներն էլ մեկնում են աշխատելու սոցիալիստական տարբեր երկրներ: Նրանք ակտիվորեն մասնակցում են խոշոր կառույցների շինարարությանը, բերքահավաքին, օգնում սննդարդյունաբերության ձեռնարկություններին:

Տարեցտարի է՛լ ավելի գործարար ու բովանդակալից են դառնում հանրապետության երիտասարդների միջազգային կապերը: Բարեկամական փոխհարաբերություններ են հաստատված Հունգարիայի Դյոր-Շոպրոնի մարզի, Հարավսլավիայի Տիտոգրադ քաղաքի և ԳՖՀ-ի Հեսսենի երկրամասի, սփյուռքահայ երիտասարդական միությունների հետ: Տարեկան տասնյակ պատվիրակություններ են այցելում մեզ, նրանք ծանոթանում են հանրապետության տնտեսական, գիտական, մշակութային կյանքին: Բազմաթիվ արտասահմանցի



երիտասարդներ (Լիբանանից, Սիրիայից, Հունաստանից, Ալժիրից և այլ երկրներից) սովորում են հանրապետության բուհերում, ուր շրջապատված են հոգատար ու ջերմ վերաբերմունքով:

Արտասահմանցի սովորողների շրջանում կոմերիտմիության կոմիտեների կատարած աշխատանքի բարելավմանը մեծապես նպաստում են ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրներին նվիրված կոնֆերանսները, սեմինար-խորհրդակցությունները, փորձի փոխանակումները:

ՀԼԿԵՄ Կենտկոմը և հանրապետության երիտասարդական կազմակերպությունների կոմիտեն արտասահմանցի սովորողների շրջանում տարվող աշխատանքում առաջնակարգ տեղ են հատկացնում հայրենակցական և հասարակական կազմակերպությունների հետ նրանց կապերի հետագա ամրապնդմանը: Այդ աշխատանքների կոորդինացմանը և կատարելագործմանը մեծապես նպաստում են նորաստեղծ «Բարեկամություն» ինտերնացիոնալ ուսանողական խորհուրդները: Մեծ թվով արտասահմանցի ուսանողներ ընդգրկված են ուսանողական գիտական ընկերությունների կազմում, կատարում են գիտահետազոտական աշխատանք:

Կոմերիտական կազմակերպություններն ակտիվ գործունեություն են ծավալում արտասահմանցի ուսանողներին արդիականության հրատապ պրոբլեմներին իրազեկ դարձնելու նպատակով: Նրանց համար ստեղծված խմբակներում, բանավիճային ակումբներում քննարկվում են աշխարհում խաղաղության պահպանությանը, ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, մեր երկրի արտաքին ու ներքին քաղաքականությանը նվիրված հարցեր: Նրանք ակտիվորեն մասնակցում են ամեն տարի անցկացվող «Ուսանողական գարուն» փառատոնին, ինտերնացիոնալ համագործակցության ավանդական շաբաթներին, բարեկամության երեկոներին և միտինգներին: ՀԼԿԵՄ Կենտկոմում 1986 թ. դեկտեմբերին կազմակերպվեցին «Հայաստանը արտասահմանցի սովորողների աչքերով» ցուցահանդեսը և արտասահմանցի սովորողների գեղարվեստական ինքնագործ կոլեկտիվների ստեղծագործական հաշվետվությունը: Նույն թվականին Երևանի պետհամալսարանի ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնած «Գարունը հայրենիքում» գրական-երաժշտական կոմպոզիցիային մասնակցեցին ինչպես արտասահմանցի ուսանողներ, այնպես էլ Հայաստանում սովորող սփյուռքահայ երիտասարդներ: Այդ մասսայական միջոցառումների անցկացմանը գործուն կերպով օգնում են ինտերնացիոնալ բարեկամության ակումբները:

Արտասահմանցի ուսանողներն ակտիվորեն ընդգրկվում են ինտերնացիոնալ ուսանողական ջոկատներում: Օրինակ, 1987 թ. 357 ուսանողներ աշխատեցին Երևանի, Դիլիջանի, Հրազդանի շինարարական և այլ օբյեկտներում: Նրանց հետ կապը շարունակվում է նաև ուսումնառությունն ավարտելուց հետո: Հանրապետության բուհերը սերտ կապ են պահպանում իրենց շրջանավարտների հետ: Հալեպում, օրինակ, ստեղծվել է Երևանի բժշկական ինստիտուտն ավարտած ուսանողների միություն, որի հետ մշտական նամակագրություն է հաստատված:

Ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության որոշակի դրական փորձ է կուտակել Երևանի պետական համալսարանի ԼԿԵՄ կոմիտեն: Տարեցտարի ընդլայնվում է նրա ինտերնացիոնալ բարեկամության կապերի աշխարհագրությունը: Մոսկվա, Կիև, Վիլնյուս, Թբիլիսի, Տալլին, Նովոսիբիրսկ, Տարտու, ապա և՝ Բրատիսլավա, Լյուբլին, Ռոստոկ, Մոնպելյե, Բուդապեշտ, Հալե. ահա հասցեներ, որոնց հետ գիտական ստեղծագործական հարաբերությունների մեջ է համալսարանը: Այստեղ ինտերնացիոնալ բարեկամության կապերի ձևերն ու մեթոդները բազմազան են՝ գիտագործնական կոնֆերանսներ, ուսումնաարտադրական պրակտիկա, երիտասարդ գիտնականների, ուսանող երիտասարդների պատվիրակությունների փոխայցելություններ, բանավեճեր, փորձի փոխանակումներ, հասարակական-քաղաքական, կուլտուր-մասսայական միջոցառումներ: ԼԿԵՄ կոմիտեն կարևորում է այլազգի երիտասարդներին ընտրովի մարմիններում ընդգրկելը: Նրանց ներկայացուցիչները ընտրվել են կուրսային-ֆակուլտետային ԼԿԵՄ բյուրոների անդամներ, քարտուղարներ: Երկու տասնամյակից ավելի է, ինչ այստեղ գործում է ինտերնացիոնալ բարեկամության «Կռունկ» ակումբը, որը բարի համբավ է ձեռք բերել ինչպես Միությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս: «Կռունկը» սերտ կապեր է հաստատել Սովետական Միության 47 և արտասահմանյան 9 բուհերի ինտերնացիոնալ բարեկամության ակումբների հետ: Նամակագրության միջոցով նրանք միմյանց հաղորդակից են դարձնում իրենց ուսանողական առօրյային, ուսումնագիտական գործունեությանը, ուսումնասիրում և արմատավորում են բարեկամների աշխատանքի դրական փորձը:

Երիտասարդության ռազմահայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը եղել և մնում են հանրապետության երիտասարդական մամուլի, ՀՍՍՀ ռադիոհեռուստապետկոմի երիտասարդական և մանկապատանեկան հաղորդումների գլխավոր խմբագրությունների գործունեության հիմ-

նական ոլորտներից մեկը: Կրթել ազնիվ, քաջ, սոցիալիստական հայրենիքին նըվիրված երիտասարդ սերունդ՝ կոչված իրագործելու ծրագրված վիթխարի վերափոխումները. ահա երիտասարդական մամուլի հրատապ խնդիրը: Այդ առումով հատկանշական են «Ավանգարդ», «Կոմսոմոլեց», «Պիոներ կանչ» թերթերում պարբերաբար հրապարակվող «Պարտք», «Ծառայում են հայրենիքին», «Մենք ինտերնացիոնալիստներ ենք», «Անմահ է սխրանքը քո, հայրենիքի զինվոր», «Պիոներական բարեկամության փոխկանչ» խորագրերն ու թեմատիկ բաժինները, որոնցում զետեղված ակնարկներն ու հոդվածները ներկայացնում են սովետական բանակում ծառայող մեր հայրենակիցներին, մեր երկրի տարեգրության հերոսական էջերը, հայրենասիրության այն դասերը, որ նոր սերունդը պետք է քաղի անցյալի հեղափոխական ավանդույթներից:

Հայկական ՍՍՀ ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեի երիտասարդական հաղորդումների գլխավոր խմբագրությունը նույնպես հետևողականորեն պրոպագանդում է սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառավոր ավանդույթները: «Հավատարմություն», «Հոկտեմբեր—70», «Բարեկամության թևերով», «Հեղափոխության բարիկադներում», ռադիո և հեռուստատեսային բազմաթիվ այլ հաղորդումների թվարկումն իսկ վկայում է, թե որքա՜ն է կարևորվում ռազմահայրենասիրական դաստիարակությունը:

Այսուհանդերձ, հանրապետությունում երիտասարդության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ասպարեզում կատարած զգալի աշխատանքի հետ միասին դեռևս առկա են նաև լուծման կարոտ որոշակի խնդիրներ և պրոբլեմներ, որոնք չի կարելի անտեսել: Դաստիարակչական աշխատանքներում մեր վրիպումների հետևանքն է այն փաստը, որ զինակոչային տարիքի որոշ երիտասարդներ դառնում են քրեական հանցագործներ: Լրիվ չեն բացառվել զինվորական պարտքը չկատարելու, զինհավաքներին չներկայանալու դեպքերը: ԼԿԵՄ կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը պետք է լինի երիտասարդությանը հայրենիքի պաշտպանության համար նախապատրաստումը, որին կոչված են դպրոցները, պրոֆտեխուսումնարանները, բուհերը: Ցավոք, մի քանի շրջաններում և քաղաքներում խիստ աղքատ է նախնական զինվորական պատրաստվածության բազան:

Հայրենիքի ապագա պաշտպանների նախապատրաստման և ռազմահայրենասիրական դաստիարակության հետաքրքրական ու խոստումնալից ձևերից է մարզառողջական ճամբարների գործունեությունը: Սակայն ոչ մի քննադատության չի դիմանում այն իրողությունը, որ մինչև այժմ հանրապետությունում չկան մշտապես գործող այդպիսի ճամբարներ: Կամ եթե կան էլ (խոսքն Ապարանի և Ջառի ճամբարների մասին է), ապա կահավորված են ծայրաստիճան վատ և գտնվում են անմխիթար վիճակում: Ավելի մեծ ուշադրություն պետք է հատկացվի սպորտի տեխնիկական և ռազմակիրառական ձևերին: Ցավոք, ուսումնական հաստատություններում, արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկություններում չեն գործում սպորտային մոդելավորման, ռազմակիրառական բազմապիսի սեկցիաներ և թիմեր: Իսկ սրանք այնպիսի մարզաձևեր են, որոնք նյութական մեծ ծախսեր չեն պահանջում:

Առայժմ զինկոմիսարիատները ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմների հետ չեն կարողանում գործն այնպես կազմակերպել, որ զինակոչիկներին զինվորական ծառայության ուղարկելիս, հաշվի առնվեն նրանց հետաքրքրությունները, ԴՕՍԱԱՖ-ի դպրոցներում և պրոֆտեխուսումնարաններում նրանց ստացած մասնագիտությունը: Ճիշտ և խելամիտ տեղաբաշխումը կնպաստի այն բանին, որ նրանք արագ հարմարվեն զինվորական կյանքի պայմաններին:

Ինչ խոսք, երիտասարդության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ասպարեզում տեղ գտած թերությունների վերացումը կոմերիտական կազմակերպություններից պահանջում է ուժերի և կարողությունների առավելագույն լարում: Իսկական ինտերնացիոնալիստ-հայրենասերներ, մեր հեղափոխական ժամանակներին արժանի սերունդ դաստիարակելու գործը կոմերիտմիության առաջնահերթ խնդիրն է, նրա նվիրական ու վեհ պարտականությունը:



# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

**Մ. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նոր հորիզոններ բացեց սոցիալիզմի հետագա կատարելագործման, սովետական հասարակության համակողմանի զարգացման, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներով էկոնոմիկայի արմատական վերափոխման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գործում: Հասարակական կյանքի որակական վերափոխման պրոցեսում կուսակցությունը վճռական նշանակություն է տալիս աշխատավորական մասսաների, ողջ սովետական ժողովրդի կոմունիստական գիտակցականության, սոցիալական ակտիվության առավելագույն բարձրացմանը:

«Կուսակցությունը,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— գաղափարական ներգործության միջոցներն օգտագործում է գիտամատերիալիստական աշխարհընկալման լայն տարածման համար, կրոնական նախապաշարմունքների հաղթահարման համար...» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 231)**:

Մարքս-լենինյան աթեիզմի սոցիալական նշանակությունը, նրա անմիջական կապը սոցիալիստական հասարակության հրատապ պրոբլեմների հետ առաջին հերթին երևան է գալիս գիտաաթեիստական դաստիարակչական աշխատանքների իրագործման մեջ: Սոցիալիստական իրականության պայմաններում ՍՍՀՄ-ում հաստատվել է մասսայական աթեիստական գիտակցություն, սակայն մեզանում հավատացյալների թիվը դեռևս քիչ չէ, ուստի մարքսիստական աթեիզմի կարևոր խնդիրն է մնում ժամանակակից պայմանների և քաղաքական պահանջների ոգուն համապատասխան աթեիստական դաստիարակության համակողմանի և արդյունավետորեն գործող համակարգի կատարելագործումը, գիտամատերիալիստական դաստիարակության պրոցեսի արագացմանը առավել չափով նպաստելը:

Իմպերիալիզմի կողմից սոցիալիզմի դեմ սանձազերծած ժամանակակից գաղափարական պայքարում հատուկ տեղ է տրվում կրոնի և աթեիզմի հարցերին: ՍՍՀՄ-ում հավատացյալների, կրոնական կազմակերպությունների վիճակի և աթեիստական գիտակցության հաստատման, ինչպես նաև կրոնի ու աթեիզմի հետ կապված բազմաթիվ այլ պրոբլեմների նենգափոխումներով բուրժուական պրոպագանդան փորձում է վնաս հասցնել սոցիալիզմի զարգացմանը, ջլատել ՍՍՀՄ ժողովուրդների սոցիալական ու գաղափարական միասնությունը: «Իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմը»,— նշեց Մ. Ս. Գորբաչովը,— չի կարող որակվել այլ կերպ, քան որպես ագրեսիայի, ինֆորմացիոն իմպերիալիզմի հատուկ ձև, որը ոտնահարում է ժողովուրդների սուվերենությունը, պատմությունը, կուլտուրան» (նույն տեղը, էջ 123):

---

*ՍՈՂՈՄՈՆՅԱՆ ՄՅԱՍՆԻԿ ԿԱՐԱՊԵՏԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Երևանի Խ. Աբովյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի ավագ դասախոս:*

ՍՄԿԿ XXVII համագումարի և հետհամագումարյան պլենումների որոշումներում մեծ նշանակություն է տրվում սովետական մարդու գաղափարական դաստիարակությանը, որի կարևորագույն բաղադրիչներից են գիտական աշխարհայացքի հաստատումը և աթեիստական համոզվածության ձևավորումը: Սովետական մարդկանց մեջ աթեիստական համոզվածության ձևավորումը ինքնանպատակ չէ, այն հանդիսանում է կոմունիստական դաստիարակության անկապտելի մասը:

Անհատի սոցիալական ակտիվության կարևորագույն պայմաններից է նրա աթեիստական համոզվածությունը, քանի որ կրոնը մարդուն դատապարտում է սոցիալական պասսիվության, հայեցողական ապրելակերպի: Իսկ աթեիստական դաստիարակության խնդիրն այդ կապանքներից մարդուն ազատելն է: Ահա թե ինչու գաղափարախոսական աշխատանքը պետք է ուղղված լինի սովետական մարդկանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, ինչպես նաև բուրժուական գաղափարախոսության, անցյալի արատավոր մնացուկների, այդ թվում նաև սնոտիապաշտության ու կրոնական հայացքների դրսևորումների դեմ:

Մարդու կենսագործունեության հիմնական բնագավառը, նրա կարողությունների դրսևորման գլխավոր ոլորտը արտադրությունն է, բնության վերափոխումը՝ իր պահանջմունքներին ու շահերին համապատասխան: Ժամանակակից արտադրության զարգացումը մեծապես պայմանավորված է գիտատեխնիկական նվաճումները արտադրության մեջ ներդնելու աստիճանով: Ավելին, դրսևորվելով արտադրության միջոցների ու արտադրության տեխնոլոգիայի, ինչպես նաև աշխատողների գիտելիքների, հմտությունների ու կարողությունների ձևով՝ գիտությունը վերածվում է անմիջական արտադրողական ուժի: Կ. Մարքսը նկատել է, որ «հիմնական կապիտալի զարգացման մակարդակը այն բանի ցուցանիշն է, թե հասարակական գիտությունները, ընդհանրապես գիտությունը մինչև ինչ աստիճանի են վերածվել անմիջական արտադրողական ուժի...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. II, стр. 215):

Հասարակական բազիսի փոփոխությունն իր հերթին էական փոփոխություններ է առաջացնում նաև մարդկանց հոգևոր կյանքում, նրանց աշխարհայացքում, այդ թվում և կրոնի նկատմամբ նրանց ունեցած վերաբերմունքում:

Քանի որ գիտատեխնիկական առաջադիմությունն արմատապես վերափոխում է ժամանակակից արտադրողական ուժերը, այդ պատճառով այն չի սահմանափակվում միայն գիտության ու տեխնիկայի վերափոխմամբ: Առաջին հերթին այն ներառում է հասարակության գլխավոր արտադրողական ուժը՝ մարդուն: Իսկ դա նշանակում է, որ անհնարին է հասկանալ գիտատեխնիկական առաջադիմության էությունը, առանց նկատի ունենալու այն փոփոխությունները, որոնք նա հարուցել է մարդու ամենօրյա աշխատանքում, կենցաղում, սոցիալ-տնտեսական հարաբերություններում, վերջին հաշվով նաև՝ աշխարհայացքում:

Բուրժուական հասարակության տնտեսակարգում գիտատեխնիկական առաջադիմությունը հակասական ներգործություն է ունենում նաև մարդկանց հոգևոր կյանքի, նրանց աշխարհայացքի զարգացման վրա: Տիրապետող դասակարգից ու իշխանությունից հուսախաբված, ապագայի նկատմամբ անվստահ մարդն ավելի դյուրությամբ կարող է կրոնական գաղափարախոսության զոհը դառնալ: Կրոնը ձգտում է հիասթափված, սոցիալական միջավայրում հեռանկար չունեցող մարդկանց իր կողմը գրավել:

Մարդկությունը թևակոխել է գիտատեխնիկական քաղաքակրթության դարաշրջան, և մարդկանց նորանոր խմբեր են ազատագրվում կրոնի տիրապետությունից: Եկեղեցին փորձում է ստեղծված դրության մեջ վերականգնել կորցրած հեղինակությունը: Նրա սպասավորները հստակ կերպով պատկերացնում են կրոնական աշխարհայացքի ճգնաժամը, օրըստօրե մեծացող աշխարհականացման միտումները, մարդկանց աճող հակումը դեպի երկրայինը: Բարձրաստիճան կրոնավորները ցավով են նշում, որ մարդկանց մեջ լայնորեն արմատավորվում են աթեիզմն ու կրոնական անտարբերությունը: Արդի պայմաններում ստեղծված ճգնաժամից դուրս գալու համար որոնումներում եկեղեցին աշխատում է սոցիալական դոկտրինայի և քաղաքական կողմնորոշման ու գաղափարախոսական կոնցեպցիաների, ծիսակարգի փոփոխությունների միջոցով պահպանել իր կորուսյալ դիրքերը, դառնալ XX դարի մարդու մտքի և հոգու «թարգմանը»:

Կրոնական գաղափարախոսները երբեք այդքան ջանքեր չեն թափել, որպեսզի մոտ կանգնեն մարդուն, նրա խոհերին ու ձգտումներին, այնպես չեն փորձել արձագանքել աշխարհում դիտվող բարդ սոցիալ-քաղաքական իրադարձություններին,



ինչպես մեր օրերում: Ճգնաժամից դուրս գալու համար եկեղեցու սպասավորները գտնում են, որ պետք է երկխոսություն սկսել՝ կրոնական, գիտական, մշակութային, սոցիալական և քաղաքական մակարդակներում, համաձայնեցման եզրեր գտնել գիտության և կրոնի միջև, հաղորդակից դառնալ մշակույթի արդի նվաճումներին, պաշտպանել պետությունների խաղաղ գոյակցությունը, բոլոր ազգերի իրավահավասարությունը և այլն:

Գիտատեխնիկական առաջընթացը հանգեցնում է մարդկանց աշխարհայացքի փոփոխության, որի դեպքում նրանց աշխարհըմբռնողության մեջ կրոնական հավատի ու գերբնական ուժերի մասին պատկերացումներն ավելի ու ավելի քիչ դեր են կատարում: Ժամանակակից գիտության, տեխնիկայի և տեխնոլոգիայի բազայի վրա աշխատանքի կուլտուրայի բարձրացումն է՛լ ավելի է մեծացնում բնության նկատմամբ մարդու իշխանությունը, ձևավորում լավատեսական հոգեբանություն, վստահություն բանականության և մարդկանց ստեղծագործական ուժի նկատմամբ: Գիտատեխնիկական առաջադիմությունը խոր ազդեցություն է թողնում ոչ միայն հասարակական կյանքի տնտեսական ու սոցիալական ոլորտի, այլև նրա հոգևոր կյանքի վրա, ազդում է հավատացյալների առօրյա գիտակցության և վարքի, կրոնական գաղափարախոսության և կրոնական կազմակերպությունների պրակտիկայի վրա:

Անկասկած, կրոնի և եկեղեցու ճգնաժամի պատճառներից մեկն էլ գիտության ու տեխնիկայի զարգացումն է: Օգտվել ժամանակակից բարդ սարքավորումներից, ունենալ մարդկային նպատակների և պահանջմունքների իրագործման հսկայական տեխնիկական միջոցներ և միևնույն ժամանակ հավատալ հոգիների ու նոր կտակարանային հրաշքների աշխարհին՝ հնարավոր չէ:

Գիտությունը մարդկանց աշխարհայացքային պատկերացումների վրա ազդում է երկու ճանապարհով՝ անմիջական ազդեցությամբ, երբ գիտական նոր հայտնագործությունները հերքում են կրոնական պատկերացումները և ապա՝ միջնորդավորված ձևով: Դառնալով անմիջական արտադրողական ուժ, գիտությունը պլանավորում է արտադրությունը, կարգավորում հասարակական հարաբերությունները և միջնորդավորված ձևով մարդկանց նյութական, կենցաղային գործունեության ոլորտից դուրս մղում կրոնական նախապաշարմունքներն ու պատկերացումները: Դրանով իսկ գիտատեխնիկական առաջադիմությունը վերածվում է մարդկանց աթեիստական դաստիարակության մշտապես գործող հզոր միջոցի:

Գիտության ու տեխնիկայի զարգացումն անհրաժեշտաբար հանգեցնում է կրոնի ելակետային սկզբունքների աստիճանական վերացմանը: Այլ կերպ ասած, իրականության գիտական ճանաչողությունն ու դրա խորացումը այն էական պայմաններից են, որոնցով հերքվում է կրոնական աշխարհայացքը:

Կրոնի վրա գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը գնահատելիս հարկավոր է ելնել նրանից, թե ինչ չափով է գիտատեխնիկական առաջադիմությունը ներդրվել արտադրության և հասարակական կյանքի մյուս բնագավառներում, որքանով է այն արտահայտում մարդկանց շահերը, պահանջմունքները, նրանց առօրյա հոգսերը, կենցաղը և այլն:

Կապիտալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջադիմությունը փոխանակ հեշտացնելու բանվորի աշխատանքը և կրճատելու նրա աշխատանքային օրը, ընդհակառակը, վիթխարի չափով ինտենսիվացնում է այն, նվազագույնի հասցնում մարդու ազատ ժամանակը և բանվորից կորզում նրա կենսական բոլոր ուժերը: Մեքենան և ավտոմատ սարքերը կապիտալիզմի պայմաններում բանվորին չեն ազատում աշխատանքի ծանրությունից: Ավելին, դրանք ծայրահեղորեն լարում են նյարդային համակարգը և մարդուն զրկում ազատ գործունեության հնարավորությունից: Այս ամենի հետևանքով մարդը զրկվում է սեփական կամքից և վերածվում մեքենայի կցորդի: Կ. Մարքսը նշում է, որ «մեքենայական աշխատանքը ծայրահեղ չափով ընդգրկելով նյարդային համակարգը, ճնշում է մկանների բազմակողմանի խաղը և մարդուց խլում է մարմնական ու հոգեկան ազատ գործունեության ամեն մի հնարավորություն: Մինչև անգամ աշխատանքի թեթևացումը դառնում է տանջանքի աղբյուր, որովհետև մեքենան ո՛չ թե բանվորին է ազատում աշխատանքից, այլ նրա աշխատանքը՝ ամեն մի բովանդակությունից» (Կ. Մարքս, **Կապիտալ**, հ. 1, «Հայպետհրատ», 1954 թ., էջ 444):

Կապիտալիստական հասարակության պայմաններում արտադրության մեջ գիտատեխնիկական նորագույն նվաճումների կիրառումը ուղղվում է աշխատավորների

դեմ և հենց դրանով է բացատրվում այն փաստը, որ տեխնիկապես զարգացած կապիտալիստական երկրներում գործազուրկների քանակը միլիոնների է հասնում:

Փորձելով հնարավորության սահմաններում պահպանել իրենց դիրքերը, հարմարվել պատմական ու գաղափարական նոր պայմաններին, կրոնի տեսաբանները վերցրել են կրոնի դրույթներին ու դոգմաներին ժամանակակից «գիտական տեսք» տալու ընդհանուր կուրս: Այդպիսի կուրսի կոչ է արվել պապական մի շարք կոնդակներում («Խաղաղություն աշխարհին», «Առաջադիմություն ժողովուրդներին» և այլն):

Գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ մարդու իշխանությունը բնության նկատմամբ աճում է՝ հանգեցնելով աստծու գոյությունը ժխտելու տեսակետին: Կաթոլիկ եկեղեցին և նրա սպասավորները, ըստ պապի հավաստիացման, պետք է մի կողմից յուրացնեն տարբեր գիտությունների նվաճումները՝ կրոնական բացատրություն տալու նրանց, մյուս կողմից՝ հոգեպես ու բարոյապես այնքան կայուն լինեն, որպեսզի կարողանան պահպանել քրիստոնեական դոգմաների անձեռնմխելիությունը:

Եկեղեցին, ճիշտ է, չի ժխտում սոցիալական առաջադիմության փաստը, բայց դրանով հանդերձ, նա այդ երևույթին տալիս է կրոնական մեկնաբանություն, հայտարարելով, թե սոցիալական առաջադիմությունը թերի է առանց կրոնի:

Գիտատեխնիկական առաջադիմության էությունը, բանականության աճող դերը, մարդու ստեղծագործական էությունը մեծապես նպաստում են առավել ակտիվորեն օգտագործելու բնական, տեխնիկական և հասարակական գիտությունների աշխարհայացքային պոտենցիալը, բացահայտելու և ընդարձակելու մարդու հոգեկան կարողությունների շրջանակները:

Խոշոր սոցիալական անցքերի դարաշրջանում քրիստոնեական եկեղեցին կորցնում է քաղաքական ու հոգևոր տիրակալի իր երբեմնի դերը, թուլանում են նրա ազդեցությունն ու հեղինակությունը հավատացյալների ստվար մասսաների, ամենից առաջ աշխատավորության շրջանում:

Հանրահայտ է, որ գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական առաջադիմությանը կրոնը ոչնչով չի օժանդակել, ընդհակառակն, այն հաճախ խոչընդոտել, արգելակել է իմացության, գիտության զարգացմանը:

Մեր երկրում աթեիստական դաստիարակության հիմնական մեթոդը **համոզման** մեթոդն է: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, «Խղճի ազատության մեր սահմանադրական երաշխիքներն ամենքին հայտնի են: Կոմունիստները հետևողական աթեիստներ են, բայց իրենց աշխարհայացքը նրանք ոչ ոքի չեն պարտադրում: Մեր մեթոդը լուսավորությունն է, համոզումները, պրոպագանդան» **(ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը,** 14—15 հունիսի, 1983 թ. էջ 68):

Սոցիալիստական ապրելակերպը, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումներն ու դրսևորումները աստիճանաբար մարդկանց գիտակցության մեջ հետին պլան են մղում կրոնական պատկերացումներն ու հավատալիքները և նրանց ամենօրյա գործունեությունն ուղղում հասարակական-քաղաքական պրակտիկ խնդիրների իրագործմանը, որն էլ կրոնական պատկերացումների հաղթահարման կարևոր նախադրյալներից է:

Արտադրության մեջ ժամանակակից գիտական ու տեխնիկական նվաճումների, մեքենաների ու մեխանիզմների արմատավորումը պահանջում է աշխատողի համապատասխան որակավորում, հանրակրթական և պրոֆեսիոնալ պատշաճ պատրաստություն: Այդ ամենն իր հերթին ազդում է մարդու մտահորիզոնի, նրա աշխարհազգացման և աշխարհընկալման վրա:

Հայտնի է, որ աշխատավորների կրոնատածության աստիճանը աներկբայելի կապ ունի նրանց աշխատանքային գործունեության բնույթի, որակավորման մակարդակի հետ: Որքան ավելի բարձր է մարդկանց արտադրական որակավորումը, այնքան նրանք ավելի են կապված առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի հետ, այնքան կրոնը պակաս է ազդում նրանց վրա և ընդհակառակը: Մեր երկրի որոշ հանրապետություններում ու մարզերում վերջին տարիներին կատարած սոցիոլոգիական հետազոտությունները ցույց են տալիս, որ գիտատեխնիկական առաջադիմության և սոցիալիստական ապրելակերպի ազդեցությամբ բնակչության տարբեր խմբերի ու խավերի շրջանում կրոնական պատկերացումներն ու հավատալիքներն արագ կերպով անհետանում են: Այդ հետազոտությունները միաժամանակ վկայում են, որ մեր երկրի բնակչության գերակշռող մասը համոզված աթեիստներ են, որոնք տիրապետում են գիտական աշխարհայացքին: Աթեիստների տեսակարար կշիռը հատկապես մեծ է երիտասարդության շրջանում:



Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ կրոնական վերապրուկների աստիճանական հաղթահարման պրոցեսը բնութագրվում է մի շարք առանձնահատկություններով: Դրանցից առաջինը, անշուշտ, պետք է համարել այն, որ բնության երևույթների ավելի խոր ու բազմակողմանի իմացության շնորհիվ գերբնական նկատմամբ մարդկանց հավատն ու պատկերացումները հետզհետե վերանում են: Գիտատեխնիկական առաջադիմությունը օբյեկտիվ պահանջ է ներկայացնում՝ բարձրացնելու աշխատավորների հանրակրթական և պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակը: Ընդլայնելով իր իմացությունը շրջակա աշխարհի, նրա զարգացման օրենքների մասին, մարդը գիտական դիրքերից ավելի խորապես է գիտակցում դրանում իր տեղը, կյանքի նպատակն ու իմաստը: Այլ կերպ ասած՝ այս միտումի էությունն այն է, որ հավատացյալը նույնպես գործնական առումով երբեք հույսը գերբնականի հետ չի կապում: Սա առաջին հերթին վերաբերում է մարդկային գործունեության հիմնական բնագավառին՝ արտադրական-գիտաաշխատանքային գործունեությանը, ինչպես նաև հասարակական-քաղաքական հարաբերություններին:

Սոցիալիստական հասարակության քաղաքացու, այդ թվում հավատացյալի գիտակցության մեջ ամրագրված է այն ճշմարտությունը, որ ինքն է իր աշխատանքի ու արդյունքի տերը, և որ մարդուն երկնքից ոչինչ չի տրվում, այլ ամեն ինչ ստեղծվում է աշխատանքով: Այդ ամենը մարդկային գիտակցությունը բարձրացնում է սոցիալական ու հոգևոր արժեքների ճանաչման ու գնահատման որակապես նոր մակարդակի, հետևաբար և կրոնի նկատմամբ առաջացնում նոր վերաբերմունք: Հավատի և նրա նկատմամբ մարդկանց վերաբերմունքի փոփոխության երկրորդ միտումը կրոնական պատկերացումների նկատելի ձևախեղումն է, մասնավորապես այն, որ աստիճանաբար ավելի անկայուն են դառնում կրոնական պատկերացումները մարդու և նրա աշխատանքի, շրջապատող իրականության ծագման, տիեզերքում երկրի տեղի, կենդանական ու բուսական աշխարհի ծագման ու զարգացման և բնական այլ երևույթների մասին:

Ծարունակելով հավատալ կրոնական դոգմաներին, ժամանակակից հավատացյալների մեծ մասը միաժամանակ հավատում է նաև գիտությանը՝ գիտակցաբար թե անգիտակցաբար ռեալ կյանքի գնահատման չափանիշը դարձնելով գիտությունը: Գիտակցում, թե չեն գիտակցում իրենք հավատացյալները, այնուամենայնիվ, նրանց ամենօրյա գործունեության մեջ ավելի ու ավելի հստակորեն է դրսևորվում կրոնական դոգմաների նկատմամբ անվստահությունը:

Հավատի բովանդակության փոփոխությունը դրսևորվում է ոչ միայն կրոնական պատկերացումներում, այլև հավատացյալների վարքագծում, արարքներում: Սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլը, գիտատեխնիկական առաջադիմությունը գործնականորեն համոզում են մարդուն, որ նրա ապրելակերպում կրոնական շարժառիթը գլխավոր լինել չի կարող, և որ նրա վարքագծի գլխավոր ելակետը օբյեկտիվորեն դառնում է գիտական աշխարհայացքը: Գիտամատերիալիստական աշխարհայացքը տիրապետող է դարձել մտավորականության, ծառայողների, ինչպես նաև բարձր արտադրական որակավորում ունեցող բանվորների շրջանում: Փաստերը վկայում են, որ կրոնական հավատալիքներն ու պատկերացումներն ավելի շատ տարածված են հանրային արտադրությունից կտրված ազգաբնակչության՝ տնային տնտեսուհիների, թոշակառուների շրջանում, գյուղատնտեսության բնագավառի այն աշխատողների մոտ, ովքեր զբաղված են ծանր ֆիզիկական աշխատանքով:

Հայտնի է, որ աթեիստական դաստիարակության նպատակը ոչ միայն կրոնական աշխարհայեցողության քննադատությունն է, այլև հումանիստական արժեքների հաստատումը: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարում շեշտվեց այն կարևոր հանգամանքը, որ անհրաժեշտ է ավելի ակտիվորեն պրոպագանդել գիտամատերիալիստական աշխարհայացքը բնակչության շրջանում, ավելի մեծ ուշադրություն դարձնել աթեիստական դաստիարակությանը: Իսկ այդ գործում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների օգտագործումը, նրա աշխարհայացքային և գործնական նշանակության պարզաբանումը խիստ անհրաժեշտ են:

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԽՈՀՈՒԹՅԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐՈՎ

**Մ. ՍԱՐԳՍՅԱՆ**

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ու կղերական գաղափարախոսությունը անհիմն հորինվածքներ է տարածում հայ ժողովրդի պատմության մեջ կրոնական գործոնի ունեցած իբր որոշիչ դերի, հայկական մշակույթի կրոնական-եկեղեցական ակունքների, հայերի խոր կրոնասիրության ու եկեղեցու նրանց անվերապահ պաշտպանության մասին և այլն: Հայաստանի բոլոր առաջադեմ մտածողներին վերագրվում է կրոնական ուղղահավատություն, իսկ բոլոր եկեղեցական գործիչներին՝ վճռորոշ ծառայություններ սոցիալական, գիտական ու մշակութային առաջադիմության գործում:

Հայտնի է, որ դեռ միջին դարերում հայ աշխատավոր զանգվածների շրջանում տարածվել էին ժողովրդական ոգու այնպիսի դրական երևույթներ, ինչպես հակակղերականությունն ու ազատախոհությունը, որոնք աթեիզմի ձևավորման կարևոր փուլ են եղել:

Միջնադարում հայ ժողովրդի պատմությունը չափազանց հարուստ է եղել սոցիալական ստորին խավերի հակաֆեոդալական ելույթներով, զանգվածային շարժումներով, որոնք ուղղված էին ոչ միայն տիրապետող դասակարգերի, այլև դրանց պաշտպանող քրիստոնեական եկեղեցու դեմ, որը Ֆ. Էնգելսի բնութագրմամբ, հանդես էր գալիս որպես «գոյություն ունեցող ֆեոդալական կարգերի առավել ընդհանուր սինթեզ և առավել ընդհանուր սանկցիա» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 7, стр. 361): Անդրադառնալով այս հարցին, Վ. Ի. Լենինը նշել է. «Հայտնի է գյուղացիության մեջ աղանդավորության ու ռացիոնալիզմի աճի փաստը, իսկ կրոնական կեղևի տակ քաղաքական բողոքի հանդես գալը մի երևույթ է, որը զարգացման որոշ աստիճանի վրա հատուկ է բոլոր ժողովուրդներին...» (ԵԼԺ, հ. 4, էջ 288—289):

Քանի որ ֆեոդալական հասարակարգում «մասսաների զգացմունքները սնուցված են եղել բացառապես կրոնական սննդով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 314) և իրենց սոցիալական պահանջմունքներն էլ նրանք ընկալում էին գերազանցապես կրոնական ձևով, ապա ժողովրդական ելույթներն ընդունում էին հերետիկոսական շարժումների ձև: Համանման իրավիճակ գոյություն ուներ նաև միջնադարյան Հայաստանում: Ժողովրդական զանգվածների ելույթներն այստեղ առանձնապես մեծ թափ ստացան և բացառիկ սրության հասան, երբ Հայաստանը կորցրեց պետական անկախությունը՝ երկիրը զավթեցին արաբները: Դա ուղեկցվեց սոցիալական և ազգային ճնշման շեշտակի ուժեղացմամբ: Ժողովրդական ելույթի սոցիալական բազան գլխավորապես գյուղացիներն էին, ինչպես նաև արհեստավորներն ու քաղաքի չքավորությունը, իսկ գաղափարախոսությունը՝ պավլիկյան հերետիկոսությունը (այդպես է անվանվել Պողոս առաքյալի անունով), որի գաղափարները հերետիկոսները հակադրում էին քրիստոնեական եկեղեցու պաշտոնական ուսմունքին:

Ապստամբները հանդես էին գալիս սոցիալական անհավասարության դեմ՝ պահանջ առաջադրելով սոցիալական հավասարություն հաստատել մարդկանց ու դասերի միջև: Նրանք դատապարտում էին աշխարհում տիրող չարիքը, ճնշումը, մարդու շահագործումը մարդու կողմից, հարուստների պորտաբույծ գոյությունը, անօրինական ճանապարհով հարստություն ձեռք բերելու ձգտումը և այլն:

Պավլիկյանների շարժումը, իր սոցիալական էությամբ լինելով հակաֆեոդալական, ստացել էր նաև վառ արտահայտված հակաեկեղեցական ուղղվածություն: Պավլիկյանները մերժում էին Հին կտակարանը (Աստվածաշնչի նախաքրիստոնեական մասը, որ եկեղեցին վերցրել էր եբրայական կրոնից) սոցիալական անհավասարության ջատագովությամբ և կանանց ու տղամարդկանց անիրավահավասարության պաշտպանությամբ: X դարի կրոնական գործիչ Պետրոս Սիկիլիացին իր «Օգտակար պատմություն» գրքում պավլիկյանների մասին գրում էր. «Նրանք չեն ընդունում Հին կտակարանի գրքերը՝ մարգարեներին անվանելով խելագարներ ու խաբեբաներ»: Դրանով իսկ խարխլվում էին դոգմատիկական հիմքերը քրիստոնեության, որն իր հիմնական կրոնական գաղափարները քաղում էր Աստվածաշնչից, այդ թվում և Հին կտակարանից:

Պավլիկյանները ժխտում էին Հիսուս Քրիստոսի մարդկային էությունը, մերժում նրա երկրային կյանքի ավետարանական նկարագրությունները, որը ժողովրդական զանգվածների մեջ անվստահություն էր ծնում պաշտոնական քրիստոնեության նկատմամբ, խարխլում Քրիստոսի եկեղեցական պաշտամունքը: Նրանք բոլորովին բանի տեղ չէին դնում խաչը՝ քրիստոնյաների հիմնական պաշտամունքներից մեկը: Պետրոս Սիկիլիացու խոսքերով ասած, «երկրպագվող և կենարար խաչի կերպարը, ներգործությունն ու ուժը նրանք չեն ընդունում և այն ենթարկում են ամեն տեսակ անարգանքների»: Նրանք առանձնապես սուր քննադատության էին ենթարկում պատկերապաշտությունը: Մերժելով քրիստոնեական ծեսերը, պավլիկյանները ժխտում էին նաև այդ ծեսերի կազմակերպիչների գոյության անհրաժեշտությունը, այսինքն՝ ավելորդ էին համարում բուն հոգևորականությունը: Ուստի և պարզ է դառնում, թե ինչու պավլիկյանների շարժման դեմ աշխարհիկ ու եկեղեցական ավատատերերը հանդես էին գալիս միասնական ճակատով: Ժողովրդական գիտակցության մեջ խոր թափանցել էր աշխարհիկ և եկեղեցական կեղեքիչներին ցույց տրվող դիմադրության ոգին:

Հակակղերականության և ազատամտության այդ սերմերն առատ ծիլեր տվեցին ոչ միայն միջնադարյան Հայաստանում, այլև ուրիշ, և ընդսմին ոչ միայն սահմանակից երկրներում: Մասնավորապես, բազմաթիվ աղբյուրներ վկայում են, որ պավլիկյան հերետիկոսությունը թափանցել էր Բյուզանդիա, Բուլղարիա, Իտալիա, Ֆրանսիա և մի շարք այլ երկրներ: Պավլիկյան հերետիկոսությունն ազդել էր նաև ավելի ուշ շրջանի ժողովրդական շարժումների գաղափարախոսության վրա, որոնցից խոշորագույնն էր թոնդրակեցիների ելույթը: Վերջինս ընդհանուր առմամբ շարունակվեց մոտ երեք հարյուրամյակ և ընդգրկել էր հսկայական տարածք: Դա ընչազուրկների, ամենից առաջ գյուղացիների ելույթ էր, որոնց դաժանորեն շահագործում էին ստրկացված գյուղացիության աշխատանքով մշակվող հողային մեծ տիրույթներն իրենց ձեռքում կենտրոնացրած ինչպես աշխարհիկ, այնպես էլ եկեղեցական ավատատերերը: Այդ շարժումն սկսվեց IX դարում և ընդգրկեց միջնադարյան Հայաստանի բազմաթիվ շրջաններ:

Դա ֆեոդալական հարաբերությունների հետագա խորացման ժամանակաշրջանն էր, որն սկսվել էր սոցիալական մի ամբողջ շարք գործոնների ազդեցությամբ: Նախ և առաջ երկիրն ազատագրվել էր արաբ նվաճողների տիրապետությունից, վերականգնվել էր Հայաստանի անկախությունը, ինչպես նաև նախադրյալներ էին ստեղծվել արտադրողական ուժերի զարգացման համար: Վերածնվում են հին քաղաքները, կառուցվում նորերը: Այդ քաղաքներում զարգանում են արհեստները, դա խթանում էր ապրանքային արտադրության ընդլայնումը, որն ապրանքադրամական հարաբերությունների ոլորտն է ներքաշում ֆեոդալների տնտեսությունները: Ձգտելով առավելագույն շահույթ կորզել շուկայից, ավատատերերը խոշորացնում են իրենց տնտեսությունները համայնական հողերի հաշվին և ուժեղացնում ճորտացված գյուղացիների շահագործումը, որը չէր կարող պատասխան ռեակցիա չառաջացնել կեղեքված ու ստրկացված զանգվածների շրջանում: Օբյեկտիվ նախադրյալներ էին ստեղծվում հակաֆեոդալական զանգվածային ելույթների համար: Բայց քանի որ ֆեոդալական տիրույթներ ունեին նաև կրոնական գործիչներն ու վանքերը, որոնք ֆեոդալական ճնշումը արդարացնում էին աստծու հեղինակությամբ, ապա այդ ելույթները պետք է ստանային հակաեկեղեցական բնույթ, ընդունեին հերետիկոսության ձև:

Ի հակակշիռ Հիսուս Քրիստոսի՝ որպես աստծու (կամ մարդ-աստծու) մասին պաշտոնական եկեղեցական ուսմունքի, թոնդրակեցիները մարդկայնացնում էին նրան և դիտում որպես իրենց ուսուցչի, որը երկրային էր դարձնում այդ կերպա-

---

*ՍԱՐԳՍՅԱՆ ՄԱԼԽԱՍ ԿՈՆՍՏԱՆՏԻՆԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Երևանի պետական համալսարանի աթեիզմի պատմության և տեսության միջբուհական ամբիոնի դասախոս*

րը: Դրանով էլ քրիստոնեությունը ներկայանում էր ոչ թե որպես աստվածահայտ կրոն, այլ որպես մարդկային ձեռքերի գործ, սովորական մահկանացուի գործունեության արդյունք: Ժխտելով աստծու եկեղեցական մեկնությունը, թոնդրակեցիները ժխտում էին հոգու անմահության գաղափարը և այդ գաղափարի հետ կապված բոլոր պատկերացումները հանդերձյալ կյանքի մասին: Մինչդեռ այդպիսի պատկերացումները շատ կարևոր էին քրիստոնեական եկեղեցու համար, որը դրանք օգտագործում էր հավատացյալների վրա ճնշում գործադրելու նպատակով՝ վերջիններիս վախեցնելով դժոխքի ուրվականով, եթե նրանք չհնազանդվեն աշխարհիկ և եկեղեցական իշխանություններին: Քրիստոնեական տաճարների ծխականներին գայթակղում էին դրախտային երանությամբ, պայմանով, որ նրանք համբերատարությամբ կրեն երկրային կյանքի դժվարությունները, այդ թվում և անողոք շահագործումը:

Թոնդրակեցիների արմատական հակակղերական պահանջները չէին կարող չհուզել ոչ միայն բոլոր աստիճանների հոգևորականներին, այլև աշխարհիկ տիրակալներին, որոնց համար պաշտոնական քրիստոնեական եկեղեցին գաղափարախոսական ամուր հենարան էր: Ուստի և զարմանալու ոչինչ չկա, որ թոնդրակեցիների հալածանքներին անմիջականորեն մասնակցում էին ինչպես եկեղեցական, այնպես էլ աշխարհիկ ֆեոդալները: Եկեղեցին անում էր իրենից կախված ամեն ինչ, որպեսզի վարկաբեկի թոնդրակեցիներին ու նրանց գաղափարները, քրիստոնեական տաճարների ծխականներին հանել ապստամբների դեմ: Աշխատելով արմատախիլ անել թոնդրակեցիների տարածած ազատամտությունը, եկեղեցական և աշխարհիկ իշխանությունները ձեռնամուխ եղան ոչնչացնելու ոչ միայն իրենց՝ ապըստամբներին, այլև այն երկերը, որոնցում շարադրված էր թոնդրակեցիների հերետիկոսությունը:

Սակայն ո՛չ թոնդրակեցիների շարժման դաժան ջախջախումը, ո՛չ նրա մասնակիցներին հալածելը, ո՛չ քրիստոնեության հետևորդների աչքում թոնդրակյան հերետիկոսությունը վարկաբեկելու փորձերը չկարողացան ոչնչացնել ֆեոդալական եկեղեցու դեմ թոնդրակեցիների մղած պայքարի գաղափարախոսական հետևանքները: Այդ շարժումը հայ ժողովրդի սոցիալական և ազգային-ազատագրական պայքարի կարևոր փուլը եղավ և նկատելի հետք թողեց Հայաստանի պատմության, այդ թվում և հայկական հակակղերականության ու ազատամտության պատմության մեջ:

Միջնադարյան Հայաստանի ժողովրդական զանգվածների ազատամտությունը, որը մարմնավորվել է պավլիկյանների և թոնդրակեցիների հակակղերականության մեջ, գեղարվեստական արտահայտություն է գտել հայ ժողովրդի հարուստ ու բազմապիսի բանավոր ստեղծագործությունում: Այդ պատճառով էլ հայկական ժողովրդական բանահյուսությունը եղել ու մնում է որպես աշխատավորների աթեիստական դաստիարակության կարևոր գործոն:

Ժողովրդական ազատամտությունը խոր ու համակողմանի արտահայտված է հայկական «Սասունցի Դավիթ» հերոսական էպոսում: Նրա դրական հերոսներն օժտված են աշխատասիրությամբ, ազնվությամբ, անձնական արիությամբ, ընչազուրկներին ու ճնշվածներին օգնելու պատրաստակամությամբ, անշահախնդրությամբ և այլ բարեմասնություններով, որոնք ժողովուրդը համարում էր սոցիալականորեն նշանակալի, բարոյապես արժեքավոր, իր համար առավել կարևոր ու հպարտանում դրանցով: Ժողովուրդը քննադատական վերաբերմունք է ցուցաբերել պաշտոնական եկեղեցու նկատմամբ, պարսավել հոգևորականությանն ու վանականներին, կասկածի տակ դրել պաշտամունքային արարողությունների արժեքավորությունը: Եվ դա համոզիչ կերպով վկայում է, որ կեղծ են հայ ժողովրդի անցյալի՝ որպես կատարյալ ու անխոհեմ կրոնականության պաշտոնական քրիստոնեական եկեղեցու նկատմամբ խոր հնազանդության ժամանակաշրջանի մասին եղած պատկերացումները: Հակառակ եկեղեցու բազմադարյա ջանքերին, հակակղերական գաղափարների ու գործողությունների նկատմամբ հավանության վերաբերմունքն արդեն վաղ անցյալում խորապես արմատավորվել էր ժողովրդական զանգվածների գիտակցության մեջ, որը լայնորեն արտացոլվել է նաև ժողովրդական բանահյուսությունում:

«Սասունցի Դավիթ» էպոսում բավականին հստակ անցկացվում է եկեղեցու կողմից դատապարտված այն միտքը, որ հասարակ մարդկանց, աշխատավորների սոցիալական ընդհանրությունը բարձր է նրանց ազգային կամ կրոնական տարբերություններից: Դրա վառ օրինակն է Դավթի խոսակցությունը ծերունի արաբի հետ:

Էպոսում չկան եկեղեցական ծիսակատարությունների ու տոների նկարագրություններ, որոնց մասնակցեին սասունցի-



ները: Ավելին, եկեղեցական մաղթանքը էպոսում բնութագրված է որպես երեսպաշտների ու կեղծ բարեպաշտների գործողություն, որոնք ամենուրեք չարիք են գործում և անբարոյական արարքներ թույլ տալիս: Դա շատ լավ ցույց է տրված Դավթի հոր՝ Մեծ Մհերի և հետագայում նրա կնոջ՝ գեղեցկուհի Արմաղանի հանդիպման դրվագում:

Ժողովրդական էպոսի հերոսները կանգնած են հստակ արտահայտված հակակղերական դիրքերի վրա: Հայկական հերոսական էպոսում վառ արտահայտված են աստվածամարտական մոտիվներ: Կրտսեր Մհերը, որը հոր մահից հետո թափառում էր երկրով մեկ, երկրի վրա չարիքը վերացնելու իր ձգտման մեջ անվարան պայքար է մղում այդ չարիքի մեղավորների ու կրողների՝ զավթիչների ու ժողովրդի կեղեքիչների դեմ: Նա չի վախենում անգամ կռվի բռնվել հրեշտակների հետ և ձեռք է բարձրացնում նույնիսկ աստծու՝ որպես չարիքի ու անարդարության գլխավոր մեղավորի դեմ:

Ամբողջ միջնադարի (այդ թվում և հայկական միջնադարի) համար բնորոշ ամենուրեք պարտադրվող կրոնականության պայմաններում նման մարտահրավերը մի չլսված հանդգնություն, հանցագործություն էր կրոնի ու եկեղեցու դեմ, որը դատապարտվում ու պատժվում էր ինչպես եկեղեցական, այնպես էլ աշխարհիկ իշխանությունների կողմից: Եվ այն, որ նման հանդգնությամբ օժտված է եղել ժողովըրդական ամենասիրելի հերոսներից մեկը, որի կերպարը ստեղծվել է հենց միջնադարյան Հայաստանում, կրոնական ազատախոհության ամենախիստ արտահայտությունների նկատմամբ ժողովրդի համակրանքների ամենահամոզիչ վկայությունն է:

«Այս էպոսը,— «Սասունցի Դավիթ» պատումի մասին գրել է ակադեմիկոս Հ. Օրբելին,— ժողովրդական է կոչվում ոչ միայն նրա համար, որ այն ապրում է ժողովրդական զանգվածների շրջանում և պատմվում է նրանց կողմից, այն ժողովըրդական է ամենից առաջ այն պատճառով, որ նրա հերոսների ողջ աշխարհայացքն անխզելիորեն կապված է իսկական ժողովրդական ստորին խավերի հետ, որ նրա բոլոր հերոսներն անխզելիորեն կապված են ժողովրդի հետ, այլ ոչ թե նրանց հետ, ովքեր հազարամյակներով իրենց ձեռքում էին պահում հայ ժողովրդի բախտը»:

«Սասունցի Դավիթ» էպոսի համար բնորոշ հակակղերականության ու ազատամտության դրսևորումներ կարելի է գտնել նաև միջնադարյան Հայաստանի ժողովըրդական բանավոր ստեղծագործության ուրիշ ժանրերում՝ առակներում, զրույցներում և այլն: Այլազան սյուժեների կողքին դրանցում արտահայտված են սոցիալական ստորին խավերի հայացքները եկեղեցու, հոգևորականության, պաշտոնական կրոնի վերաբերյալ, հայացքներ, որոնք նկատելիորեն տարբերվում են քրիստոնեական եկեղեցու պատվիրաններից, հոգևոր պետերի ու կրոնավորների քարոզներից:

Ժողովրդական ստեղծագործության այդ կողմի մասին բավական լրիվ պատկերացում կարելի է կազմել, վերլուծելով Մխիթար Գոշի և Վարդան Այգեկցու առակները: Դրանցում բավական մեծ տեղ է հատկացված այն ստեղծագործություններին, որոնք արտացոլում են ժողովրդական աշխարհայացքի տարբեր կողմերը և, մասնավորապես, արտահայտում են քննադատական վերաբերմունք պաշտոնական կրոնական գաղափարախոսության, հոգևորականության ու վանականության գործունեության, եկեղեցական պաշտամունքի և կրոնական եկեղեցական կյանքի այլ կողմերի նկատմամբ:

«Ուխտավոր և էշ» առակում փաստորեն տրված է քրիստոնեական եկեղեցու հիմնական աղոթքներից մեկի՝ «Հայր մերի» պարոդիան. հավատացյալը բարձրաձայն արտասանում է աղոթքի բառերը, բայց մտքերն զբաղված են բոլորովին այլ բանով:

«Աղվես և սուրբ Գևորգ» առակում քրիստոնեական սրբերը ծաղրանքով բնութագրվում են որպես կաշառակերներ, որոնք միայն նվերների դիմաց են օգնություն ցույց տալիս: Սուրբ Գևորգը երկու անգամ աղվեսին փրկել էր դժբախտությունից, երբ վերջինս խոստացել էր նրան շնորհակալություն հայտնել խնկով: Բայց երրորդ անգամ նրան արդեն չփորձեց փրկել, քանի որ համոզվել էր, որ նա իր խոստումը չի կատարել: Առակում կա մի դատողություն, որն արտահայտում է ժողովրդի մեջ ստեղծված ամենևին ոչ եկեղեցական վերաբերմունք սրբերի նկատմամբ: «Տեսե՛ք, թե ինչքան գարշելի և զզվելի բան է ստացվում: Քանի դեռ սըրբերը երկրի վրա էին, մարմնավոր էին՝ կառքերին ու նժույգներին էին թառած և աշխարհին լաց ու կոծ էին պատճառում, իսկ մի օր նահատակվեցին ու աստծուն սիրելի դարձան, և այժմ արդեն սկզբից կաշառքն են վերցնում, ապա նոր մարդուն փորձանքից ազատում»:

«Դրախտ և գեղջուկ մարդ» առակում

ծաղրի են ենթարկվում քրիստոնեական պատկերացումները դրախտային երանության մասին, որոնք հասարակ գեղջուկն ընկալում է որպես առողջ բանականությունից զուրկ հիմար մարդկանց խղճուկ գոյություն (տե՛ս Վարդան Այգեկցի, Աղվեսագիրք։ Երևան, 1981, էջ 103—105)։

Քրիստոնեական քարոզների անհամապատասխանությունը եկեղեցականների գործերին մերկացվում է «Աղքատ և ավետարան» առակում, որտեղ ասված է. «Մի աղքատ մի գյուղ եկավ և մտավ գյուղի եկեղեցին, որ խարխուլ էր և անձրևակեղ։ Եվ այն աղքատը անձրևաթաց էր և քաղցած և հագել էր պատառոտուն զգեստ և դողում էր և հոգնել էր ճանապարհից։ Եվ ներս մտավ քահանան, սկսեց ժամ ասել։ Առավ ավետարանը և կարդաց այն էջը, ուր գրված էր, թե օտարական էի՝ ընդունեցիք ինձ, մերկ էի՝ հագցրիք ինձ, քաղցած էի՝ կերակրեցիք ինձ, ծարավ էի՝ հագեցրիք ինձ։ Այն աղքատը լսեց և ուրախացավ. «Այս ինձ համար է ասված և ահա շուտով կկատարեն իմ կամքը»։ Իսկ քահանան ժամն արձակեց և գնաց տուն և աղքատին թողեց եկեղեցու մեջ և հոգ չտարավ նրա մասին։ Եվ աղքատն ասաց. «Այն գիրն, որ կարդաց, նա սուտ էր»։ Եվ առավ ավետարանը, վրան քար դրեց և սուզեց ջրի մեջ» (նույն տեղը, էջ 55)։

Հարկավոր էր խոր հիասթափություն ապրած լինել քրիստոնեությունից և մեծ քաջություն ունենալ, որպեսզի մարդ միջնադարյան Հայաստանում հանդգներ Ավետարանն անվանել «սուտ գիրք»։ Միջնադարյան առակներում քիչ չեն նաև աստծուն հեգնելը, իսկ երբեմն նաև ակնհայտորեն ծաղրելը, նրան մեղադրելը ճղճիմության, անարդարացիության կամ նույնիսկ սնանկության մեջ։ Նման ծաղրը, որն ընդունում է անկաշկանդ, իսկ երբեմն նաև ակնհայտորեն աներկյուղած, սարկաստիկ ձև բարձրյալի նկատմամբ, կազմում է մեզ հասած, անկասկած ժողովրդական ծագում ունեցող բավական մեծ թվով առակների գլխավոր թեման։

«Այրի կին և խորթ որդի» առակը աստծուն նկարագրում է որպես մի անշնորհք արարածի, որն ընդունակ չէ կողմնորոշվելու ամենատարրական իրավիճակում։ Այստեղ ասված է. «Մի այրի կին ուներ մի կով և նրա խորթ որդին ուներ մի էշ։ Եվ խորթ որդին գողանում էր կովի կերը տալիս էշին։ Եվ այրի կինն աստծուն աղաչեց, որ աստված էշին մեռցնի։ Բայց կովը մեռավ և այրին լաց եղավ և ասաց. «Ով աստված, մի՞թե չկարեցար էշը կովից տարբերել»։

«Վաճառականի աղոթք» առակում աստված նմանեցված է վաշխառուին, որին դիմում են տոկոսով վարկ ստանալու և որն զգուշանում է, որ իրեն չխաբեն, ուստի և նախազգուշական միջոցների է դիմում։

«Աղքատի աղոթք» առակում աստված ուղղակի մեղադրվում է ընչազուրկների նկատմամբ ցուցաբերած անարդարության մեջ։

Ազատամտության նույնպիսի ոգով են տոգորված նաև հայ միջնադարի ժողովրդական բանավոր ստեղծագործության մյուս ժանրերը, որոնք գեղարվեստորեն արտահայտում են աշխատավորների սոցիալական, գեղագիտական և բարոյական իդեալները, բարու և չարի, գեղեցիկի ու այլանդակի նրանց ըմբռնումը։

Միջնադարյան Հայաստանի ժողովրդական զանգվածների հայացքներում ազատամտության հիմնական դրսևորումների վերլուծությունը հանգեցնում է այն հետևության, որ թեև ժողովրդական զանգվածներն այն ժամանակաշրջանում կրոնասեր էին, բայց դա չէր խանգարում, որ նրանք խիստ քննադատաբար վերաբերվեն հոգևորականությանը, եկեղեցու պատվիրաններին և նույնիսկ քրիստոնեական դավանաբանության հիմնարար դրույթներին։ Այդ քննադատականությունը, որն ընդունում էր ազատամտության և հակակղերականության զանազան ձևեր, աշխատավորների հակաֆեոդալական տրամադրվածության անմիջական հետևանքն էր և միջնադարյան քրիստոնեական եկեղեցու կողմից պաշտպանվող ու սրբագործվող սոցիալական անարդարության, ճնշման, մարդու կողմից մարդու շահագործման դեմ նրանց բողոքի արտահայտությունը։

Ազատամտության գաղափարներն այնքան խոր արմատներ էին գցել, որ դուրս էին եկել ժողովրդական աշխարհայացքի շրջանակներից և արտացոլվել միջնադարյան Հայաստանի հոգևոր կյանքի այնպիսի ձևերի մեջ, ինչպիսիք են բնական, հասարակական-քաղաքական և փիլիսոփայական գիտությունները։ Այդ ժամանակ տիրապետող միտքը զարգանում էր գերազանցապես աստվածաբանության շրջանակներում և եկեղեցու անխոնջ վերահսկողության ներքո։ Ազատամիտների դերում հանդես էին գալիս հիմնականում կրոնական գործիչները, հոգևոր պետերը, մեծատոհմիկները, աստվածաբանները, վանքերի դպրոցների ղեկավարները։

Հակառակ միջնադարյան սխոլաստիկայի պատվիրաններին, որոնք պահանջում էին աշխարհն ընկալել «սուրբ գրքի» լույսի ներքո, իսկ իմացության մեջ բավարարվել Աստվածաշնչի և «եկեղեցու հայրերի» աշխատությունների ուսումնասիրմամբ, հայկական միջնադարի առաջադեմ գիտնականները կողմնորոշվում էին դեպի բնական երևույթների փորձնական իմացությունը։ Գրիգոր Մագիստրոսը (990—1058) իր ընթերցողներին կոչ էր անում ուսումնասիրել բնությունը, հայտարարելով՝ քանի որ աշխարհը մեր իմացության առարկան է, ապա այն պետք է ուսումնասիրել անմիջականորեն։ «Առանց փորձի, — հայտարարում էր Հովհաննես Սարկավագ Իմաստասերը (1045—1129),— կարծիքը չի կարող ճշմարտացի լինել, և միայն փորձն է արժանահավատ ու անվիճելի»։ Հետևելով այդ սկզբունքին, Մխիթար Հերացին (XII դար) պահանջում էր հանգամանորեն ուսումնասիրել իրական պատճառահետևանքային կապերը, մասնավորապես, մարդկանց բուժելիս, ինչը հակասում էր հիվանդությունների էության և դրանց բուժման եղանակների մասին եղած քրիստոնեական պատկերացումներին։ Գրիգոր Տաթևացին (1346—1409) բնությունը հայտարարում էր որպես մարդու ուսուցիչ՝ «դաստիարակ և կերակրող», «հիմք՝ արվեստներ, առաքինություններ և իմաստություն սովորեցնելու համար»։

Միջնադարյան Հայաստանի փիլիսոփայական մտքի հսկայական նվաճումն էր գիտությանը ինքնուրույն զարգացման իրավունք վերապահելու, ինչպես և շրջակա աշխարհի գիտական ճանաչողության պրոցեսին եկեղեցու չմիջամտելու մասին պահանջի արտահայտումը։ Այդ պահանջի հիմքն էր կազմում «ճշմարտության երկվության» ուսմունքը, որի սաղմերը հեշտությամբ կարելի է գտնել Հովհաննես Սարկավագի հայացքներում։ Նա պնդում էր, որ անհրաժեշտ է գիտենալ «ոչ միայն սուրբ գիրքը, այլև արտաքին (աշխարհիկ) գիտությունները»։ «Ճշմարտության երկվության» գաղափարը բաժանում և ակտիվորեն պրոպագանդում էր Գրիգոր Տաթևացին, որը աստծու իմացությունը բացառում էր փիլիսոփայական գիտության բնագավառից։

Ուղղահավատ կրոնական գաղափարախոսությունից անվիճելի նահանջ էր միջնադարի պայմաններում բնապաշտությունը, որը աստծուն չէր բարձրացնում բնությունից վեր, ինչպես այդ պահանջում էր քրիստոնեական եկեղեցին, այլ նրան տարրալուծում էր բնության մեջ։

Ազատամտության արտահայտություններ դրսևորվում են նաև միջնադարի հայ մտածողների հասարակական-քաղաքական հայացքներում։ Մասնավորապես, իր ժամանակի համար առաջադիմական էին սոցիալական այն գաղափարները, որոնք պարունակվում էին հայկական Դատաստանագրքի հեղինակ Մխիթար Գոշի աշխատություններում։ Մխիթար Գոշը անհրաժեշտ էր համարում ֆեոդալների կամայականությունը սահմանափակել օրինականության շրջանակներով, որը ընդհանուր առմամբ ուներ առաջադիմական նշանակություն։ Նա այն կարծիքին էր, թե քաղաքացիական իշխանությունը պետք է լինի աշխարհիկ, որը բացառի հոգևորականության միջամտությունը։ Վերջինս պետք է զբաղվի զուտ եկեղեցական գործերով։ Դատաստանագրքում տրված է սոցիալական անհավասարության ծագման խիստ աշխարհիկ բացատրություն, որը սկզբունքորեն տարբերվում էր հասարակական տվյալ երևույթի նկատմամբ եղած քրիստոնեական տեսակետից։

Ազատամտությունը միջնադարյան Հայաստանում ինչ-որ պատահական, հազվադեպ ու անդեմ բան չէր։ Այն հայ ժողովրդի ազատամության ու աթեիզմի պատմության օրինաչափ փուլն էր, կրում էր համապարփակ բնույթ։ Այն տարածվում էր հոգևոր կյանքի բոլոր ոլորտների վրա՝ սկսած սոցիալական ստորին խավերի հակաֆեոդալական ելույթների և բանավոր ժողովրդական ստեղծագործության (ներառյալ և հերոսական էպոսը) գաղափարախոսությունից մինչև տիրապետող դասակարգերի և ֆեոդալական հասարակության դասերի առաջադեմ ներկայացուցիչների բնագիտական, սոցիալ-քաղաքական և փիլիսոփայական հայացքները։

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՄՏՔԻ ԳՆԱՀԱՏՄԱՄԲ

**Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ վերածընընդի լուսապայծառ հորիզոններ բացեց բազմաթիվ արհավիրքներ ճաշակած, բայց միշտ գոյատևած հայ ժողովրդի համար։ Հեղափոխության հաղթանակից հետո ռուսական կայսրության նախկին տարածքում ապրող բազմազգ ժողովուրդների պատմության մեկնությունը և նրանց անցյալի լիակատար իմաստավորումը, անշուշտ, դուրս եկան զուտ գիտատեսական շրջանակներից և ձեռք բերեցին սոցիալ-քաղաքական նշանակություն։ Ազգային հարցի մարքսիստական լուծումը, կուլտուրական հեղափոխության կենսագործումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հաստատումը դարձան շահագործումից զերծ, նոր հասարակարգի հոգևոր հիմքերը։

Բազմազգ պետության շրջանակներում ազգային ու սոցիալական ճնշումը թոթափած ժողովուրդների փոխադարձ մերձեցումը ապահովելու համար անհրաժեշտ էր նաև վեր հանել ու լուսաբանել ինչպես նրանց համատեղ պայքարը ցարիզմի և «սեփական» կեղեքիչների դեմ, այնպես էլ մանրամասնորեն ուսումնասիրել ու խնդրո առարկա դարձնել այդ ժողովուրդների պատմությունը, նրանց միջև պատմականորեն հաստատված դարավոր կապերը, որոնք ստանում էին տարբեր երանգավորում և իրենց արտացոլումը գտնում առևտրատնտեսական, մշակութային, քաղաքական առնչությունների մեջ։ Անցյալի պատմության մարքս-լենինյան պատմահայեցողական մեկնությունը հնարավորություն ընձեռեց ավելի հիմնովին խորհել ներկայի վերաբերյալ և կանխատեսել ապագայի հեռանկարները։

Այս առումով հատկապես առանձնահատուկ նշանակություն են ստանում հայ-ռուսական քաղաքական առնչությունները, տարաբախտ հայության ի սփյուռս աշխարհի գաղթօջախների տարեգրության, ընդհանրապես հայ ժողովրդի ամբողջական պատմության լուսաբանումը։ Սրանք հարցադրումներ են, որոնք որոշակի հետաքրքրություն են առաջացրել ռուսական, ուկրաինական, վրացական, ադրբեջանական, ինչպես նաև սովետական այլազգի պատմագիտական մտքի ներկայացուցիչների շրջանում։ Սովետական պատմագրության բազմազգ բանակի ներկայացուցիչները քաջ գիտակցում են, որ իրենց ժողովուրդների պատմության ամբողջական ու առավել գիտական մեկնաբանման համար անհրաժեշտ է քաջատեղյակ լինել և՛ այն ժողովրդի պատմությանը, որի մի մասը քաղաքական զանազան հանգամանքների բերումով հանգրվանել է տարբեր երկրներում, ակտիվորեն մասնակցել քաղաքական անցքերին, զգալի ներդրում ունեցել մշակույթի, առևտրի, արհեստագործության ու ընդհանրապես տընտեսության զարգացման բնագավառներում։ Ուսումնասիրությունները վկայում են, որ սովետական պատմաբանները վերոհիշյալ պրոբլեմների լուսաբանման գործում ունեն որոշակի նվաճումներ, նրանք ասել են իրենց ծանրակշիռ խոսքը և այդպիսով այն ավելի խոր ու ամբողջական դարձնելու տեսանկյունից հարստացրել հայագիտության գանձարանը։ Նրանց հրատարակած վավերագրական նյութերի, փաստական տվյալների օգտագործումը և գլխավորապես առաջադրված տեսակետների, գնահատականների ուսումնասիրությունն ու գիտական արժեքավորումը հնարավորություն են ընձեռում սովետական մարդկանց, առաջին հերթին երիտասարդությանը, դաստիարակել ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նպաստում ազգերի մերձեցմանը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո ձևավորված սովետական պատմագրությունը միանգամայն իրավացիորեն քննադատական մոտեցում ցուցաբերեց ազնվականական ու բուրժուական պատմագրության նկատմամբ, մատնանշեց նրա սուբյեկտիվ իդեալիստական գնահատականները և ցարիզմը ջատագովելու ձգտումը։ Բայց նա, դժբախտաբար, պատրաստ չգտնվեց տեսնելու, արժեքավորելու և, որ հատկապես կարևոր է, լիովին օգտագործելու թողած հարուստ ժառանգությունը, տեղ գտած օբյեկտիվ, պատմական իրականության հետ համընկնող, ուշադրության արժանի գնահատականները։ Նկատենք նաև, որ նախահեղափոխական պատմագրության ներկայացուցիչների տեսակետները և գնահատականները գերազանցապես դիտարկվում էին սոսկ որպես ռուսական ցարիզմի արտաքին քաղաքականությունը գովերգելու փաստ, որը հնարավորություն չէր ընձեռում լայնորեն մեկնաբանելու Ռուսաստանի արտաքին քաղաքական գործունեությունը։ Բացի այդ, անպատասխան էր թողնվում արևելյան երկու բռնատիրական երկրների տիրապետության ներքո գտնվող քրիստոնյա ժողովուրդների, ներառյալ և հայերի, Ռուսաստանի նկատմամբ տածած ակնկալումների պատճառը, փաստորեն մոռացության մատնվում Մարքսի հանրահայտ միտքը, թե քրիստոնյաները, ուրեմն և հայ ժողովուրդը, նայում էին Պետերբուրգին՝ սպասելով Մեսիային, որը կազատեր նրանց բոլոր չարիքներից։ Միաժամանակ անտեսվում էր Էնգելսի չափազանց արժեքավոր տեսակետը Արևելքի ժողովուրդների նկատմամբ Ռուսաստանի խաղացած առաջադիմական դերի վերաբերյալ։

Հայ-ռուսական քաղաքական հարաբերությունների և նրա ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման ողջ պատմությունը լիովին հաստատեց Էնգելսի մեր օրերի համար էլ հրատապ հնչեղություն ունեցող գնահատականը։ Հայ ժողովուրդը պետականությունը կորցնելուց և հատկապես պարսկա-թուրքական ճիրանների ներքո ընկնելուց հետո ազատագրական պայքար ծավալեց այդ բիրտ լուծը թոթափելու համար՝ միաժամանակ քրիստոնյա հզոր երկրներից փրկարար օգնություն ստանալու ուղիներ փնտրելով, որն էլ, ի վերջո, անխուսափելի դարձրեց հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը։ Մինչդեռ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո և դրան հաջորդած մեկերկու տասնամյակների ընթացքում դեռևս թարմ էին ցարիզմի սոցիալական ու ազգային ճնշման հետևանքները, որոնք, բնականաբար, ազդելով պատմագիտական մտքի վրա՝ հնարավորություն չէին ընձեռում տեսնելու այն դրական, օբյեկտիվորեն առաջադիմական միտումները, որոնք, իրոք, պատմականորեն առկա էին ռուսական պետության արտաքին քաղաքականության մեջ։ Դրանք անխուսափելի էին նաև այն գլխավոր պատճառով, որ սովետական պատմաբանները դեռևս հնարավորություն չունեին լայնորեն ծանոթանալու մարքսիզմի դասականների և առաջին հերթին Վ. Ի. Լենինի հարուստ ու անգնահատելի ժառանգությանը, որովհետև այդ աշխատությունները դեռևս լիովին ի մի չէին բերվել, հրատարակվել ու, բնականաբար, չէին դարձել սովետական պատմաբանների սեփականությունը։ Մինչդեռ հենց մարքսիզմի դասականների բազմաբովանդակ աշխատությունները գիտական բանալի էին ոչ միայն ցարիզմի արտաքին քաղաքականությունը օբյեկտիվորեն մեկնաբանելու, այլև լուսաբանելու և գնահատելու ոչ ռուս ժողովուրդների՝ Ռուսաստանի կազմի մեջ մտնելու պատմականորեն առաջադիմական նշանակությունը։ Մարքսիզմի դասականների աշխատությունները գիտական յուրահատուկ ուղեցույց են նաև հայ-ռուսական քաղաքական հարաբերությունները ճիշտ գնահատելու, հայ-ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը հիմնավորելու, Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին պատմաքաղաքական առաջադիմական իրողություն դիտարկելու համար։ Թերությունների, բացթողումների մյուս հիմնական պատճառը, թերևս, կապված էր աղբյուրագիտական համեմատաբար թույլ բազայի հետ, որովհետև դեռևս չէին մշակվել, հղկվել, առավել ևս հրատարակվել չափազանց արժեքավոր պատմական վավերագրերը, արխիվային նյութերը, որոնք կարող էին գերազանցապես լույս սփռել հայ ժողովրդի պատմության նոր շրջանի կարևորագույն քաղաքական անցքերի վրա։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ առանցքային այդ հարցերը մեր օրերում էլ պահպանում են իրենց գիտաքաղաքական հիմնարար նշանակությունը, որովհետև առանց այդ պրոբլեմների սպառիչ վերլուծության ու մեկնության, թերևս, անհնարին է ամբողջական գաղափար կազմել հայոց պատմության նշված կարևորագույն շրջափուլի մասին։ Ահա ինչու վերոհիշյալ հարցերը բազում տասնամյակներ գտնվել են և առանց երկմտանքի ապագայում էլ օրինաչափորեն կմնան սովետահայ պատմագրության ուշադրության կենտրոնում։ Ինչ վերաբերում է ռուսական սովետական պատմագրությանը, ապա նրան գերազանցա-

---

*ՄՈՒՐԱԴՅԱՆ ՄԻՔԱՅԵԼ ԱՋԱՏԻ— Պատմական գիտությունների թեկնածու, Երևանի պետական համալսարանի դասախոս*

նրա պատերազմները Թուրքիայի դեմ՝ մասնավորապես։

Հանրահայտ է, որ 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի նախօրյակին Անդրկովկասի զգալի մասը՝ ներառյալ և հայկական առանձին շրջաններ, արդեն միացել էին Ռուսաստանին։ Նկատի ունենալով հենց այս կարևոր քաղաքական հանգամանքը՝ Փադենը մատնանշում է, որ «... արևելյան Անդրկովկասի ժողովուրդների վրա կախվեց կաջարների տիրապետության տակ վերադառնալու վտանգը, որից նրանք վերջերս էին ազատագրվել Ռուսաստանին միանալու շնորհիվ» (էջ 151)։ Ակնհայտ է, որ Փադենը դրական է գնահատում արևելյան Անդրկովկասի միացումը Ռուսաստանին, այդ ժողովուրդների վերաբերմունքը Ռուսաստանի նկատմամբ, ահա թե ինչու «... Ռուսաստանի թշնամիների հույսերը՝ Կովկասի ժողովուրդներին հանել նրա դեմ, կրեցին լիակատար կրախ» (էջ 155)։ Ընդհականակը, «ինչպես միշտ եղել է և առաջներում, շահական բռնատիրության տակ հեծող ժողովուրդների ազատագրական պայքարը դարձավ Ռուսաստանի հաղթանակին նպաստող գործոն»։ Փադենը, օգտագործելով նախահեղափոխական ռուսական պատմագիտական մտքի թողած նյութառատ և հավաստի փաստերը, հատկապես մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի անմահ պատմավեպը, նշում է հայ ժողովրդի ամենաակտիվ մասնակցությունը ռուս-պարսկական պատերազմին, հիշատակում Շուշիի 48-օրյա հերոսական դիմադրությունը, Հարություն Ալթունյանի սխրանքը։ «Բայց ո՛չ միայն Ղարաբաղի բնակիչներն էին օգնում ռուսական զորքերին՝ իրանական ներխուժման դեմ նրանց պայքարում։ Հայ կամավորները՝ Փամբակից և Լոռիից, ռուս զինվորների հետ կողք-կողքի խիզախորեն կռվում էին զավթիչների դեմ...» (էջ 151)։ Հեղինակը որոշակի տեղ է հատկացրել Պասկևիչի և Ներսես Աշտարակեցու նախաձեռնությամբ հայկական կամավորական գումարտակների ստեղծմանը, Երևանի բնակչության զինված ելույթի նշանակությանը շահական-խանական լուծն ու հզորությունը մարմնավորող բերդի անկման և հայկական հինավուրց քաղաքի ազատագրման գործում։ «Եվ ոչ միայն Երևանի բնակչությունը,— գրում է Փադենը,— այլև տարբեր անկյուններում սփռված... և օտար երկրներում բար դեգերող նրանց բոլոր հայրենակիցները ողջունում էին ռուսական զենքի այդ հաղթանակը» (էջ 150)։ «Հեռավոր Հնդկաստանում ապրած հայերը,— շարունակում է նա,— արքեպիսկոպոս Ներսես Աշտարակեցուն նամակ ուղարկեցին, ուր հայտարարում էին. Հայաստանը վերածնվեց... կյանքի արևը ծագեց Արարատյան երկրի վրա... և դրանում մեր ազգը պարտական է մոսկովյան մարդասիրական ազգին, ուր մենք կարող ենք ապրել անվտանգ և պաշտպանված» (էջ 160)։ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին ընթանում էր համառ պայքարում, որովհետև, ինչպես նշում է Փադենը, «Նա (Պարսկաստանը—Մ. Մ.) բնավ էլ մտադիր չէր իր գազանային թաթից բաց թողնել Հայաստանի հողերը» (էջ 103)։ Գնահատելով Թուրքմենչայի պայմանագիրը՝ Փադենը գրում է. «Թուրքմենչայի պայմանագիրը վերջ տվեց կաջարների կայսրության տիրապետության ներքո Կովկասի ժողովուրդներին վերադարձնելու բոլոր փորձերին։ Հատկապես մեծ ազդեցություն թողեց Թուրքմենչայի պայմանագիրը հայ ժողովրդի ճակատագրում, որի մի մասն այժմ գտնվում է Ռուսաստանի կազմում» (էջ 178)։ «Հայերը միայն Ռուսաստանի մեջ կարող էին տեսնել այն ուժը, որն ընդունակ կլիներ իրական օգնություն ցույց տալ նրանց՝ օտարերկրյա լծի դեմ իրենց ազատագրական պայքարում» (էջ 347)։ Համադրելով Թուրքմենչայի պայմանագիրը Ադրիանապոլսի պայմանագրի հետ՝ Փադենը նշում է. «Ադրիանապոլսի հաշտության համաձայն, Արևմտյան Հայաստանը մնաց սուլթանի գերիշխանության ներքո» (էջ 347)։ Սակայն Ռուսաստանը հարկադրեց սուլթանի կառավարությանը ճանաչել Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին։

Լ. Ս. Սեմյոնովն իր արժեքավոր, փաստական հարուստ նյութերով հագեցված փոքրիկ գրքույկում հանգամանորեն նկարագրել է Թուրքմենչայի պայմանագրի պատմությունը, հաշտության շուրջը ծավալված դիվանագիտական սուր պայքարը, Անգլիայի բանսարկությունները, հայ ժողովրդի ակնկալումները, Ներսես Աշտարակեցու հայրենանվեր աշխատանքը և Գրիբոյեդովի դիվանագիտական գործունեությունը պայմանագիրը ստորագրելու հարցում։ Սեմյոնովի կարծիքով, ռուս-պարսկական երկու պատերազմների ժամանակ էլ Անդրկովկասի քրիստոնյա ժողովուրդները՝ հայերը և վրացիները, նկատելիորեն օգնում էին ռուսական բանակին, որովհետև դրա մեջ էին տեսնում կեղեքիչների ճիրաններից ազատագրվելու միակ իրական ուղին։ «Անդրկովկասի բնակչությունը ձգտում էր թոթափել շահական Իրանի լուծը և աջակցում էր ռուսական բանակին» (Սեմյոնով, նշվ. աշխ. էջ 20)։

Ռուս-սովետական պատմաբանները, նշելով Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու պատմականորեն առաջադիմական նշանակությունը, բնավ չեն իդեալականացնում այն, այլ մատնանշում են, որ ինչպես հայ ժողովուրդը, այնպես էլ ցարական Ռուսաստանի կազմի մեջ մտած մյուս ժողովուրդները չազատագրվեցին ո՛չ ազգային և ո՛չ էլ սոցիալական ճնշումից, որն ընդհանրապես անհնարին էր ինքնակալության պայմաններում։ «Անդրկովկասի միացումը Ռուսաստանին, որին ցարական կառավարությունը դիտում էր որպես գաղութ, նրան միաժամանակ ներքաշեց կապիտալիստական զարգացման ուղու վրա։ Թուրքմենչայի պայմանագիրը նշանակում էր Անդրկովկասի ժողովուրդների ազատագրում շահական Իրանի լծից և Անդրկովկասը Ռուսաստանից կտրելու անգլիական պլանների ձախողում» (նույն տեղը, էջ 129)։ Սովետական պատմաբանները տվել են այս երկու միաժամանակ իրարամերժ, բայց պատմականորեն ճշմարիտ գնահատականների մեկնությունը, բացատրել Թուրքմենչայի պայմանագրի օբյեկտիվորեն առաջադիմական հետևանքները հայ ժողովրդի քաղաքական կացության համար։ Հետևաբար, 50—60-ական թթ. սովետական պատմագրությունը, ելնելով պատմական գիտության մեջ դեռևս նկատվող դոգմատիզմը, սուբյեկտիվիզմը, սխեմատիզմը հաղթահարելու մասին կուսակցության որոշումներից, կարողացավ քննադատաբար մոտենալ անցյալի գնահատականներին, այդ թվում նաև ոչ ռուս ժողովուրդների Ռուսաստանի կազմի մեջ մտնելու նշանակության հարցերին։ Հայ-ռուսական քաղաքական առնչությունների և հատկապես Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու վերաբերյալ ռուս սովետական պատմաբանների ճիշտ գնահատականներն իրենց հետագա զարգացումն ստացան հատկապես 70-ական թվականներին, երբ աշխարհով մեկ սփռված հայությունն իր մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի, անմիջական նախաձեռնությամբ և գլխավորությամբ, մեր երկրի բոլոր ժողովուրդների ակտիվ մասնակցությամբ նշեց պատմական ու քաղաքական մեծագույն իրադարձության՝ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյա տարելիցը։

Այսօր, երբ մեր կուսակցությունը հետևողական աշխատանք է տանում ամենուր բացահայտելու պատմական ճշմարտությունը, հրատապ նշանակություն է ստանում անցյալի մոռացված էջերի գիտական մեկնաբանությունը։

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԽՈՏՈՐՈՒՄՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Գ. ՍԱՐԳՍՈՎ**

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿՅԱՆՔԻ ԲՈԼՈՐ ոլորտների վերակառուցման և նրա սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պայմաններում շատ այժմեական է դառնում սոցիալական խոտորումների հաղթահարումը: Այդ իսկ պատճառով կուսակցության XXVII համագումարից հետո անցած համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ կառավարության կողմից մշակվել և իրականացվում են մի շարք գործուն միջոցներ՝ սոցիալիստական օրինականությունն ու իրավակարգը ամրապնդելու, պորտաբուծության, անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության հափշտակումների և այլ բացասական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու ուղղությամբ: Սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման տրամաբանությամբ սոցիալական խոտորումների հաղթահարման նպատակով ձեռնարկվող միջոցների կոմպլեքսը էլ ավելի մեծ նշանակություն է ստանում մեր պետականության, ժողովրդի ինքնակառավարման զարգացման, սոցիալական արդարության և աշխատավորների սահմանադրական իրավունքների ու ազատությունների անսասանության ապահովման համար:

Նշված խնդիրների լույսով տեսական և գործնական որոշակի հետաքրքրություն է ձեռք բերում սոցիոլոգիական և իրավագիտական հետազոտություններում արծարծված սոցիալական խոտորումների էության և դրանց ձևերի ու տեսակների դասակարգման մշակումը:

Հայտնի է, որ սոցիալական նորմերը որոշակի ժամանակահատվածում հասարակության մեջ գործող իրավական, բարոյական, քաղաքական և այլ կանոնների, պահանջների, կանոնակարգերի ամբողջությունն է մարդկանց, սոցիալական խմբերի և դասակարգերի վարքի կառավարման, կանոնակարգման նպատակով՝ հօգուտ տիրապետող դասակարգի: Սոցիալիստական հասարակության մեջ, որտեղ չկան հակամարտ դասակարգեր, իրավական, քաղաքական և սոցիալական այլ նորմերը արտացոլում են և կոչված են հավասար չափով պաշտպանելու և՛ բանվորների, և՛ կոլտնտեսային գյուղացիության, և՛ աշխատավոր մտավորականության, այսինքն՝ ամբողջ ժողովրդի շահերը: Այդ նորմերը սոցիալական են կոչվում նաև այն պատճառով, որ կարգավորում են բացառապես սոցիալական սուբյեկտների, այսինքն՝ դասակարգերի, հանրությունների, կոլեկտիվների, խմբերի և անհատների վարքը: Սոցիալական նորմերում արտացոլվում են այդ սուբյեկտների վարքի կարևորագույն նպատակները, որոշվում թույլատրելիի և անթույլատրելիի հստակ սահմանները: Ընդ որում որոշ նորմեր, ասենք, իրավական նորմերը, ամրագրվում են գրավոր տեքստերի (օրենքների, ենթաօրենսդրական ակտերի) մեջ, մյուսները, ինչպես օրինակ, սովորույթները, ավանդույթները և այլն, տեքստային ձևով չեն ամրագրվում և հաղորդվում են սերնդից սերունդ բանավոր, զանազան ծեսերի, ուրիշ վարքային ակտերի միջոցով կամ բարոյագիտական, գեղարվեստական ստեղծագործությունների, ժողովրդական երգերի միջոցով և այլն: Ուստի կարելի է ասել, որ սոցիալական նորմերը ձևակերպված (տեքստով տրված) կամ չձևակերպված պահանջներ են, կանոններ, որոնք սոցիալական սուբյեկտների վարքի մեջ «շատ թե քիչ ճիշտ որոշում են հարկավոր և թույլատրելիի ծավալը, բնույթը, ինչպես նաև սահմանները» (տե՛ս Е. М. Пеньков. Социальное нормы-регуляторы поведения личности. М., 1972, стр. 47): Դրան համապատասխան մեր հասարակության նկատմամբ կարելի է պնդել, որ որոշ սոցիալական նորմեր (իրավական, քաղաքական) հանդես են գալիս որպես բացառապես մեր սովետական պետության կողմից սահմանված, մշակված նորմեր (միջազգային իրավական նորմերը՝ ուրիշ պետությունների հետ համատեղ), իսկ մյուսները մեզ են «անցել» մեր հասարակարգին նախորդած հասարակական ֆորմացիաներից (օրինակ, կրոնական, բարոյական, գեղագիտական նորմերի մի մասը, սովորույթների, ավանդույթների շատ նորմեր):



---

ՍԱՐԳՍՈՎ ԳԵՈՐԳԻ ՍՏԵՓԱՆԻ— Իրավաբանական գիտությունների դոկտոր, ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի առաջատար գիտական աշխատող:

Մեր հասարակության արգասիք հանդիսացող սոցիալական նորմերը, որպես կանոն, կրում են պոզիտիվ բնույթ, քանի որ արտացոլում և պաշտպանում են աշխատավորների, ամբողջ հասարակության շահերը: Սրանից ամենևին էլ չի հետևում, որ նախորդ հասարակական ֆորմացիաներից «անցած» սոցիալական նորմերը ամբողջովին բացասական են: Այսպես, բարոյական, գեղագիտական շատ նորմերի, սովորույթների և ավանդույթների մի մասը, ինչպես նաև որոշ կրոնական նորմեր անկասկած դրական բնույթ ունեն և ուստի միանգամայն համապատասխանում են սովետական հասարակության շահերին:

Սոցիալիստական հասարակության սոցիալական նորմերի հատկություններից մեկը հասարակական օգտակարությունն է: Դասակարգային-հակամարտ հասարակության նկատմամբ կիրառելով, սոցիալական նորմերի այդ բնույթը կարելի է ընդունել լոկ պայմանականորեն, քանի որ նրանք կարող են օգտակար լինել որոշ դասակարգերի (շահագործողների) և վնասակար՝ մյուս դասակարգերի (շահագործվողների) համար:

Սոցիալական նորմերի մի քանի տեսակների համար բնորոշ է նաև պատժամիջոցների առկայությունը դրանք խախտելու կամ չկատարելու համար՝ հասարակական, կարգապահական, քաղաքացիական-իրավական, վարչական և քրեական-իրավական ներգործության միջոցներ: Օրինակ, աշխատողի պարտականությունները կարգավորող աշխատանքային իրավունքի նորմերի խախտման համար պատժամիջոց է կարգապահական տույժը, քրեական-իրավական արգելքների խախտման համար պատժամիջոցը քրեական պատիժն է:

Գործողության լայն ընդգրկում ունեցող և այդ պատճառով հասարակության համար առավել նշանակալի սոցիալական նորմերը կարող են դասակարգվել որպես իր առարկան և կարգավորման մեթոդն ունեցող նորմ հետևյալ կերպ.

Իրավական նորմերն ամենից առաջ օրենքի նորմեր են: «Հասարակության զարգացման հայտնի, բավական վաղ աստիճանում,— գրում էր Ֆ. Էնգելսը,— պահանջմունք է առաջանում ընդհանուր կանոնով ընդգրկել արտադրության, արդյունքների բաշխման և փոխանակության օրեցօր կրկնվող ակտերը և հոգալ այն մասին, որ առանձին մարդը ենթարկվի արտադրության և փոխանակության ընդհանուր պայմաններին: Այդ կանոնը, որն սկզբում արտահայտվում է սովորույթի մեջ, հետագայում դառնում է օրենք» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 18, стр. 272):

Սոցիալական նորմերի ցանկացած տեսակը, իսկ առավել ևս իրավական նորմերը, կրում են դասակարգային բնույթ և պաշտպանում որոշակի դասակարգի կամ դասակարգերի շահերը: Մարքսը և Էնգելսը ծաղրել են կապիտալիզմի այն ջատագովներին, որոնք պնդում էին, թե սոցիալական նորմերը իբր վերդասակարգային բնույթ են կրում (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 4, стр. 445): Միայն սոցիալիստական հասարակարգում իրավական նորմերը, կրելով դասակարգային բնույթ, արտացոլում և պաշտպանում են ողջ ժողովրդի շահերը:

Բարոյականության նորմերը, որպես կանոն, տեքստով չվավերագրված և գնահատու բնույթ կրող պահանջների ամբողջություն, համակարգ են այն իմաստով, որ դրանք կարծես կողմնորոշում են այն բանին, թե ինչն է լավ և ինչը վատ, ինչն է արդար և ինչը անարդար, ինչն են ընդունում, հավանություն տալիս և ինչը դատապարտում, մերժում և այլն: Բարոյական նորմերը ամենից հաճախ հաստատագրված են անձի այնպիսի արժեքային պատկերացումներին, ինչպիսիք են պատիվը, խիղճը, պարտքը և այլն: Բարոյական նորմերի պահանջների պահպանումը ապահովվում է գլխավորապես հասարակայնության, սոցիալական միկրոմիջավայրի հեղինակու-

թյամբ, այլ ոչ թե պետական հարկադրանքով և իրավական սանկցիաներով, ինչպես դա տեղի է ունենում իրավական նորմերի պահանջների ապահովման դեպքում:

Սովետական սոցիալիստական բարոյականության նորմերն են՝ ազնվությունը, պահանջկոտությունը իր և ուրիշների նկատմամբ, օրինավորությունը, ընկերական փոխօգնությունը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը, խղճմտությունը, հարգալից վերաբերմունքը ավագների, շրջապատի նկատմամբ, բարեխիղճ աշխատանքը, աշխատասիրությունը և այլն:

Այդ պատճառով էլ մեր հասարակության ու նրա անդամների բարոյական առողջությունից է մեծապես կախված ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած՝ մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, սոցիալական արդարության, սովետական դեմոկրատիայի խորացման ապահովման կուրսի հաջող իրականացումը: «Մեր բարոյագիտությունը, ամբողջ սովետական ապրելակերպը,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում,— քննության են ենթարկվում սոցիալիստական դեմոկրատիայի, սոցիալական արդարության և հումանիզմի արժեքները անշեղորեն զարգացնելու և հարստացնելու ունակությամբ»:

Չնայած իրավական նորմերի էական տարբերությանը բարոյական նորմերից, վերջիններիս դերն ու նշանակությունը անգնահատելի են սոցիալական սուբյեկտների վարքի կարգավորման գործում, ուստի մեր հասարակությունում բացառիկ մեծ նշանակություն է տրվում բարոյական նորմերի կատարելագործմանը, մասսաների բարոյական դաստիարակությանը:

Սովորույթներն ու ավանդույթները նորմերի մի համակարգ են, որը ամրագրում է պատմականորեն ձևավորված, ամենից հաճախ հարմար և ուստի սովորական դարձած վարքի օրինակներ, մոդելներ, մարդկանց համակեցության կանոններ (հարսանեկան, կենցաղային, տոնական և այլ ծեսեր ու սովորույթներ) (տե՛ս Социальное отклонения. Введение в обшую теорию. М., 1984, стр. 79): Նորմերի այս համակարգը բավական կայուն է, որոշ չափով նաև պահպանողական: Ուստի պատահական չէ, որ սոցիալիստական պայմաններում դեռ կենսունակ են որոշ հին, բացասական ավանդույթներ ու սովորույթներ, ծեսեր, որոնց հաղթահարումը մեծ ջանքեր է պահանջում:

Գեղագիտական նորմերն այնպիսի նորմերի համակարգ են, որոնք վավերագրում են պատկերացումները գեղեցիկի մասին, լինի դա մարդկանց արարքներում, ստեղծագործության մեջ, բնական միջավայրում, արտադրության մեջ կամ կենցաղում: Այդ նորմերը, որպես կանոն, տեքստերի ձևով վավերագրված չեն, շատ հաճախ կրում են սուբյեկտիվ բնույթ (ձևավորվում են որոշակի հասարակական, խմբային հարաբերությունների ազդեցության տակ) և հենվում են հեղինակների կարծիքների վրա: Դրանք չկատարելը պատժամիջոցներ չեն հարուցում: Որպես կարգավորիչներ անգնահատելի նշանակություն ունեն ոչ միայն ստեղծագործական գործունեության, այլև մարդկանց հոգևոր կյանքի, նրանց գեղագիտական ճաշակների դաստիարակության համար:

Քաղաքական նորմերը քաղաքական կյանքում, այսինքն՝ միջդասակարգային և միջպետական հարաբերությունների ոլորտում սոցիալական սուբյեկտների վարքը կարգավորող նորմերի ամբողջությունն են: Շատ հաճախ քաղաքական նորմերը վավերագրված են լինում իրավական նորմերի մեջ՝ սահմանադրությունում, միջազգային պայմանագրերում և համաձայնագրերում, միջազգային կազմակերպությունների իրավական ակտերում և այլն: Դրա հետևանքով քաղաքական նորմերը չպահպանելը շատ հաճախ հանգեցնում է համապատասխան պատժամիջոցների կիրառման: ՍՄԿԿ-ն մեծապես կարևորում է միջպետական հարաբերությունները կարգավորող քաղաքական նորմերը, ինչպես նաև դրանց պահպանումը՝ ապահովելով միջազգային խաղաղության ամրապնդմանը, խաղաղ միջոցներով ճգնաժամերի լուծմանը, պետությունների միջև համագործակցության և փոխօգնության հարաբերությունների հաստատմանն ու զարգացմանն ուղղված ջանքերի արդյունավետությունը:

Կրոնական նորմերի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ դրանք ներծծված են բազմաթիվ իրավական, բարոյական, գեղագիտական և այլ արժեքներով և դրա հետևանքով մարդկանց ու սոցիալական խմբերի վարքը կարգավորում են հասարակության անչափ լայն ոլորտներում՝ ընդգրկելով ընտանեկան, քաղաքացիական, մասնավորապես գույքային փոխհարաբերությունները, մարդկանց հարաբերություններն արտադրության, բաշխման ու սպառման ոլորտներում և այլն: Կրոնական նորմերի մեջ, անշուշտ կա բացասական հակագիտական և հակաժողո-



վրդական շատ բան: Բայց կան նաև պոզիտիվ բնույթի նորմեր (անձի դեմ հանցագործությունների արգելումը, ոգելից խմիչքների չարաշահումների դատապարտումը, ազնվության, բարեգործության խրախուսումը և այլն): Կրոնական նորմերի սոցիալական բազան մեր հասարակության մեջ անշեղորեն նեղանում է:

Չափազանց մեծ է վերոհիշյալ նորմերի՝ որպես վարքի կարգավորիչների, նշանակությունը: Ոչ մի հասարակություն չի կարող կառավարվել առանց այդ նորմերի: Սոցիալիստական հասարակության մեջ դրանց դերն աճում է այն բանի շնորհիվ, որ հասարակությունը մեծապես շահագրգռված է սոցիալական սուբյեկտների վարքի բացասական ձևերը հաղթահարելու, աստիճանաբար արմատախիլ անելու գործում:

Այս կամ այն սոցիալական նորմի արժեքը, նշանակությունը պայմանավորված է գլխավորապես նրանով, թե որ դասակարգի կամ սոցիալական որ խմբի շահերին է նա ծառայում: Սոցիալիստական հասարակության համար արժեքավոր են միայն այն սոցիալական նորմերը, որոնք արտացոլում, պաշտպանում են աշխատավորների, մեր ողջ հասարակության շահերը:

Սոցիալական սուբյեկտների վարքի ամեն մի ձև, որը համապատասխանում է այս կամ այն նորմին, նորմատիվ վարք է: Իսկ եթե այն հակասում է այս կամ այն սոցիալական նորմին, ապա դա խոտորված վարք է: Այլ կերպ ասած, սոցիալական խոտորումը սոցիալական սուբյեկտի վարքի այնպիսի ձև է, որը հակասում է սոցիալական նորմերի պահանջներին, պատվիրաններին, կարգագրերին, դրանց խախտումն է:

Սոցիալական խոտորումների դասակարգման համար գոյություն ունեն շատ չափանիշներ: Այդպիսի չափանիշներից մեկը կարող է լինել բուն այդ խոտորումների հետևանքների բնույթը (դրական կամ բացասական): Եթե դասակարգման համար ընդունենք այդպիսի չափանիշ, ապա սոցիալական խոտորումների բոլոր տեսակները կարելի կլինի բաժանել հետևյալ երկու խմբի:

Առաջին խումբը չեզոք խոտորումներն են: Դա այնպիսի մի վարք է, որը թեպետև խախտում է այս կամ այն սոցիալական նորմը, այնուհանդերձ վնաս չի հասցնում սոցիալական սուբյեկտների շահերին, բայց դրա հետ մեկտեղ դրական նշանակություն չունի նրանց համար: Այսպես, որոշ կրոնական նորմերի, ավանդույթների ու սովորույթների խախտումը հասարակության համար չեզոք բնույթ ունի:

Երկրորդ խումբը բացասական խոտորումներն են: Դա այն վարքն է, որն իր էությամբ խախտում է դրական սոցիալական նորմը: Իբրև օրինակ կարող է ծառայել ամեն մի իրավախախտում: «Բացասական սոցիալական խոտորումների հետևանքների ամբողջ բազմապիսիությամբ հանդերձ նրանց էությունը մեկ է՝ վնաս, կորուստ՝ պատճառված այն դասակարգի, սոցիալական խմբի կամ հասարակության շահերին, որոնք սահմանել և օգտագործում են նորմատիվ կարգավորման համապատասխան համակարգը: Սոցիալիզմի ժամանակ սոցիալական առումով բացասական վարքը վնաս է հասցնում ամբողջ ժողովրդին, խանգարում է անհատի զարգացմանը, խոչընդոտում է հասարակության վերընթաց շարժումը» (նույն տեղը, էջ 101): Սոցիալական խոտորումների հենց այդ խումբն էլ ծառայում է որպես բացասական երևույթների դեմ մղվող պայքարի օբյեկտ:

Սոցիալական խոտորումները իրավունքի նորմերից սոցիալիստական հասարակության մեջ միշտ կրում են բացասական բնույթ, քանի որ իրավական նորմերն արտացոլում և պաշտպանում են հասարակության, աշխատավորների շահերը: Իսկ սոցիալական նորմերի այլ տեսակների խախտումները բացասական բնույթի են միայն այն դեպքում, երբ իրենք՝ այդ նորմերը դրական բնույթի են, արտացոլում և պաշտպանում են սոցիալիստական հասարակության շահերը:

Որպես դասակարգման չափանիշ կարող է ծառայել նաև սոցիալական նորմի տեսակը կամ տիպը: Ըստ տվյալ չափանիշի, սոցիալական խոտորումների բոլոր ձևերը խմբավորվում են հետևյալ կերպ: Սոցիալական շեղումներ՝ քաղաքական նորմերից, իրավական նորմերից (իրավախախտումներ), բարոյական նորմերից (անբարոյական արարքներ), գեղագիտական, կրոնական, սովորույթների, ավանդույթների նորմերից:

Իրավական նորմերի խախտումները հավանաբար, կարելի է դասակարգել ըստ դրանց հասարակական վտանգավորության աստիճանի: Այս դեպքում խախտումների բոլոր տեսակներն ու ձևերը կարող են կազմել երկու մեծ խումբ. առաջինը կընդգրկի հանցագործությունները, այսինքն՝ այնպիսի գործողություններ, որոնք հասարակա-

կանորեն վտանգավոր և քրեորեն պատժելի են: Երկրորդ խումբը մյուս իրավախախտումներն են (այլ կերպ ասած, հասարակականորեն պակաս վտանգավոր և ուստի քրեորեն անպատժելի):

Սոցիալական խոտորումների հետազոտությունը ենթադրում է դրանց վիճակի, կառուցվածքի և դինամիկայի վերլուծում: Նման վերլուծման համար պահանջվում է ամենից առաջ սոցիալական խոտորումների կարգավորված հաշվառման առկայություն: Դժբախտաբար, նման հաշվառում մեզանում բացակայում էր: Ներկայումս երկրում կատարվում է հանցագործությունների հաշվառում: Իսկ հանցավոր իրավախախտումների, անբարոյական արարքների և այլ հաշվառում չի կատարվում*):

Սովետական իշխանության տարիներին երկրում արմատախիլ են արվել այնպիսի առանձնապես վտանգավոր հանցագործություններ, ինչպես բանդիտիզմը, տեռորիզմը, վնասարարությունը և այլն: Քանակական թվականների համեմատությամբ երկրում զգալիորեն իջել է հանցագործության և դատվածության մակարդակը, աներորեն իջնում է այնպիսի առանձնապես վտանգավոր հանցագործությունների մակարդակը, ինչպիսիք են դիտավորյալ սպանությունը, մարմնական ծանր վնասվածքներ պատճառելը, բռնաբարությունը և այլն: Դրա հետ մեկտեղ նշվում է շահադիտական հանցագործությունների և ամենից առաջ պետական ու հանրային ունեցվածքի հափշտակումների աճ:

Սոցիալական խոտորումների հաղթահարումը սովետական հասարակության կենսական պահանջմունքն է: Քաղաքական, բարոյական, տնտեսական ու նյութական այն վնասը, որ պատճառում են սոցիալական խոտորումները, մեծ է և շատ վտանգավոր սոցիալիստական հասարակության համար: Սոցիալական խոտորումների բացասական հետևանքները կարելի է համեմատել սառցալեռան հետ, որի ստորջրյա, այսինքն՝ անտեսանելի մասը ավելի վտանգավոր է, քան վերջրյա, տեսանելի մասը: Ոչինչ, նույնիսկ տարերային աղետները չեն կարող ավելի մեծ վնաս հասցնել մեր հասարակությանը, քան սոցիալական խոտորումների ամբողջությունը: Ոչինչ այնքան շոշափելի ու զգալիորեն չի կասեցնում սովետական հասարակության առաջընթացի տեմպերը, որքան սոցիալական խոտորումները: Ուստի սոցիալական խոտորումների հաղթահարումը, դրանք արմատախիլ անելը մեր հասարակության պահանջմունքն է: Դա մի վիթխարի խնդիր է, որի հաջող լուծումը պահանջում է մոբիլիզացնել հասարակության տնտեսական, նյութական, կազմակերպական, կադրային, սոցիալական, իրավական կարողությունները, ուժերն ու միջոցները:

Սոցիալական խոտորումների առկայությունը սոցիալիստական հասարակության մեջ ոչ թե պատահական, այլ անկասկած օրինաչափ երևույթ է: Այդ օրինաչափությունը պայմանավորված է նրանով, որ սոցիալիզմի ժամանակ գոյություն ունեն ոչ միայն սուբյեկտիվ, այլև օբյեկտիվ պատճառներ, որոնք ծնում են սոցիալական խոտորումներ: Ընդ որում կոմունիզմի առաջին փուլում այդ պատճառներից շատերը հնարավոր չէ արմատախիլ անել (հանրային արտադրության մակարդակի ու ծավալի հետ մնալը հասարակական պահանջմունքների մակարդակից, յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների սկզբունքին անցնելու հնարավորության բացակայությունը, կապիտալիզմի վերապրուկների առկայությունը երկրի բնակչության մի մասի գիտակցության մեջ, իմպերիալիզմի նկրտումները նպատակամղված սոցիալիզմի տնտեսական, սոցիալական, բարոյական հիմքերի քայքայմանը, նրա գաղափարախոսական դիվերսիան և այլն):

Այս և ուրիշ պատճառներ, որոնք պայմանավորում են սոցիալական խոտորումների գոյությունը սոցիալիզմի օրոք, ինքնին օրինաչափ երևույթներ են: Սոցիալիստական հասարակությունը ի վիճակի է թուլացնելու այդ պատճառների գործողությունը, պայմաններ ստեղծելու դրանց հետևողական հաղթահարման համար, բայց դրանք օբյեկտիվորեն անհնար է լրիվ վերացնել, արմատախիլ անել: Նման ռեալ հնարավորություն, անկասկած, կառաջանա կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլում: Այնուհանդերձ, սոցիալիստական հասարակությունը միակն է, որն ի վիճակի է զգալիորեն նեղացնել, սահմանափակելու սոցիալական խոտորումների սոցիալ-տնտեսական և այլ ներքին պատճառները, դրա շնորհիվ էապես կրճատելու և իջեցնելու դրանց մակարդակը, իսկ վերջիններիս որոշ ձևեր բոլորովին ար-

*) Իրավագետները վաղուց առաջադրել են մեր երկրում բարոյական վիճակագրության, այսինքն՝ առավել կարևոր բարոյական նորմերի խախտումների (պոռնկության, վեներական հիվանդությունների վարակելու և այլն) հաշվառման կազմակերպման հարցը:



մատախիլ անելու: Ուստի ռեալ չի թվում ամենամոտ հեռանկարում մեր հասարակության մեջ սոցիալական խոտորումները լրիվ արմատախիլ անելու պրոբլեմը: Բայց միանգամայն ռեալ է դրանց մակարդակը էապես նվազեցնելը:

Սոցիալական խոտորումների հետևանքների բնույթը, նրանց վտանգավորության աստիճանը և վնասի չափը կախված են բազմաթիվ գործոններից, հանգամանքներից և ամենից առաջ այն բանից, թե սոցիալական ինչ նորմեր, ում կողմից և որքան հաճախ են խախտվել, հասարակության մեջ ինչպես է պայքար մղվում դրանց դեմ և այլն:

Ողջ մարդկության համար, անկախ սոցիալ-քաղաքական սիստեմից, ամենավտանգավոր և վնասակար, առավել անցանկալի սոցիալական խոտորումներն են միջազգային իրավունքի նորմերի խախտումները, որոնք հանգեցնում են ագրեսիվ պատերազմի, էքսպանսիայի, միջազգային տեռորիզմի, գաղութային ռեժիմի պահպանման կամ ապարտեիդի, ազգային, ռասայական անիրավահավասարության ու ճնշման, սպառազինությունների մրցավազքի և միջուկային, քիմիական ու մանրէաբանական զենքի կիրառման վտանգի աճի: Ահա թե ինչու սովետական պետության արտաքին քաղաքականության հիմնական ուղղություններից մեկն է միջազգային իրավունքի նման կարգի խախտումների կանխումը: Այդ իսկ պատճառով Սովետական Միության արտաքին քաղաքականությունն արժանանում է ամբողջ աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերի հավանությանն ու պաշտպանությանը:

Լուրջ պրոբլեմ են այն հանցագործությունները, որոնք ուղղված են անաշխատ եկամուտներ կորզելուն, հափշտակություններին, կաշառակերությամբ զբաղվելուն, մարդկանց կյանքի ու առողջության դեմ: Մեծ է տնտեսական հանցագործությունների վնասը: Սոցիալական չարիք են հաշիշամոլությունը, ալկոհոլիզմի և հարբեցողության հողի վրա կատարվող հանցագործությունները, դեռահասների հանցագործությունները: Լուրջ մտահոգություն են առաջացնում նաև որոշ պաշտոնատար անձանց, այդ թվում իրավապահպան մարմինների աշխատողների կողմից սոցիալիստական օրինականության խախտումների հաճախակի դարձած դեպքերը:

Ոչ հանցագործ իրավախախտումները կազմում են սոցիալական խոտորումների հասարակական վտանգավորության հաջորդ աստիճանը: Այդպիսի իրավախախտումների ցուցակը բավականին մեծ է: «Ոչ հանցագործ իրավախախտումներ» անվանումն ամենևին չի նշանակում, թե դրանք հասարակական վտանգ չեն ներկայացնում: Օրինակ, որոշ ձեռնարկություններում մանր գողությունները ավելի մեծ նյութական ու բարոյական վնաս են հասցնում, քան քրեորեն պատժելի հափշտակությունների դեպքերը:

Մեծ է աշխատողների (հատկապես՝ այսպես կոչված «ոչ ցանկալիների») անօրինական կամ անհիմն վտարումներից առաջացող վնասը: Օրենքի խախտումով աշխատանքից ազատված անձինք երկար ժամանակով կտրվում են հանրային արտադրությանը մասնակցելուց, իսկ նրանց ընտանիքները նյութական լուրջ դժվարություններ են կրում: Այսպիսի իրավախախտումները համեմատաբար տարածված են մեր հանրապետությունում: 1983-ից մինչև 1985 թվականն ընկած ժամանակամիջոցում որպես ապօրինի ազատվածներ աշխատանքում վերականգնվել է ավելի քան 1300 մարդ, նրանցից շուրջ 600-ը՝ դատարանի որոշմամբ, 781-ը՝ դատախազների բողոքներով: Սա վկայում է, որ ձեռնարկությունների և հիմնարկների որոշ ղեկավարներ այնքան էլ հաշտ չեն աշխատանքային օրենսդրության հետ, սովետական քաղաքացիների կողմից աշխատանքի, թերությունների քննադատության սահմանադրական իրավունքի հետ:

ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության լուրջ մտահոգությունն են առաջացնում խոտորումները իրավական նորմերից: ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում նշվեց, որ հասարակության մեջ բարոյական մթնոլորտի վրա կործանարար ազդեցություն են ունենում օրենքների նկատմամբ արհամարհական վերաբերմունքի փաստերը, աչքակապությունը, կաշառակերությունը, սոցիալիստական սեփականության հափշտակման ու վատնումի, սոցիալիզմի կարևորագույն սկզբունքի՝ ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի խախտումների դեպքերը, որոնք ծնում են անաշխատ եկամուտներ, խնամառուական հարաբերություններ, համահավասարեցման հոգեբանություն և այլն:

Չպետք է թերագնահատել սոցիալիստական հասարակության համար այն վնասի չափն ու վտանգը, որ պատճառում են այնպիսի տարածված սոցիալական խոտորումները, ինչպիսիք են բյուրոկրատիզմը, անտնտեսվարությունը, պրոտեկցիոնիզ-

մը, ընչաքաղցությունը և այլն: Վ. Ի. Լենինը բյուրոկրատներին դասում էր սոցիալիզմի կատաղի թշնամիների թվին, նրանց հավասարեցնում էր կաշառակերներին, պահանջում ամենադաժան պայքար նրանց դեմ:

Բյուրոկրատիզմը խոչընդոտում է վերակառուցման ծավալմանը: ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի սեպտեմբերի 25-ի որոշման մեջ նշվում է. «Վերակառուցման արգելակ են բյուրոկրատական խեղաթյուրումները կառավարման ապարատի աշխատանքում, անկարգապահությունն ու անպատասխանատվությունը»: Այդ բանի վրա ուշադրություն հրավիրեցին նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան և հունիսյան պլենումները:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում մատնանշվեց, որ մեր հասարակության կյանքի շատ ոլորտներում վերջին տարիներին առաջացած սոցիալական և բարոյական կոռոզիայի տարրերը «բացասաբար էին անդրադառնում հասարակության հոգեվիճակի վրա, ինչ-որ աննկատելիորեն խարխլում էին բարոյական վեհ արժեքները, որոնք միշտ էլ ներհատուկ են եղել մեր ժողովրդին՝ ... գաղափարական համոզվածությունը, աշխատանքային խանդավառությունը, սովետական հայրենասիրությունը... Սոցիալական բարքերի անկման ցուցանիշ դարձան հարբեցողության աճը, թմրամոլության տարածումը, հանցագործությունների ավելացումը»:

Դրական սոցիալական նորմերի հաստատումը, որոնք կոչված են պաշտպանելու սոցիալիզմի քաղաքական, իրավական և սոցիալ-բարոյական արժեքները, կարող է լինել հասարակության սոցիալական խմբերի, ինստիտուտների և բոլոր անդամների ակտիվացման արդյունք, որոնց կամքով են իրագործվում կուսակցության կանխագծումները, ստեղծվում սոցիալիստական քաղաքակրթվածությունը:

Այստեղ կարևոր է դառնում սոցիալիստական օրինականության անշեղ պահպանման ապահովումը, որի դերն աճում է վերակառուցման ու արագացման ժամանակաշրջանում, քանի որ ՍՄԿԿ XXVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումներում առաջադրված խնդիրները կարող են հաջողությամբ լուծվել միայն սոցիալիստական օրինականության ամրապնդման, իրավական նորմերի համատարած և անշեղ կատարման պայմաններում:

Բացասական սոցիալական խոտորումների հաղթահարման արդյունավետ միջոցներից են հրապարակայնությունը, մասսաների վերահսկողությունը, պայքարը վարչարարության դեմ և, իհարկե, հասարակության կյանքի բոլոր ոլորտների հետագա դեմոկրատացումը: «Դեմոկրատիան,— ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշեց Մ. Ս. Գորբաչովը,— ամեն ինչ դնում է իր տեղը, տեսանելի է դառնում, թե ով ինչ է և ով ինչի է ընդունակ»: Այս խնդրի լուծման գործում մեծ է նաև նպատակամղված պայքարի դերը բոլոր նրանց դեմ, ովքեր հրապարակայնության ու քննադատության ցուցանակի տակ զբաղվում են ըստ էության դեմագոգիայով, զրպարտանքով, մեր նվաճումների, վերակառուցման ու արագացման նսեմացմամբ:

Սոցիալական խոտորումների ու դրանց ծնող պատճառների միջուկը կազմող բացասական երևույթների հաղթահարման խնդիրը բարձր պահանջներ է ներկայացնում կադրերին: Այս մասին հանգամանորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1987 թվականի հուլիսյան և դեկտեմբերյան պլենումներում:

Սոցիալական խոտորումների ու դրանց գոյությունը պայմանավորող պատճառների աստիճանական հաղթահարումը սովետական հասարակության կարևորագույն խնդիրներից է, քանի որ առանց այդ պրոբլեմի լուծման չեն կարող լինել նաև սոցիալ-տնտեսական զարգացման արագացում, սովետական ժողովրդի բարոյական և հոգևոր աճի ապահովում:

# ԷԿՈԼՈԳԻԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

## Հ. ՄԱՔՍԱՊԵՏՅԱՆ

ՍՄԿԿ ՓԱՍՏԱԹՂԹԵՐՈՒՄ մեծ ուշադրություն է նվիրվում մեր մոլորակի բնակելիության ապահովման, նրա հարստությունների նկատմամբ խնայողական վերաբերմունքի պրոբլեմներին: Սահմանելով կուսակցության տնտեսական ստրատեգիան, ՍՄԿԿ ծրագիրը հռչակեց, որ «Գիտատեխնիկական առաջադիմությունը պետք է նպատակամղված լինի **բնական ռեսուրսների, հումքի, նյութերի, վառելիքի ու էներգիայի օգտագործման** արմատական բարելավման բոլոր փուլերում՝ հումքի արդյունահանումից և կոմպլեքսային վերամշակումից մինչև վերջնական արտադրանքի թողարկում և օգտագործում» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 200):

Բայց սա ոչ միայն մեր երկրի պրոբլեմն է: Խոսելով գլոբալ մասշտաբի հակասությունների մասին, որոնք շոշափում են քաղաքակրթության գոյության բուն հիմքերը, Մ. Ս. Գորբաչովը շեշտել է. «Խոսքն ամենից առաջ շրջակա միջավայրի, օդային ավազանի և օվկիանոսների աղտոտման մասին է, բնական ռեսուրսների սպառման մասին»: Մարդկության համար բնության և բնակության կուլտուրական միջավայրի պահպանման պրոբլեմները նոր չեն: Բայց դրանք դեռ երբեք չէին հասել մոլորակային մասշտաբների ու այնպիսի սրության, ինչպես մեր օրերում:

Կլիմայագետ Ֆրասի մի գրքի վերաբերյալ Ֆ. Էնգելսին գրած նամակներից մեկում Կարլ Մարքսը նշել է. «... կուլտուրան, եթե այն զարգանում է տարերայնորեն, այլ ոչ թե գիտակցական ուղղություն ստանում... իրենից հետո անապատ է թողնում»: Եվ այնուհետև որպես օրինակ մատնանշվում են Պարսկաստանի, Հունաստանի և Միջագետքի հընում բարեբեր հողերը, որոնք անբերրի են դարձել մարդու տարերային գործունեության հետևանքով (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 32, стр. 45).

Կ. Մարքսի այս խոր մտքի մեջ կցանկանայինք ընդգծել երկու հանգամանք. առաջին՝ այն լայն իմաստը, որով օգտագործվում է «կուլտուրա» հասկացությունը և երկրորդ՝ կուլտուրայի կապը էկոլոգիայի հետ:

Կուլտուրան (լատիներեն՝ մշակում, դաստիարակում, կրթություն, զարգացում, հարգում) ամենալայն իմաստով հասարակության և մարդու զարգացման պատմականորեն որոշակի մակարդակ է, որն արտահայտված է մարդկանց կյանքի ու գործունեության կազմակերպման տիպերի ու ձևերի, ինչպես նաև նրանց ստեղծած նյութական ու հոգևոր արժեքների մեջ: Կամ, կարճ ասած, կուլտուրան մարդկության նվաճումների ամբողջությունն է, արտադրական, հասարակական և մտավոր ոլորտներում:

Ավելի նեղ իմաստով կուլտուրա ասելով ենթադրում են միայն մարդկանց հոգևոր կյանքի ոլորտը, այսինքն՝ աշխարհայացքը, կրթությունը, գիտությունը, բարոյականությունը, քաղաքականությունը, գրականությունն ու արվեստը:

Ֆ. Էնգելսն իր ժամանակ կուլտուրայի մեջ առանձնացրել էր երեք բաղադրամաս՝ գիտությունը, արվեստը և հաղորդակցման կուլտուրական ձևերը, այսինքն՝ մարդկանց բարոյական հարաբերությունները (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 18, стр. 215):

Մարդու կամ հասարակության կուլտուրան նրա մտավոր, բարոյական և գեղագիտական զարգացման ինտեգրալ արտահայտությունն է, ուստի նման մոտեցման դեպքում ակընհայտ է դառնում կուլտուրայի կապը էկոլոգիայի՝ բնակության միջավայրի հետ մարդու փոխներգործության մասին գիտության հետ: Ոչ թե բնության, այլ բնակության միջավայրի հետ, քանի որ մարդն ապրում է ոչ միայն բնական միջավայրում, այլև նախնիների և իր իսկ կուլտուրայի ստեղծած միջավայրում: Եվ կուլտուրական միջավայրի պահպա-

*ՄԱՔՍԱՊԵՏՅԱՆ ՀԱՄԼԵՏ ՎԱՐԴԱՆԻ— Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ, Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի «Ավտոմոբիլներ և տրակտորներ» ամբիոնի վարիչ:*

նումը նույնքան կարևոր խնդիր է, որքան և բնության պահպանումը:

Երբ մեր դարի կեսերից մարդու ներգործությունը բնության վրա սկսեց ընդունել սպառնալի բնույթ, Երկրագնդի վրա սկսեց աշխատել դանդաղ գործողության էկոլոգիական ռումբի ժամացույցի մեխանիզմը: Շրջակա միջավայրի կրիտիկական վիճակն ավելի ու ավելի է սրվում: Շահառության աշխարհում անխոհեմաբար ծախսվում են հիմնական բնական հարստությունները՝ պտղաբեր հողերը, ջուրը, օդը, ոչնչանում է կենդանական և բուսական աշխարհը, մթնոլորտի և համաշխարհային օվկիանոսի աղտոտումը հասնում է մոլորակի կյանքի համար վտանգավոր սահմանների:

Ատոմային զենքն իր հայտնագործման պահից մռայլ ստվեր է գցում մարդկության վրա: Այդ մռայլ ստվերի հետևում ամենից ոչ բոլորն են ընդունակ տեսնելու մյուս գլոբալ պրոբլեմները և դրանց թվում առավել վտանգավորը՝ մոլորակի էկոլոգիական հավասարակշռության խախտումը: Սպառազինությունների, հատկապես միջուկային սպառազինությունների մրցավազքը՝ գլոբալ պրոբլեմներից ամենավտանգավորը, անմիջականորեն կապված է բնության քայքայման հետ: Հենց ռազմական արդյունաբերությունն է բնական ռեսուրսների ամենաշռայլ սպառողը, որը կապված է ինչպես նրա մասշտաբների, այնպես էլ զենքի սերունդների հաճախակի փոփոխման հետ: Ավելին, միջուկային սպառազինությունների մրցավազքը բնությունը քայքայում է ոչ միայն միջնորդավորված, բնական ռեսուրսների ծախսման միջոցով, այլև անմիջականորեն: Բոլորի հիշողության մեջ թարմ են 1985 թվականի վերջին Մեքսիկայում և Կոլումբիայում տեղի ունեցած ողբերգությունները՝ աղետալի երկրաշարժը Մեքսիկայում, Արենաս հրաբխի աննախադեպ ժայթքումը Կոլումբիայում: Մեքսիկացի նշանավոր գիտնական Գոնսալես Սոտոն առաջադրել է միանգամայն հիմնավորված գիտական վարկած, որի համաձայն երկու կատակլիզմների պատճառը եղել է Մուրուրոա ատոլում Ֆրանսիայի կատարած հզոր ստորգետնյա պայթեցումը. այդ պայթեցման հետևանքով շարժման մեջ է մտել Կոկոս վիթխարի տեկտոնիկ քարազանգվածը, որն ընկած է Մեքսիկայի խաղաղօվկիանոսյան ափի երկայնքով: Դա էլ հանդիսացավ Մեքսիկայում հզոր երկրաշարժի, ռեգիոնի այլ երկրներում մի ամբողջ շարք ցնցումների և Կոլումբիայում հրաբխի աղետալի ժայթքման պատճառը:

Ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը, Չեռնոբիլի ատոմակայանի վթարը դաժան դաս եղավ մեզ համար, և ոչ միայն մեզ համար: Սովետական Միությունը վճռականորեն հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ վերջ տրվի ռազմական նպատակներով գիտության օգտագործմանը:

Ստեղծված իրավիճակը բնութագրվում է նրանով, որ եթե պահպանվեն փոխկապակցված ժողովրդագրական, պարենային, էներգետիկ և էկոլոգիական պրոցեսների զարգացման ներկայիս միտումները, ապա ապագայի ինչ-որ մի, ոչ այնքան հեռավոր կետում, մարդկությանը կարող է սպառնալ եթե ոչ կործանում, ապա շատ լուրջ ցնցումներ:

Սկսած այն ժամանակից, երբ 1866 թվականին Է. Հեկկելը գիտական գործածության մեջ մտցրեց «էկոլոգիա» տերմինը, այդ հասկացության բուն բովանդակությունն անչափ ընդլայնվել է «օրգանիզմների և նրանց շրջապատող միջավայրի մասին գիտությունից» (Հեկկել) մինչև ժամանակակից մեգաէկոլոգիան, որն ընդգրկում է ժամանակակից բնագիտության և մարդագիտության բաժինների մեծ մասը: Այսօր մեծ էկոլոգիան պետք է ոչ թե գիտությունների համակարգում առանձնացնել որպես ինքնուրույն գիտական դիսցիպլին, այլ ձգտել էկոլոգացնելու մեր բոլոր գիտելիքներն ու բնօգտագործումը: Այդպիսով, էկոլոգիան այսօր հանդես կգար ոչ թե իբրև գիտության մի ճյուղ, այլ որպես մեթոդաբանական համագիտական մոտեցում: Պարզ է դառնում, որ ժամանակակից շատ, եթե ոչ բոլոր, գլոբալ պրոբլեմներն իրենց էությամբ էկոլոգիական են և չեն կարող լուծվել առանց էկոլոգիական մեթոդոլոգիան օգտագործելու: Խոսքը մոլորակի վրա պարենի, էներգիայի, խմելու ջրի պակասի պրոբլեմների մասին է, գետերի, ծովերի, համաշխարհային օվկիանոսի ու մթնոլորտի աղտոտման, պտղաբեր հողերի վատթարացման և նույնքան էլ կարևոր այլ պրոբլեմների մասին, ներառյալ և ժամանակակից աշխարհի պրոբլեմների պրոբլեմը՝ միջուկային պատերազմի ահարկու վտանգը: Հենց էկոլոգիական վերլուծությունն է, որ ցույց է տվել վերահաս «միջուկային ձմեռվա» անխուսափելիությունը և ոչ միայն գլոբալ, այլև տեղական միջուկային կոնֆլիկտի ինքնակործան բնույթը:

Էկոլոգիական տեսակետից լարված այնպիսի իրավիճակները, ինչպիսիք են Սահելի պրոբլեմն Աֆրիկայում, Բհոպալի պրոբլեմը Հնդկաստանում, Հռենոսի թունավորումը 1986 թվականին, Արալի և Ազովի ծովերի, Բայկալի ու Սևանի, Լադոգայի ու Լենինգրադյան ամբարտակի և այլ շատ պրոբլեմներ իրենց հետ բերում են ամենասուր սոցիալական աղետներ և միլիարդների վնասներ: Ոչ էկոլոգիականը դարձել է ոչ միայն բարոյազուրկ,



այլև տնտեսապես վնասաբեր ու վտանգավոր հասարակության համար:

Էկոլոգիական աղետի սպառնալիքի դեմ ուղղված բոլոր ջանքերը կարելի է բաժանել տակտիկականի և ստրատեգիականի: Տակտիկական ջանքերը հիմնվում են բնապահպանական միջոցառումների մշակման վրա: Սրանք ինքնին չեն կանխում ճգնաժամի հնարավորությունը, բայց թույլ են տալիս հետաձգել նրա պահը, այսինքն՝ ժամանակ շահել ստրատեգիական միջոցառումների մշակման համար, որոնք կոչված են բացառելու էկոլոգիական աղետի հնարավորությունը: Ջանքերի տակտիկական խումբը լուծում է տեխնիկական, տնտեսական և իրավական պրոբլեմները, իսկ ստրատեգիականը հանգում է քաղաքական, սոցիալական և սոցիալ-հոգեբանական պրոբլեմներին:

ՍՄԿԿ-ն, սովետական կառավարությունը հենց այդպես, դիալեկտիկորեն են գնահատում այն վտանգների համապարփակությունը, որոնք այսօր սպառնում են մարդկությանը: Որպես հիմնական և առավել տեսանելի վտանգ մնում է, բնականաբար, նոր համաշխարհային պատերազմը՝ միջուկային, քիմիական, կենսաբանական և զենքի այլ հրեշավոր տեսակների կիրառմամբ: Գլոբալ պատերազմը և էկոլոգիական ճգնաժամն առանց պատերազմի մոլորակի վրա ունենալիք իրենց ներգործության արդյունքներով բավական նման են իրար:

Ժամանակակից էկոլոգիական ճգնաժամի էությունն այն է, որ տեղային չէ, այլ գլոբալ է, այսինքն՝ շոշափում է ոչ թե աշխարհի առանձին ռեգիոններ, ինչպես դա եղել է անցյալում, այլ ամբողջ մոլորակը, նրա ամբողջ լիտոսֆերան, հիդրոսֆերան և մթնոլորտը: Բացի դրանից, այն ունի ինդուստրիալ-ուրբանիստական բնույթ, ինչպիսին չի եղել և չէր էլ կարող լինել անցյալում:

Ինդուստրիալ դարաշրջանում մարդկանց յուրաքանչյուր տեղական խումբ սերտորեն կապված է եղել իր տարածքի հետ, և խմբի գործունեության հետևանքով առաջացած էկոլոգիական փոփոխությունները գրեթե դուրս չէին գալիս տվյալ տարածքի սահմաններից: Այսպես, Տիգրիս և Եփրատ գետերի հովիտները հին դարերում եղել են ծաղկած: XIII դարում մոնղոլների արշավանքից հետո բնակչության մի նշանակալի մասը ոչնչացավ, ավերվեցին ջրաբաշխական կառույցները: Յոթ դար անցնելուց հետո Միջագետքի բնակչության թիվը չի հասնում նախկինի մեկ երրորդին անգամ: Սակայն դա չեղավ հարևան ռեգիոնների բնության քայքայման պատճառը:

Ինդուստրիալ դարաշրջանում տեղի է ունեցել բնակչության զանգվածների և տարածքների միասնության քայքայում, իսկ բնության նյութերի զանգվածային փոխադրումը մարդու կողմից, ընդունելով մոլորակային բնույթ, հակասության մեջ է մտել նրա բնական շրջապտույտի հետ: Առանձին ռեգիոններից հանածո վառելիքի, հանքաքարի, շինանյութերի, գյուղատնտեսական հումքի և այլ նյութերի տեսքով դուրս են բերվում վիթխարի քանակությամբ այնպիսի նյութեր, որոնք մինչ այդ միլիոնավոր տարիներ մնացած են եղել անշարժ կամ գտնվել բնական շրջապտույտում: Անցնելով սպառման փուլով, այդ նույն կորզված նյութը թափոնների ձևով ընկնում է ուրիշ ռեգիոններ, որոնք հարմարված չեն այն ընդունելուն: Այդպիսի զանգվածային տեղափոխման հետևանքով մինչև անշրջելի մակարդակը մեռցվում են նաև այն տարածքները, որոնցից կորզված են եղել ելակետային նյութերը (հանքավայրերի փոսերը, մեռյալ հանքահորերը, տերրիկոնները և այլն), ինչպես նաև այն տարածքները, ուր ընկնում են թափոնները: Վերջիններիս թվում են ոչ միայն աղբակույտերը, ավտոմեքենաների գերեզմանոցները և այլն, այլև մթնոլորտն ու համաշխարհային օվկիանոսը՝ բոլոր գետերով ու ծովերով: Այսօր ուր էլ որ մենք հայացք գցենք, կտեսնենք վիթխարի քանակությամբ մեռած նյութ, լինի դա աղբ՝ մեր բակում, անօգտագործելի ապար հանքահորերի մոտ կամ մազութ և անոչնչանալի պլաստմասսա օվկիանոսում: Այդ նյութի մի աննշան մասն է միայն ծառայել սպառման կենսականորեն անհրաժեշտ կարիքներին:

Դեռ շատ վաղ անցյալում մարդն իր համար ստեղծում էր կացարան, բնակավայրեր, այսինքն՝ մի կուլտուրական միջավայր, որով իրեն անջրպետում էր բնությունից: Ուստի անցյալի կուլտուրաներին հատուկ է եղել «տան» և «վայրի դաշտի» հակադրումը: Մինչև մեր դարաշրջանը մարդու գործունեությունը կապված է եղել «վայրի դաշտի» հաշվին «տան» հարստացման հետ, այսինքն, հիմնական ռեսուրսները ձեռք էին բերվում անծայրածիր վայրի դաշտում և համարվում էին անսպառ: Մեր ժամանակներում «տուն» հասկացությունը տարածվում է ամբողջ մոլորակի վրա, քանի որ մարդը հասկացել է, որ անսպառ ռեսուրսներ Երկրի վրա չկան:

Մարդկային կուլտուրայի պատմությունը նաև շրջակա միջավայրի նկատմամբ մարդու վերաբերմունքի պատմությունն է: Մեծ քանակությամբ նյութերի ու էներգիայի տեղափոխությունների ու ձևափոխությունների հարաճուն բաժինը, որը հանգեցրել է ժամանակակից էկոլոգիական ճգնաժամին, կապված է եղել մարդու կուլտուրական կյանքի անհրաժեշտ պայմաններ ձեռք բերելու հետ: Ուրեմն

իրավունք ունենք արդյոք մենք հույս դնելու, որ կարելի է մշակել շրջակա միջավայրի օգտագործման սկզբունքորեն մի այլ ձև: Իսկ ամենից ավելի մեծ քանակությամբ բնության նյութեր, էներգիա, մտավոր ու աշխատանքային ռեսուրսներ է կլանում իմպերիալիզմի կայսերապետական պատվախնդրությունների ծնունդ հանդիսացող սպառազինությունների մրցավազքը՝ բնությունը սմքեցնող և մարդկանց ապականող մկանների «պրեստիժային» խաղը: Այժմ մարդկությունը սպառազինությունների վրա տարեկան ծախսում է ավելի քան մեկ տրիլիոն դոլար, որը գերազանցում է աշխարհի 50 ամենաաղքատ երկրների գրեթե երկու միլիարդ մարդու եկամուտները: Առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալներով, այժմ աշխարհում մեկ զինվորը բաժին է ընկնում 250 բնակչին, այն դեպքում, երբ մեկ բժիշկը՝ 3700 բնակչին: Մեկ զինվոր պատրաստելու համար ծախսվում է 16 հազար դոլար, իսկ երեխայի կրթության համար միայն 260 դոլար: Հաշվել են, որ մեկ միջմայրցամաքային հրթիռի արժեքը հնարավորություն կընձեռի կերակրելու 50 միլիոն սոված երեխաների կամ ստեղծելու 65 հազար բուժկետ, կամ կառուցելու 34 հազար տարրական դպրոց...

Վերադառնալով շրջակա միջավայրի օգտագործման սկզբունքային նոր եղանակին, նշենք, որ տեխնոլոգիան զարգանալու է և բարդանալու՝ հանգեցնելով արտադրության նյութատարության և էներգատարության ըստ ամենայնի նվազման, ներփակ, անթափոն տեխնոլոգիական ցիկլերի: Տնտեսապես առողջ ապագայի էկոնոմիկան և տեխնոլոգիան չեն կարող լինել բոլոր ռեգիոնների համար միատիպ համակարգ, քանի որ ամեն մի տեխնոլոգիական միատիպություն նախապես էկոֆոբային է: Էկոնոմիկայի նոր բանաձևը նշանակում է, որ քաղաքակրթությունն իր զարգացման ուղղությունը փոխում է էքստենսիվից դեպի ինտենսիվը: Եվ, խոսելով էկոնոմիկայի նկատմամբ նոր մոտեցման մասին, չի կարելի չհիշել նոոսֆերայի՝ Վ. Ի. Վերնադսկու բանականության ոլորտի մասին: Նոոսֆերայի ուսմունքի համաձայն, մարդու գործունեությունը, որը դարձել է հզոր երկրաբանական ուժ, պետք է ենթարկել բանականությանն ու բարոյական օրենքներին: Որպես հետևանք գիտական մտքի կողմից փոփոխված և ներդաշնակորեն մարդու կարիքների համար վերափոխված կենսոլորտը ձեռք է բերում նոր հատկություն, դառնում նոոսֆերա: Ուրախալի է, որ հենց մեր հանրապետությունում է ստեղծվում նոոսֆերային հետազոտությունների աշխարհում առաջին կենտրոնը, որի հանձնարարականները կդրվեն կենսոլորտի պահպանման ու առողջացման միջոցառումների հիմքում նաև մյուս ռեգիոնների համար: Բնականաբար, դրա համար անհրաժեշտ է խաղաղություն, սպառազինությունների մրցավազքի դադարեցում, ոչ թե պարզապես «պատերազմից զերծ» վիճակ, այլ համագործակցություն, քանզի կենսոլորտը միասնական է և նրա վերածումը բանականության թագավորության՝ նոոսֆերայի, բոլոր պետությունների, աշխարհի բոլոր ժողովուրդների գործն է:

Արդի պայմաններում ավելի ու ավելի որոշակիորեն է ուրվագծվում միջազգային արդյունավետ գործընթացների ու մեխանիզմների պահանջմունքը, որոնք ապահովեին մոլորակի ռեսուրսների՝ որպես համամարդկային սեփականության, խելամիտ օգտագործումը: Միաժամանակ աճում է միջազգային հասարակայնության, հատկապես գիտության ու կուլտուրայի գործիչների դերը խաղաղության և մեր բնակության միջավայրի պահպանման գործում:

Այն հեռանկարը, որ երրորդ հազարամյակի երկինքը միշտ լինի պարզ և ամեն րոպե մահ չսպառնա, առինքնում է բոլոր ողջամիտ մարդկանց: Այդ բանը կատարյալ ակնհայտությամբ ցուցադրեց «Հանուն միջուկազերծ աշխարհի, հանուն մարդկության գոյատևման» միջազգային մեծ վեհաժողովը, որը կայացավ Մոսկվայում 1987 թվականի փետրվարի 14-ից մինչև 16-ը: Վեհաժողովի համար բնորոշ էր ներկայացուցչության արտասովոր բարձր մակարդակը՝ ավելի քան 1300 պատվիրակ 80 երկրներից: Երեք օր շարունակ գրականության և արվեստի գործիչներ, գիտնականներ՝ ֆիզիկոսներ և քաղաքականագետներ, սոցիոլոգներ և էկոլոգիայի մասնագետներ, բժիշկներ և բիզնեսմեններ, կրոնական գործիչներ և նախկին հայտնի զինվորականներ աշխատում էին 8 սեկցիաներում («կլոր սեղանների» շուրջը), այդ թվում «Էկոլոգները խաղաղության համար» սեղանի շուրջը: Այս կլոր սեղանի նախագահ, բուլղարացի հայտնի գիտնական Վ. Նեյկովը, ամփոփելով սեկցիայի աշխատանքի արդյունքները, նշեց. «Մենք քննարկեցինք մեր ժամանակի երկու առավել լուրջ պրոբլեմ՝ բնության պահպանությունը և խաղաղության պաշտպանությունը Երկրի վրա: Երկու դեպքում էլ խոսքը Երկրագնդի վրա կործանումից կյանքը պահպանելու և պաշտպանելու մասին է, անկախ այն բանից, կլինի դա միջուկային թե էկոլոգիական, կայծակնային թե դանդաղ: Խաղաղության պայքարը հանուն անաղարտ բնության պայքարի անբաժանելի բաղադրամասն է»:

Մոսկվայի վեհաժողովը համախոհների ժողով չէր, որոնք որոշել էին կազմակերպել հերթական ցույցը: Ընդհակառակը. այստեղ բախվեցին լավատեսների ու մոլի թերահավատների, մեր համախոհների ու ընդդիմադիրների տարբեր տեսակետներ. այստեղ ռեալ առաջարկությունների կողքին մենք երբեմն տեսնում էինք «օդային ամրոցներ»: Սակայն վեհաժողովում զգացվում էր լայն երկխոսության վաղուց հասունացած սուր պահանջմունքը՝ իսկական և կարծեցյալ հակասությունները պարզելու, մերձեցմանը խանգարող ստերեոտիպերը հեղաբեկելու համար, ստեղծագործության և կեցության գլխավոր պրոբլեմների մասին անկեղծ խոսակցության համար: Եվ, ինչպես վկայում էին վեհաժողովի մասնակիցների բազմաթիվ հայտարարություններն ու ասուլիսները, «կլոր սեղանների» նիստերից կուլուարներն էր թափանցում մեծ փոխըմբռնման ու վստահության, բնության, խաղաղության, քաղաքակրթության և Երկրի վրա կյանքի պահպանման ուղիների որոնման ոգևորող մթնոլորտը:

Հազիվ թե այդպիսի վեհաժողով հնարավոր լիներ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից առաջ: Հենց ՍՄԿԿ-ն էր, որ առաջինը հռչակեց միջուկային դարում նոր մտածողության հրամայական անհրաժեշտությունը: Քաղաքական զեկուցման մեջ Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Այս տագնապալի դարում մեր սոցիալական և, ես կասեի, կենսական ստրատեգիան նպատակամղված է նրան, որ մարդիկ պահպանեն մոլորակը, երկնային ու տիեզերական տարածությունը, այն յուրացնեն որպես խաղաղ քաղաքակրթության նորաբնակներ, կյանքը մաքրելով միջուկային մղձավանջերից, արարման, և միայն արարման, նպատակների համար մինչև վերջ ձերբազատելով Տիեզերքի մի այնպիսի ունիկալ բնակչի բոլոր լավագույն հատկանիշները, ինչպիսին է Մարդը»:

Սա նոր մտածողության, այսօր ողջ մարդկությանը հուզող պրոբլեմների նկատմամբ նորարարական մոտեցման օրինակ է:

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԻՄԱՍՏԱՎՈՐՈՒՄԸ

Կուսակցությունն այսօր առանձնապես կարևորում է հասարակական գիտությունների դերը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, հասարակության կյանքի բոլոր ոլորտների հեղափոխական վերափոխումների մեջ: Առանց տեսական խոր վերլուծումների անհնարին է, իսկապես, լուծել այն պատմական խնդիրները, որ այժմ ծառացած են սովետական հասարակության առջև:

Այս առումով ուշագրավ է «Աշխատանքի մարքսյան փիլիսոփայությունը» մենագրությունը*: Այն նվիրված է մարդկային աշխատանքի փիլիսոփայական և սոցիոլոգիական արմատական պրոբլեմներին, դրանց տեսական ու գործնական նշանակությանը ժամանակակից սոցիալական զարգացման ընդհանուր կոնտեքստում:

Հեղինակն արդարացիորեն շեշտում է աշխատանքի պրոբլեմի առանցքային դերը մարքսիզմի ամբողջ համակարգում, ցույց է տալիս դրա գիտական և հումանիստական կարևորությունը: Աշխատանքի նկատմամբ սևեռուն ուշադրությունը մարքսիզմի վճռորոշ առավելություննն է անցյալի և ներկայի բոլոր ոչ մարքսիստական փիլիսոփայությունների համեմատությամբ: Լիովին կարելի է համաձայնել հեղինակի այն մտքին, որ «հատկապես ներկա պայմաններում, ցանկացած սոցիալական փիլիսոփայություն, սոցիոլոգիական ուսմունք, մարդուն ըմբռնելու, մարդկային կեցության առեղծվածը բացահայտելու ցանկացած փորձ, որը շրջանցում է մարդու աշխատանքային գործունեության ոլորտը կամ թերագնահատում է դրա հասարակական նշանակությունը և անձնային իմաստը, անխուսափելիորեն անպտուղ են, գիտական և մարդասիրական չեն: Մեր ժամանակներում, երբ բոլոր գիտություններին բնորոշ է յուրատեսակ «մարդաբանական շրջադարձը», երբ նրանք բոլորը կենտրոնանում են «մարդ» պրոբլեմի շուրջը, անգնահատելի տեսական, աշխարհայացքային, մեթոդաբանական դեր են կատարում մարդկային աշխատանքի փիլիսոփայական և սոցիոլոգիական պրոբլեմների մարքսյան լուծումները» (էջ 244):

Թեպետ հեղինակն իր ուշադրությունը կենտրոնացրել է առավելապես բուն մարքսյան հետազոտությունների և ամենից առաջ «Կապիտալի» ու դրա նախապատրաստական ձեռագրերի վրա, սակայն, պետք է նկատել, որ գրախոսվող մենագրության մեջ որոշակի տեղ է հատկացված նաև պրոբլեմի պատմափիլիսոփայական ասպեկտին, այսինքն այն տեսությունների վերլուծությանը, որոնք գոյություն են ունեցել մինչև Մարքսի հրապարակ գալը:

Մենագրության առաջին գլխում քննության են առնված աշխատանքի էության փիլիսոփայական ըմբռնման մի շարք հարցեր, տրված է դրանց մարքսյան պարզաբանումը և վերջինիս արդիական հնչեղությունը: Սրանք հարցեր են, որոնք առնչվում են բուն իսկ մարդ արարածի բնույթի և էության մեկնաբանման հետ, հարցեր, որ դարավոր պատմություն ունեն: Այս հարցերին Կ. Մարքսի տված պատասխանների ելակետը մարդու հասարակական էության ընդունումն է, ուստի և՝ աշխատանքային գործունեությունը մարդու ցեղային բնութագրի հետ կապակցելը: Իսկապես, աշխատանքը, որպես մարդկային գործունեություն, հնարավոր չէ բխեցնել մարդու ինչ-որ անփոփոխ բնությունից: Վերջինս ինքը արդյունք է մարդկային աշխատանքի կազմավորող ազդեցության: Հեղինակը բավականին դիպուկ է եզրափակում այս հարցը. «Մարդը և մարդկային պատմությունը, շնորհիվ Կ. Մարքսի մեկնաբանման, մեր առջև հառնում են իբրև մարդկային աշխատանքի պատմություն, մարդու ինքնակերտում սեփական աշխատանքի միջոցով» (էջ 69):

Այնուհետև հեղինակն անցնում է աշխատանքի դիալեկտիկայի բացահայտմանը, դիտելով աշխատանքը որպես առարկայացման և ապառարկայացման միասնություն, որպես օբյեկտի սուբյեկտիվացում և սուբյեկտի օբյեկտիվացում, ցույց է տալիս աշխատանքի միջոցների դերը նպատակի իրականացման մեջ: Հետաքրքիր է այն բացատրությունը, որ վերաբերում է աշխատանքի միջոցների հարանուն դերին: Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես տեխնիկայի զարգացմանը զուգահեռ կենդանի, գործող անհատի նպատակները մարմնավորվում, առարկայանում են միջոցներում և ինչպես են այդ միջոցները ինքնուրույն, առանց մարդու միջամտության, իրագործում մարդկային նպատակները: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև աշխատանքի համընդհանուր բնույթի և դրա կոնկրետ սոցիալական ձևի փոխհարաբերության պարզաբանումը. մասնավորապես, լավ է տրված կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում աշխատանքի, այսպես կոչված «մարդաստեղծ» ֆունկցիայի անխուսափելի խաթարումը:

Հաջորդ գլխում, աշխատանքի անձնային իմաստի հետ առնչվող պրոբլեմների քննարկման համար հիմք է ծառայել Կ. Մարքսի դիրքորոշման համեմատությունը անգլիական դասական քաղաքատնտեսության ներկայացուցիչների մոտեցման հետ: Ա. Սմիթի և Կ. Մարքսի հայացքների արմատական տարբերություններից մեկը, ըստ հեղինակի, այն է, որ եթե առաջինը աշխատանքի պրոցեսը հանգեցնում է լոկ արդյունքի ստեղծմանը, ապա Կ. Մարքսի համար աշխատանքն ավելին է: Կարևոր վերապահում անելով այն մասին, որ ոչ մի դեպքում չի կարելի հակադրել աշխատանքի պրոցեսը և աշխատանքի արդյունքը, հեղինակը, այնուամենայնիվ, հետևողականորեն հիմնավորում է իր տեսակետը:

Աշխատանքի անձնային իմաստավորման հարցերը ներկայումս հույժ հրատապ և, դրա հետ մեկտեղ, առայժմ թույլ ուսումնասիրված պրոբլեմներ են: Այս հանգամանքը բացատրվում է, թերևս, այն բանով, որ հոգեբանները հիշյալ հարցերը քննարկելիս լավ չեն գնահատում դրանց փիլիսոփայական կողմը, այնինչ փիլիսոփաները, իրենց հերթին, երբեմն խիստ վերացական են մոտենում նույն հարցերին: Պետք է նկատել, որ Վ. Միրզոյանը բավականին հմտորեն է զուգակցել երկու մոտեցումները և զարգացրել մի շարք գաղափարներ՝ կապված մարդկային աշխատանքի իմաստի և անիմաստության հետ: Կարծում ենք, սա շատ արժեքավոր և հետաքրքիր մի բնագավառ է, և այս ուղղությամբ հետագա ուսումնասիրությունները կարող են մեծապես հարստացնել թե՛ փիլիսոփայական և թե՛ հոգեբանական միտքը: Իսկ դա կարևոր է ոչ միայն տեսության, այլև գործնական կյանքի համար, մասնավորապես այնպիսի կարևոր սոցիալական պրոբլեմի լուծման համար, ինչպիսին է մարդկային գործոնի ակտիվացումը:

Գրախոսվող մենագրության երրորդ գլուխը նվիրված է «աշխատանք և տեխնիկա» պրոբլեմների մարքսյան լուծումներին: Հեղինակն իրավացիորեն մեծ ուշադրություն է հատկացրել Կ. Մարքսի մոտեցման մեթոդաբանական կողմին, դրա նշանակությանը գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանի առանձնահատկություններն ըմբռնելու համար: Առանձնացված է XVIII դարի վերջի և XIX դարի սկզբի արդյունաբերական հեղափոխության և կապիտալիստական հասարակարգի ներքին, էական կապի մարքսյան վերլուծությունը: Հեղինակը մանրամասն ցույց է տալիս, որ բուրժուական մտածելակերպին բնորոշ ծայրահեղ դիրքորոշումներին՝ տեխնիկայի բացարձակացմանը և նսեմացմանը, Մարքսը հակադրել է իր դիալեկտիկական-մատերիալիստական մոտեցումը:

Նկատենք, որ հարցերի այս ճամախըմբումը ևս հեղինակը կապում է ժամանակակից սովետական հասարակության առջև ծառացած հեղափոխական վերափոխումների իրականացման հետ:

Մենագրության վերջին գլուխը նվիրված է Կ. Մարքսի աշխատանքի փիլիսոփայության առհասարակ, դրա գիտական ակունքների և դասակարգային հիմքերի փոխկապակցվածության բացահայտմանը: Հեղինակը գլխի վերնագիր է վերցրել Կ. Մարքսի խոսքերը՝ «գիտական խորաթափանցություն և սեր դեպի մարդիկ»: Այս արտահայտությունը, իսկապես, շատ հաջող է բնորոշում մարքսիզմին խորապես ներհատուկ գիտականության և մարդասիրության միասնությունը:

Գրքում մանրամասն ցույց է տրված, թե ինչպիսի հետևողականությամբ էր Կ. Մարքսը հաշվի առնում ցանկացած գիտնականի դասակարգային դիրքորոշումը նրա հայացքների ընդհանուր գնահատականը տալիս, լինի դա Սիսմոնդին թե Ռիկարդոն, Պրուդոնը թե Մալթուսը:

* Վ. Ա. Միրզոյան, «Աշխատանքի մարքսյան փիլիսոփայությունը», Երևան, ՀՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1986., 298 էջ:

Ընդհանրապես, հարկ է նկատել, որ հեղինակը բազմաթիվ տեսական հարցերի կապակցությամբ հմտորեն բանավիճում է բուրժուական մի շարք հեղինակների՝ Է. Ֆրոմի, Օ. Թոֆլերի, Պ. Դրակերի, Ա. Վուդի, Ա. Չերնսի և այլոց հետ, բացահայտում նրանց հայացքների գիտական սնանկությունը և ջատագովական դիրքորոշումը:

Ընդհանուր առմամբ, Վ. Միրզոյանի «Աշխատանքի մարքսյան փիլիսոփայությունը» մենագրությունը լուրջ ուսումնասիրություն է, որտեղ լուսաբանված են մի շարք կարևոր սոցիալ-փիլիսոփայական պրոբլեմներ, կապված մշտապես հրատապ ու կենսական թեմայի՝ մարդկային աշխատանքի անցյալի, ներկայի և ապագայի հետ:

Գրախոսվող մենագրությունը, կարծում ենք, զգալիորեն կշահեր, եթե հեղինակն անդրադառնար նաև աշխատավորական կոլեկտիվի դերին: Չէ՞ որ աշխատանքը ծավալվում է միշտ որոշակի սոցիալական միջավայրում, ուստի աշխատանքի անձնային իմաստի ըմբռնումը էապես պայմանավորված է նաև միջանձնային փոխհարաբերությունների համատեքստով: Մանավանդ որ մեր փիլիսոփայական և սոցիոլոգիական գրականության մեջ այս պրոբլեմի բուն սոցիալ-փիլիսոփայական կողմը դեռևս անբավարար է լուսաբանված:

Անտարակույս, գիրքը օգտակար է ոչ միայն մասնագետների, այլև ընթերցող լայն շրջանների համար:

**Ա. ԹԵՎՈՍՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

---

## ՄԻԱՑՅԱԼ ՀԱՄԱՐ

**Անդրկովկասյան հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների գաղափարական կյանքում նշանակալից երևույթ դարձավ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների Կենտկոմների տեսական-քաղաքական ամսագրերի խմբագրությունների կողմից համատեղ պատրաստված հոկտեմբերի հոբելյանական համարը:**

**«Միասնական ընտանիքում՝ դեպի ընդհանուր նպատակ». «Վրաստանի կոմունիստ». «Ադրբեջանի կոմունիստ» և «Լենինյան ուղիով» ամսագրերի՝ այս նշանաբանով լույս տեսած միացյալ համարի ամբողջ բովանդակությունը բացահայտում է Անդրկովկասի ժողովուրդների այն վիթխարի նվաճումները, որ ձեռք են բերվել Հոկտեմբերի ուղիով զարգացման յոթ տասնամյակներում: Կուսակցական աշխատողների, գիտնականների, մշակույթի գործիչների, հեղափոխական պայքարի վետերանների հեղինակած նյութերում համոզչորեն բացահայտվում են ռեգիոնի տնտեսական և սոցիալական զարգացման, Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի ժողովուրդների բարեկամության խորացման ու ամրապնդման, ազգամիջյան հաղորդակցման, ազգային մշակույթների փոխներգործության ու փոխհարստացման ձեռքբերումները, ցույց են տրվում սովետական իշխանության հաղթանակի, սոցիալիստական հասարակարգի հաստատման համար աշխատավորների համատեղ պայքարի ավանդույթները, իմաստավորվում հանրապետություններում տեղի ունեցող վերակառուցման պրոցեսները:**

**Ճիշտ է, ցանկալի կլիներ, որ հոբելյանական համարում ավելի մեծ ուշադրություն նվիրվեր սովետական երկրի, Անդրկովկասյան հանրապետությունների զարգացման ներկա փուլի ոչ հասարակ պրոբլեմների վերլուծությանը: Հոբելյանը դա ոչ միայն հիշողության, անցած պանծալի ու դժվարին ուղու վերաբերյալ մտորումների պահ է, այլև ամենից առաջ ապագային ուղղված հայացք է, դեպի սովետական հասարակության որակապես նոր վիճակ մեր առաջընթաց շարժման արագացման եղանակների ու միջոցների որոնում:**

**«Коммунист», № 2, 1988**

---

*Հանձնված է շարվածքի՝ 21.01.88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 29.02.88 թ.: ՎՖ 03852: Ձևաչափ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 16932: Պատվեր՝ 98:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*